# ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՃԱՀԿԱԹՈՒՆԵԱՆՑԻ

## ԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆԸ

ԳՐԵՑ
ԱՐԻՍՏԱԿԷՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՍԵԴՐԱԿԵԱՆ

Ս.-ՊԵՏԵՐԲՈՒՐԳ
ՏՊԱՐԱՆ Ց. Ի. ԼԻԲԵՐՄԱՆԻ
1898






Ա.

Որչափ թանձրամած է լինում դիշերային մթութիւնն, այնքան աւելի փայլում են երեւում շողարձակ աստղերը։ Որքան պատմական մի տխուր շրջանում գտնւում են երեւում մոլոր և բարոյական անկման [illegible]ցուցիչները, այնքան էլ յարգելի և համակրելի են դառնում այն սակաւաւոր անհատները, որ [illegible] կարողանում են ժամանակակից դրութեան ընդհանուր պահանջից տարբեր ընթացք բռնելով օգտակար հանդիսանալ իրանց հայրենակիցների զարթուննէութեանը։

Ամենայն Հայոց Հայրապետական Մայր Աթոռը դարերի ընթացքում սոսկալի արհաւիրքներից և բարբարոսական հարստահարութիւններից այնքան ընկճուած և նսեմացած էր, որ նոյն իսկ ներկայ դարի սկզբում, երբ զանազան տեղերի հայերի մէջ՝ ինքնաճանաչութեան ոգին և յառաջադիմութեան զգացումն սրտէն որոշ պահանջներ էին յարուցանում—նա ծնունդ և ճարակ էր տալիս խայտա-

# ՅՈՎՀԱՆՆԷՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ
# ՇԱՀԽԱԹՈՒՆԵԱՆՑԻ
# ԿԵՆՍԱԳՐՈՒԹԻՒՆԸ

ԳՐԵՑ
ԱՐԻՍՏԱԿԷՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ՍԵԴՐԱԿԵԱՆ

Ս.-ՊԵՏԵՐԲՈՒՐԳ
ՏՊԱՐԱՆ Ե. Ի. ԼԻԲԵՐՄԱՆԻ
1898





Ա.

Որչափ թանձրամած է լինում գիշերային մթութիւնն, այնքան աւելի փայլուն են երեւում շողարձակ աստղերը: Որքան պատմական մի տխուր շրջանում գտնւելի են երեւում մտաւոր և բարոյական անկման յայտացուցիչներն, այնքան էլ յարգելի և համակրելի են դառնում այն սակաւաւոր անհատները, որ դեռ կարողանում են ժամանակակից դրութեան ընդհանուր պահանջից տարբեր ընթացք բռնելով օգտակար հանդիսանալ իրանց հասարակական գործունէութիւնով:

Ամենայն Հայոց Հայրապետական Մայր Աթոռը դարերի ընթացքում սոսկալի արհաւիրքներից և բարբարոսական հարստահարութիւններից այնքան ընկճուած և նսեմացած էր, որ նոյն իսկ ներկայ դարի սկզբում, երբ զանազան տեղերի հայերի մէջ Ինքնաճանաչութեան ոգին և յառաջադիմութեան զգացումն արդէն որոշ պահանջներ էին յարուցանում—նա ծնունդ և ճարակ էր տալիս խայտա-

կան ժամասացութիւն,—ժամանակի միակ ուսմունքը։ Սակայն, ինչպէս հաւանական է երևում, ուսման ծարաւ Յովհաննէսը չկարողանալով Մկրտչի աւանդածով բաւականանալ, թախանձել է իւր հօրը աւելի հմուտ ուսուցիչների յանձնել իրան։ Եւ որովհետև այդ ժամանակին Կ. Պոլսում կային շատ բաւաւոր «պատուելիներ» (ուսուցիչներ), ուստի Գէորգ աղայի խնդրանօք կաթողիկոսը (Եփրեմ) ուղարկում է նորան Կ. Պոլիս նուիրակ Աստուածատուր եպիսկոպոսի մօտ, (որ նախապէս գրով խնդրել էր) իբրև սպասաւոր, և նա էլ յանձնում է նորան «արժանաւոր վարժապետաց»։ Կ. Պոլիս գնալուց չորս տարի յետոյ, Աստուածատուր եպիսկոպոսը նուիրակութեան պաշտօնով Եւդոկիա գնացած միջոցին իւր սպասաւոր Յովհաննէսին 1820 թուականին մարտի 25-ին ձեռնադրում է սարկաւագ Փիլիպպուպոլիս քաղաքում։ իսկ Էջմիածին վերադառնալուց յետոյ, 1826-ին մարտի 21-ին—կուսակրօն քահանայ։

Այսչափ տեղեկութիւնները թողել է մեզ ինքը Յովհաննէս եպիսկոպոսն երկու տեղում. մէկը՝ Մայր Աթոռի հոգևոր կառավարութեանը 1827 թուի դեկտեմբերի 20-ին տուած ցուցմունքի մէջ[4]), և միւսը՝ իւր աշխատասիրած «Պատմութեան»[5]) թերթերից մէկի վերայ։ Առաջինն այս է. «Նահրիար գիւղացի եմ. 15 տարեկան հասակումս եկի ի ս. Աթոռն վասն ընթերցման. Ներսէս սրբազանն ետ զիս վանեցի Մկրտիչ վարժապետին առ ի ընթեռնուլ, յորմէ ընթերցայ զհասարակ եկեղեցականութիւն, գրա-

վարժութիւն և զայլս։ Զկնի երկուց ամաց ծնող հայրս խնդրելով ի սրբազնակատար կաթողիկոսէն զրութեամբ Աստուածատուր եպիսկոպոսին, որ էր յայնժամ ի Պոլիս նուիրակութեամբ, և զիս առաքեցին ի Պոլիս մնալ ի սպասաւորութեան նորա և ընթեռնուլ և նա հայրաբար խնամելով ինձ յիւր նուիրակութեան կողմանսն մերձաւոր արժանաւոր վարժապետաց յանձնէր, յորոց ընթերցայ ըստ կարեաց»։

Միւսը. «Ծնունդ իմ Յովհաննու աբեղայիս Գէորգեան Տահխաթունեանց շահրիարցւոյ ի Թուականութեանս մերում ի ռմխը, ի 20 մայիսի ամսեան, յաւուր ուրբաթու։ Ընկալայ զաստիճան սարկաւագութեան ի յԵղլադայ ի Փիլիպպուպօլիս յԱստուածատուր արքեպիսկոպոսէ նուիրակէ սրբոյ Էջմիածնի, հոգևոր ծնողէ իմմէ ի ռմկթ ամի ի 25 ամսեան մարտի Եւ ձեռնադրեցայ ի նոյն սրբազան արհւոյ քահանայ և աբեղայ ի մերս թուական ռմհե, ի 21 ամսեանն մարտի ի տնտեսի կիւրակէի մեծի պահոց»։

Վերոգրեալ տարեթուերից երևում է, որ Յովհաննէսը Պոլիս գնացած լինելով 1816 թուականին՝ մնացել է այն կողմերում մինչև աբեղայ ձեռնադրուիլը (1826 թ.) ամբողջ 10 տարի։

Ի՞նչ էր սովորում նա այդքան երկար ժամանակամիջոցում։

Որչափ և նա իւր ցուցմունքի մէջ համեստութեամբ ասում է միայն «ընթերցայ ըստ կարեաց», այսու ամենայնիւ ուրիշ աղբիւրից տեղեկանում ենք,

որ նա բացի հայերէնից և ժամանակակից ուսմունքից սովորել է և յունարէն լեզուն։ Գիտեցել է և թուրքերէն[6])։ Նորա հոգևոր ծնողն, Աստուածատուր եպիսկոպոսը բացի Յովհաննէսից ունենում է և երկու ուրիշ հոգևոր զաւակներ կամ սպասաւորներ—Արիստակէս և Աբրահամ։ Գտնուելով Պօլսում և ազդուելով տեղական խելահաս ազգայիններից յաճախ լսած նախատական խօսքերից Էջմիածնի միաբանութեան անուսումնութեան մասին՝ եպիսկոպոսը վճռում է իւր երեք սպասաւորներին էլ պատրաստել Մայր Աթոռի համար ուսեալ և լեզուագէտ միաբաններ։ Արիստակէսին ուղարկում է Զմիւռնիա հայերէն և ֆրանսերէն սովորելու, Աբրահամին տալիս է զանազան առարկաներ և տաճկերէն, իսկ Յովհաննիսին, որ արդէն հայերէն բաւական սովորած է եղել, յունարէն ուսանելու։ Աստուածատուրի այդ բարենախանձ փափագն այնքան մեծ է եղել, որ երբ իւր նուիրակութեան ժամանակը լրացել էր, 1824 թ. մայիսի 5-ին գրում է Եփրեմ կաթողիկոսին և իրաւունք խընդրում Պօլսոյ Տաճկաստանում այլ ևս երկու կամ երեք տարի մնալ... «Ի վերջոյ ազդ առնեմք տեառնդ մերոյ զայս ինչ հարկաւորաբար, զի աւանիկ մերձեցաւ ժամանակ կատարման գործոյ մերոյ նուիրակութեան, և մեզ ևս հարկաւորի մնալ աստէն տակաւին գէթ մինչև ցերկու կամ երեք ամ, վասն զի ի սկզբան ի գալստենէ մերմէ աստ մինչ ցայժմ նախատական լինիմք ի մերայնոցն ամենեցուն սակս անուսումնութեան բազմոգումար

միաբանութեանս մերոյ, և գրեթէ բազումք ևս ի մերայնոց ի սոյն պատճառ միամտաբար գայթակղեն ի մեզ և գլորին ի խորխորատ ի մէնջ հեռանալոյն, զի սակս և մեք շարժեալ ի Նախանձ բարի և ի սէր ազգին կամելով ի ձեռս բերել ինչ ինչ հարկաւոր և պիտանի գիտութիւնս և լեզուագիտութիւնս, առաքեցաք զմին յաշակերտաց մերոց զՕրխտակէս անուն ի Զմիւռնիա, յորում յետ ստանալոյն զհայկականն լիովին առ ոտս Տէր Յօհան Մեծանուն վարժապետի, մտեալ է հրամանաւ մեր և ի ճեմարան գաղղիացւոց և վարժի արիաջան արթնութեամբ[7]) և յուսամք եթէ զկնի երկուց ամաց կատարեալ ուսանիլ ունի զայն լեզու հանդերձ բաւականին գիտութեամբ։ Զմիւս տիրացուս Աբրահամ, որ յետ ստէն լրացուցանելոյն զքերականութիւնն մեր լեզուի, ուսեալ է ինչ ինչ ի մաթէմաթիզական գիտութենէ, զ[illegible], զթուաբանութիւնն, զտոմարագիտութիւնն և զտեսական երկրաչափութիւնն, և այժմ պարապի ի լեզու տաճկական, զի ևս լուսաւորեսցին այնոքիկ գիտութեամբք, որոյ երախայրի առանին վաստակոցն իւրոյ զյաջորդ տարւոյն զօրացոյց ըստ արժանւոյն կատարեալ, առաքեցաք առ Ներսէս Արքեպիսկոպոսն ի տեղի արձանացուցանել։ Իսկ Նախկին մեր աշակերտ զսարկաւագ Յովհաննէսն որդի պարոն Գէորգի շահրիմացւոյ տուեալ նմք ի լեզուագիտութիւն հելլէն դպրութեան՝ զմերն ըստ չափու ունելով ի ձեռս. և հաստատուն յուսով յուսամք ի շնորհատու հոգին Աստուած արդիւնաւորել փոքր ինչ այս գործոյ

մաղթանօք հօր մերոյ սրբոյն Գրիգորի և աղօթիւք ձեր տէրութեան մինչ ի ժամանակս լման երից ամաց. և այնպէս դիմեցից յԱթոռդ սուրբ, զի գոնէ յաջողութեամբ տեառն ամենակալի այնու ջնջանաւ սրբեսցի քիրտ նախատանաց յերեսաց մերոց, և չեմք երկբայ եթէ տէրութիւն ձեր կամակար մտօք խորհելով զարժանն հաճիք ընդ այս, և շնորհէք այլ ևս ժամանակ ինչ ի գործ աթոռային պարապիլ աստէն ընդ որ սրբութեան ձեր կամք են հաւան, մինչև այսօքիկ նորածին ձագք սուրբ շնորհածին մօրդ լուսոյ փետրաւորեսցին հաստատուն թևօք գիտութեան... այլ եթէ չկամեսցի սրբազնութիւնդ, և խնդրէք հարկիւ զգալն մեր, առ որ ես ինձէն (տեառն են յայտնի) թէ որքան փափագանօք բերիմ հաւան, ներեսջիք նուաստութեան մեր ի ժամանակս ինչ կալ ի քաղաքի աստ, մինչև լրասցին դասառութիւնք աշակերտացն մերոց, քանզի և վնաս իսկ է Աթոռոյն յերկուց դիմաց. նախ յանկատարութենէ նոցին, յորոց ոչինչ լինելոց է շահ օգտի, և երկրորդ՝ յընդունայն ծախսից, զորս ցարդ արարեալ եմք։

Սրբազնութեան ձերոյ պայծառ կենաց պարտաւոր աղօթարար Կոստանդնուպօլսոյ Նուիրակ Աստուածատուր Արքեպիսկոպոս»։

Կաթողիկոսը չէ տալիս խնդրած պաշտօնն։ Աստուածատուր եպիսկոպոսը մի տարի ևս մնում է Կ. Պոլսում անգործ, մինչև որ ժողովրդի գլխաւորները, մեզ անյայտ պատճառով, ստիպում են նորան Թողնել Տաճկաստանն և գնալ Էջմիածին։ Պատ-

բաստուելով ճանապարհորդութեան՝ արհին իւր երկու հոգևոր զաւակների—Յովհաննէսի և Արիստակէսի ապագան փոքր ի շատէ ապահովելու համար թողնում է մահտեսի Դաւթեանների մօտ 16,000 ղուռուշ, որպէս զի նորա առկոսիքը տրուի վերջինին, քանի դեռ շարունակելու է ուսումը. և առնելով հետը սարկաւագ Յովհաննէսին՝ գալիս է Մայր Աթոռն, ուր հետևեալ տարին նոյն սարկաւագին արեղայ է ձեռնադրում և ինքը կարճ միջոցից յետոյ վախճանւում է։

Վանական «մեծաւորների» մահից յետոյ նորանց գոյքի և հարստութեան յափշտակութիւնը փոքրաւորների ձեռքով այնքան սովորական երևոյթ է եղել, որ մինչև անգամ անմեղն էլ չի կարողացել ազատ մնալ կասկածից և վշտակրութիւնից։ Աստուածատուր եպիսկոպոսի մահից յետոյ նոյն վիճակին ենթարկուել է և Յովհաննէս արեղան ուրիշ երկուսի—Լուկաս վարդապետի[8]) և ոմն Յոնանի հետ. նորանց ենթարկում են խուզարկութեան, խլում են Յովհաննէսից մինչև անգամ նորա թանգագին հարստութիւնը—սեպհական գրչագիր գրքանքը, որ նա թէ՛ գրամով և թէ՛ օրինակելով էր ձեռք բերել։ Նա փորձում է իւր անմեղութիւնն ապացուցանել, նորան չեն լսում։ Անիրաւացի անարգուած և զրկանքների ենթարկուած Յովհաննէսը 1828 թուի մարտի 7-ին և ապրիլի 27-ին Ներսէս արքեպիսկոպոսին է դիմում նամակներով, երբ վերջինն անձամբ էջմիածնումն էր գտնւում։ Այդ նամակներից մէկով նա խնդրում է նորա միջամտու-

թիւնն իւր ձեռագիր գրքերն իրան վերադարձնելու համար. իսկ միւսով բացատրում է գլխաւոր կասկածի հիմք տուող 16,000 ղուռուշի իրանց տալու եղելութիւնը, նախապէս մատուցած լինելով նորան և այդ գումարի մուրհակը: Հարկաւոր ենք համարում այդ նամակները մէջ բերել:

1. «(Առ Բարձր սրբազան Ներսէս Արքեպիսկոպոսն Տփխիսոյ՝ այն ինչ Մայր աստէն յԱթոռս սուրբ:)

Բազմագութ հայր պանծալի

Բարեշնորհ Տէր իմ

Փոքունց և նուաստից առ մեծամեծս և վեհանձունս, մանաւանդ առ խնամածու հարս մատչել հարկաւոր խնդրանօք չեն ինչ ընդ յանցանօք. Ապաքէն ես յետնեալս յամենեցունց ի բաց ձգեալ զամենայն զմիւս հարկաւորսն մարմնական, և զկծեցուցիչ զբանսն նախատանաց պատուեալ զլռութիւն՝ տարայց համբերաբար, արժանաւոր ինձ վարկուցեալ խիկապէս, թէրևս այց ինձ առաքելոյս արասցէ Աստուած յաւուր այցելութեան իւրոյ՝ զոր և եթ փափագիմ ի Նմանէ խնդրել անձկանօք, բայց յաւուր խուղարկութեան արկեղացն հասարակութեան, իբրև անարգի միոջ քննեցան և հիքոյս գրեանք, յորոց Աթոռոյն յատկացեալ գրեանքն յանձնեցան ինքեանց առանց այլայլութեան իմիք. և այնոքիկ ևս՝ որք չէին ինքեանց յայտնի, տարեալ մատուցի նոցին վեհութեան. իսկ որ իմ էին ստացեալ յայլ ուրեք թէ դրամովք և թէ այլով իւիք, ի բաց առին անտի զգրչեայ գրեանս մեսասան՝ որք յայտնեցան սրբազնութեան ձերում միջ-

նորդութեամբ արժանապատիւ Յովսէփ արհւոյ· ղըկեալ զիս ի նոցունց ամենեցին մինչև ցայժմ. և ծուլ արդեօք եղև այս, և ոչ ուժեք· վասն որոյ աղերսեմ առ սրբազնութիւն ձեր հրամայել՝ զի հատուսցեն զնոսին առ տառապեալս ի մխիթարութիւն վշտացեալ մտաց և սրտի իմոյ· քանզի զըրկեալն աղաղակէ և բողոք նուաստիկ հոգւոյս հասցէ յականջս իրաւարար ձերդ Տէրութեան։

Բազմապայծառ վեհանձնութեան ձերում յետնեալ ծառայ Յովհաննէս արեղայ Գէորքեան շահրիարցի»։

2· «Սրբազան Ներսէս արքեպիսկոպոս Վրաստանու Հայոց յետ ստանալոյ յինէն զմուրհակն 16,000 ղուռուշի՝ որ յանուն իմ և տիրացու Արիստակեայ՝ զոր շնորհեալն էր մեզ երկոցունցս իբրև վերջին կտակ զկնի իւրն վախճանի Սրբազան Աստուածատուր արքեպիսկոպոս Հայրն մեր, ի մասին քննութեան զրամոյն այնորիկ և յետ բանիւ յայտարարութեանս, խնդրեաց և գրով զոր մատուցի յայս օրինակ՝ որպէս և էրն։ Ի 1825 ամի կենարարին մերոյ մինչ էրն Աստուածատուր արքեպիսկոպոս միաբանն սուրբ Էջմիածնի ի Կոստանդինուպօլիս նուիրակական գործով, և պատճառաւ իւիք դադարեալ ի գործոյն կայր ի Հասան փաշայ խանն, և այն ինչ ստիպեցաւ ի գլխաւորացն ազգիս ելանել և գալ ի սուրբ Էջմիածին, առաքեալ կոչեաց զմահտեսի Դաւթեանն զՄելքոն զՊաղտասար աղայ սիրելիսն իւր առ ինքն ի Հասան փաշայ խանն, լինելով առանձին ինքն և նոյն եր-

կոքին յարգելեքն և մեք երկոքեան հոգևոր որդիք նորին Յովհաննէս և Արիստակէս, եւ ցնոսա Մելքոն և Պաղտասար աղայի տասն և վեց հազար գուռուշ յանուն մեր՝ ասելով. այս դրամ է այսոցիկ որդւոցս՝ զոր տամ ձեզ, Աստուած լիցի վկայ ի մէջ մեր. և հարցեալ ցնոսա զարժանաւոր տոկոսի նոյն դրամոյ, լուաւ ի նոցանէ ի միում ամսի հինգ հարիւր գուռուշին չորս գուռուշ. և հաճեալ եւ ցնոսա և ասաց. մեք ունիմք գնալ ի սուրբ Աթոռն և զԱրիստակէս որդին իմ վերստին յղեմ ի Զմիւռնիա ի լրացուցանել զԹերի ուսումն իւր. Այս և դուք պարտաւորիք վեց ամսոյ ի վեց ամիս զգորին տոկոսին հասուցանել առ սոյն Արիստակէս որդին իմ ի պէտս ծախուց իւրոց, որում և պաշտպան անդ ի Զմիւռնիա կացուցեալ եմ զՆուպարեան Մկրտիչ աղայն. և նոքա ըստ այնմ ընկալեալ՝ ելին անտի և ես ընդ նոսա գնացաք ի սեննակ նոցա ի Նոր Մեծ խանն, և անդ գրեալ զմուրհակն ձեռագիր և կնիք եդին ի ներքոյ և ետուն ինձ, և հարցին անդ ես թէ՝ սոյն դրամոյ կէս բաժին քո է, ունի՞ս հաճութիւն զի և քո բաժին տոկոսին տացուք տիրացու Արիստակեսայ. և ես ասացի այո. և այնպէս առեալ իմ զմուրհակն բերի առ սրբազան հայրն իմ և ցուցի. և նա ընթերցեալ բարի է, ասաց. Թողցէ դա այսուհետև առ քեզ»:

Նոյն թուի մարտի 17-ին Ներսէսը գրում է Երևանից Մանուէլ վարդապետին էջմիածին. «Հաշուադնութիւնք տումարացն արդեանց և ծախուց հանգուցեալ Աստուածատուր արքեպիսկոպոսի՝ ուղ-

դնալք այնպէս ըստ երկասիրելոյ ձեր, տեսեալ և շնորհակալ եմ յոյժ։ Եւ զի նովիմբք չունիմք զպահանջողութիւնս իրաւացիս, հարկէ ուրեմն դադարեցուցանել զայն հետաքրքրութիւն, և թողուլ խղճմտանաց նորայնոց»։ Սակայն այդ նորայինքն այդքանով բաւականանալ չէին կարողանում. նորանք զրկանքներ էին կրել և հատուցումն էին պահանջում։ Երկու տարի սպասելուց և բաւականութիւն չգտնելուց յետոյ Յովհաննէս աբեղան 1830 թ. ուղղում է կաթողիկոսին հետևեալ խնդիրը.

«Գերասուրբ Օծութիւն Աստուածարեալ
Հայրապետ Հասարակախնամ Հայր և Տէր.

Զկնի վախճանի Աստուածատուր արքեպիսկոպոսի՝ թէ զեարդ հասին որք Ռուսցելոցս մեզ անհնարին վիշտք զրկողութեամբ հանդերձ ի մասին պահանջելեացն իմ և այլոց ընդ իս զրկելոցն՝ Ղուկաս վարդապետի և Յոհաննու, յուսամ եթէ չէ ինչ այնքան անծանօթ Ձերդ վերտառեալ Օծութիւն այսոցիկ ամենայնի. և մինչև ցայժմ որքան և խնդրամատոյց եղաք առ սրբազան կառավարութիւն մեծի Աթոռոյս վասն սոցին, չեղև հնար մեզ գոնէ զմիոյ ի զրկանացն մերոց գտանել զբաւականութիւն, վասն որոյ անյոյս եղեալ ուստեք և տակաւին յայսքան ժամանակս իսկ չվստահացեալ առ այլս լինել բողոքաւոր սակս ինչ պատճառի, այժմ մատչիմ խոնարհ աղաչաւանօք միմիայն առ սրբազնագոյն վեհապետութիւն Հասարակախնամ Տեառնդ մեծի գտանել զիրաւունս զրկանաց մերոց բարձրագոյն և արդարացի հրամանաւ Գերասրբութեան բազմա-

գութ Տեառնդ և զերծանիլ ի կենամաշ հոգողութեանց աստի. և յուսամ աներկբայ՝ չլինել անտես խնդրոյ այսորիկ աղաչողացս մեր»։

Որպէս զի տեղիք չմնայ կարծելու թէ գուցէ Շահխաթունեանցը շահասիրական անտեղի պահանջներով է այսքան շարունակ խնդիրներ և բողոքներ մատուցել. կամ թէ գուցէ նա եղել է քիչ ու շատ հիմնաւոր կասկածի ներքոյ, հարկ ենք համարում ասել, որ ինչպէս ցոյց է տալիս նորա երկրորդ յայտարարութիւնն յանուն կաթողիկոսի, դարձեալ 1830 թ. յուլիսի 18-ին, նորանից պահանջել են նախ՝ 309 թումանն, որ երևում է թէ նոյն 16,000 ղուռուշն է, ինչ որ տեսանք վերևում, ըստ որում Երևանի 309 թումանը (927 ռուբ.) վերածելով ղուռուշի՝ ստացւում է դրեթէ նոյն թիւը. երկրորդ՝ 700 ոսկու մնացորդ։ Այս վերջին գումարն Աստուածատուր եպիսկոպոսը աւանդ է թողած եղել վարդապետի հօր՝ Գէորգ աղայի մօտ, որ այդ գումարի մի մասը վերադարձրած է եղել եպիսկոպոսին կենդանութեան միջոցին։ Երբ մնացածը պահանջել են Գէորգից եպիսկոպոսի մահից յետոյ, նա առաջարկել է վանական կառավարութեանը ստանալիքի մի մուրհակ, որպէս զի վաղարշապատցի պարտատէրերից ստանան և վերցնեն, բայց դեռ չստացած՝ Գէորգ աղան վախճանւում է, և այդ մնացածը պահանջում են նորա որդուց, Յովհաննէս վարդապետից։ Վերջինս յայտնում է պատրաստակամութիւն վճարելու, բայց պահանջում է, որ իրան յետ դարձնեն հօր ստանալիքի մուրհակն,

իսկ նորան այդ չէին տալիս, ասելով, թէ Գէորգ ա-ղան թէեւ տուել էր, բայց ինքն էլ յետ է առել, որ, իհարկէ, սուտ է եղել։ Զստանալով մուրհակն, որ աւելի գումարի է եղել քան պահանջը՝ Յովհաննէսն ոչ միայն չէ կարողացել վանքին հասանելիքը լրացնել, այլ և հնար չէ ունեցել բաւականութիւն տալ նոյն իսկ հանգուցեալ եպիսկոպոսի փոքրաւոր Յոնանին, որի աշխատած գումարն ինքն իւր ձեռքովն էր տուել Աստուածատուր եպիսկոպոսին պահպանութեան և այժմ իրանից էր պահանջում տուողը։ Իսկ 16,000 ղուռուշի պահանջը նա գտնում է անիրաւացի։ Ահա նորա խօսքերը. «Ամենախոնարհ վերապատուութեամբ ընկալեալ զվստահութիւն ի հայցախնամ ծանուցական գրոյ վեհափառութեան Ձերոյ եղելոյ ի 16 յուլիս ամսոյս առ մեզ ի մասին խնդրագրոց մերոց մատուցելոց առ Սրբազնասուրբ Օծութիւն Ձեր ի 26 մայիսի և յ30 յունիսի այսր ամի յաղագս պահանջողութեանց մերոց, առաջի առնեմք ղյր վասն խոնարհագէմ պատկառանօք։ Ի յեօթն հարիւր ոսկւոյ՝ որ էր ստացուած հանգ. Աստուածատուր արքեպիսկոպոսի և աւանդ առ հայրն իմ Գէորք Ճահխաթունեան, մինչև ցվախճան նորին սրբազնութեան՝ թէ որչափ հատուցեալ է յիշեալ հայրն իմ առ նոյն ինքն Աստուածատուր արքեպիսկոպոս ի ձեռն նուաստիս, ակներև ապացուցանի. և զմնացորդսն նոյն ոսկեաց պարտաւորիմ ես ինքն հատուցանել յԱթոռդ սուրբ՝ եթէ զմուրհակն եղեալ յանուն հօր իմոյ... դարձուսցէ առ իս

սրբազան կառավարութիւնն՝ որում յանձն արար զայն յանցեալ ամի Հայրն իմ ի կենդանութեանն ի ներկայութեան Գէորգ արքեպիսկոպոսի առ ի վճարել զվէճն, որ ընդ մեզ և ընդ պարոն Մեսրոպն Մարգարեան, այլ զի վաղվաղեաց նմա մահ յայնմ միջոցի, չկամի այժմ սրբազան կառավարութիւնն վերադարձուցանել մեզ զայն մուրհակ՝ ասելով թէ՝ արդարև յանձնեաց մեզ, այլ վերստին ընկալաւ ի մէնջ, որ չէ ստոյգ ամենևին. եթէ լինէր, յետ վախճանի ընդ այլ հայրենի ժառանգութեանցն և այն անցանէր ի ձեռս մեր: Միով բանիւ ասեմ. իմ այսչափ բողոք և աղաղակ չէ այն թէ՝ պահանջեմ ինչ աթոռային գանձարանէ և կամ ի գըլից հանդուցեալ Աստուածատուր արքեպիսկոպոսի, այլ միայն զհայրենի մուրհակն իմ յիշատակեալ՝ որ նա է կատարեալ բաւականութիւն իմ, և հանգիստ աղաղակի իմոյ, որովհետև յինէն պահանջեն պարտատեարք զպահանջելիս իւրեանց: Բայց պահանջողութիւն սրբոյ Աթոռոյ երեք հարիւր ինն թուման (309) յինէն ի նուաստ Յովհաննէս արեղայէս՝ թէ որո՞վ իրաւամբ և առ ինչ վախճան, չէ ինձ յայտնի. վասն որոյ կարօտիմ տեղեկանալ ստուգութեանն և իրաւանցն, և այնպէս ճանաչել զիս պարտաւոր:

Իսկ ես Յօնանս Մալխասեան չունիմ պահանջելի դրամ և ոչ մի ի սրբոյ Աթոռոյ, այլ ի Յովհաննէս արեղայէ. քանզի իմ դրամ անցեալ է թէպէտ առ Աստուածատուր արքեպիսկոպոսն, բայց յինէն փոխառու ձեռանէ ի ձեռն է Յովհաննէս

արեղայն՝ որ բազմագիմի բանիւք յուսացոյց զիս վճարել ոչ անագան յեօթն հարիւր ոսկւոց անտի՝ որ ի վերայ հօր իւրոյ. վասն որոյ զՅովհաննէս արեղայն ճանաչելով ինձ այժմ պարտապան, աղերսեցի և աղերսեմ առ բաւարար գերասուրբ Օծութիւն Ձեր տալ ինձ զբաւականութիւն։

Վեհափառ մեծի Տէրութեան Ձերում ամենանուաստ ծառայք Յովհաննէս արեղայ Գէորքեան շահրիարցի։

Յօնան Մալխասեան Վաղարշապատցի»։

Այս ամենից յետոյ նա արդարև իրաւունք ունէր յոյսը դնել յաւիտենական արդարութեան վերայ, ինչպէս գրում էր իւր եղբայրակից Արխատակէսին, Զմիւռնիա, նոյն թուի յունիսի 16-ին. «Վիճակ իմս անձին նուիրէ գոհութեամբ զփառս Արարչին հանուրց. թէև մառախուղք կասկածաւոր սըրտից և մտաց ժամանակաւորացս յետ վախճանի սրբազան հօր մերոյ պատեցին և պատեն զնովաւ, այլ արդարութիւնն յաւիտենական չառնէ անտես՝ յոր ապաւինեալն եմ»։ Արդեօք այդ «կասկածաւոր սրտից և մտաց» հնարած բարուրանքի լաւագոյն ցրումն համարելու չէ՞ և այն, որ չնայած այդ պահանջներին՝ Եփրեմ կաթողիկոսը 1828 թուի փետրվարի 18-ին տալիս է մասնաւոր վարդապետութիւն երկու տարուայ արեղայ Յովհաննէսին [9])։

Բ.

Ինչքան էլ ծանր են եղել Յովհաննէս վարդապետի համար այդ վիրաւորանքներն ու զրկանք-

ներն, այսու ամենայնիւ նա անընդհատ շարունակել է իւր ուսումնասէր պարապմունքներն, իւր միակ մխիթարութիւնը։ Լինելով պատմական և հնախօսական գրականութեան սիրահար՝ դեռ Տաճկաստանում գտնուած ժամանակին օրինակելով և խնդրելով ձեռք էր բերած պատմական ձեռագիրներ [10])։ Էջմիածին վերադառնալուց յետոյ այդ նոյն իսկ իղձն և ջանքը իսկոյն յայտնւում է նորանում։ Մի նամակից, որ գրել է 1826 թ. յունվարի 31-ին, իմանում ենք, որ նա դեռ սարկաւագութեան միջոցին մտադիր է եղել գնալ Ներսէս արքեպիսկոպոսի մօտ ձեռագիրներ օրինակելու. բայց լսելով, որ արհին հեռու է գնալու, խնդրում է, որ պատուիրի ում մօտ թողնելու է գրքերը, իւր փափագն իրագործելու իրաւունք տալ։ Թէպէտ և նամակից չի երևում, թէ Ներսէսին է ուղղած, բայց դժուար չէ հաստատապէս այդպէս համարել, քանի որ «Նուաստիս գոլով ի բնէ որդի Տէրութեան Ձեր» խօսքերը Ներսէսին կարող են վերաբերուել, որ նորա ուսման հոգսը իւր վերայ էր ընդունել, իբրև Գէորգ ազգի բարեկամ. բացի դորանից նամակում ասուած է թէ՝ լսեցինք, որ պիտի ճանապարհորդէք «ի հեռաւորս յօծումն Նորապսակ Արքային (և) ի տես»։ Թէև Էջմիածնում տարածուած է եղել, թէ Ներսէսը գնալու է Մոսկուա Կայսեր օծման ներկայ լինելու, բայց ինչպէս մի նամակից իմանում ենք, Ներսէսը մտադիր է եղել Թագադրութիւնից յետոյ գնալ. «Այլ և լուաք, եթէ Ներսէս սրբազանն ևս գալոց է այսր, ոչ ի

ժամ թագաւորութեան այլ զկնի նորա, վասն հա-
գատար լինելոյ Աթոռական հարկաւորութեանց» [11]):

Յովհաննէս սարկաւագի նամակը.

«Հոգելի Հայր Սրբազան

Գորովագութ Տէր իմ.

Խնամածու հարց զիջանիլ սիրով յարժանաւոր խնդիր իւրոց զաւակաց, շնորհ մեծ է՝ և յորդոր իմն յառաջադիմութեան նոցին, և յիշատակութիւն անջնջելի յազգաց յազգս հանապազ. յայսպիսս ջերմն սիրով հանդիսացեալ Սրբազնութեան ձեր ի վաղուց անտի մաքուր սրտիւ հաւատամ. և զի անթագչելի քարոզի յամենայն ուրեք արժանապէս: Ապաքէն և նուաստիս գոլով ի բնէ որդի միանգամայն և ծառայ Տէրութեան ձեր՝ որում չէի արժանի յիմ մասին. զայս խնդիր մատուցեալ առ Հայրդ իմ խոնարհաբար, կատարմանն հասանիլ փութամ: Քանզի լուր հնչի յայս կողմանս՝ եթէ Սրբութիւն ձեր ունի ճանապարհորդել ի հեռաւորս յօծումն նորապսակ Արքային ի տես՝ և հաւանական դատի. բայց հիքդս իղձ ստիպէր ի ջեռանիլ աւուրց տարեդս դիմել այդր ի վայելել զհիրազօր օրհնութիւն Հօրդ սրբոյ. և գաղափարել զպատմական մատեանս երանելի նախնեացն մերոց՝ որք բաղմօք գտանին առ նախնասէր Տէրդ հոգելի, և շնորհիւ ձեր յայլ ուստեք ևս ի ձեռս բերել. սակայն այսու հանգամանաց լրով տխրութիւն ծագեցաւ յիս առաւելապէս. այլ չեմ իսկ յուսահատ՝ զի եթէ գտի շնորհս առաջի ձեր, դիւրին իմն է. զի յաջողիլ ճանապարհորդութեան ձեր՝

կարող իսկ էք առ ո՛ ունին մնալ մատեանքն այնոքիկ կատարել զայս իմ փափագանաց խնդիր պատուիրելով նմա. և ծանուցանելով ծառայի ձերում ընդ սիրելւոյ ձեր և իմ մարմնաւոր ծնողի։

Ի պսակ բանիս մնամ աղօթաւոր վասն ցանկալի կենաց Սրբազնութեան ձեր սարկաւագ Յովհաննէս Շահրիարցի Գէորգեան»։

1830 թուին էլ (Նոյեմբ. 5) նա գրում էր Շուշի Զաքարիա վարդապետին (Գուլասպեանց)... «Խնդիր նուաստիս առ ձեզ՝ հա՛յր հոգեշնորհ, զի քաջագէտ իսկ է Սրբութեան ձերում իմս հետեւութիւն ի ձեռս բերելոյ զհնագոյն մատեանս պատմութեանց նախնեաց մերոց և մերձակայ ազգաց Հայաստանեայցս, որ և ցանկալի իսկ գիտեմ Ձերդ գովանի մտաց. գտի աստէն հնագոյն պատմութիւն Աղուանից յերիս հատորս՝ հասուցեալ հազիւ մինչև ցութն հարիւր թուական Փրկչին. այլ անտի այսր չգտանի ուրեք. իսկ լուայ ի Սրբազան Մետրապօլտէ՝ եթէ գտանի հարուստ պատմութիւն Աղուանից (երջանիկ զիս համարէի եթէ ցառ մեզ իցէ շարակարգութիւնն) առ այր ոմն աշխարհիկ յազգականաց Իսրայէլ կաթողիկոսի, զոր ի ձեռս բերել ընդ յիշեալ սրբազան հօր ըստ խոստման իւրոյ Սրբազնութեանն, շնորհ մեծ համարիմ առ իս, և այն՝ կամ դրամովք, և կամ աւանդ հաւատարիմ առ իս այսր առաքել, զի օրինակեալ՝ անդրէն դարձուցից առ ինքն ի ձեռն ձեր սրբութեան, և կամ այդր տալ օրինակել՝ եթէ իցէ աւելորդ շարակարգութիւն ի նմա քան զնախայիշատակեալ առ իս պատ-

մութիւնն, որ ընծայի հեղինակութեան Մովսիսի ուրումն Կաղկանտուացւոյ»...[12]:

Պատմական ձեռագիրներ որոնող և ժողովող երիտասարդ ուսումնականը միաժամանակ նոյնպէս վաղ ձեռնարկած է եղել գրաւոր վաստակների, որը սեպհական ընտրութիւնով, որը ուրիշների խնդրանքով: 1828-ին նա արդէն սկսած է եղել գրել մի ստուար աշխատութիւն: Չգիտենք ինչ է եղել այդ. միայն այդ թուին (ապրիլի 13) առ ոմն «Խոհական իշխան մահտեսի Յովհաննէս. Ազնուաշուք պատուելի» գրած նամակն ասում է. «Ընկալայ և ծանեայ զմիտս քաջաբան նամակի ձերդ յարգութեան, բայց ի միում նիւթի երկուց աշխատիլ չէ հարկ, ըստ որում զմի և զնոյն շաւիղ ունին ընթանալ. քաւ լիցի եթէ եղեց խոչընդոտն ձեզ, այլ յայտնի իսկ է քաջատես մտաց ձերոց՝ զի մերս նուաստութիւն ի բազմաց հետէ աշխատի ի ձեռն բերել զհարկաւոր նիւթս այսորիկ աշխատութեան, յորոց զոմանս և տեսիք իսկ ըստ անխտրութեան իմս բարուց: Ապաքէն եթէ արժան դատիք, ոչ միայն զմի տետր, այլ զբովանդակն անխռով մտօք մատուցից ձերդ գերապատուելութեան՝ կասեալ իմ յետս յայդոցիկ ամենեցունց...»

Հետեւեալ տարին (1829) նա ստանում է առաջարկութիւններ Բայազէտի վարժապետ Աբրահամ վարդապետից և Երեք խորան (ուչ քիլիսէ) վանքի առաջնորդ Յովհաննէս արքեպիսկոպոսից: Առաջինը խնդրած է եղել գրել թէ որպիսի և որքան «պաշտելի սրբութիւններ» կան Մայր Աթոռում և որո՞նք

են վերջինիս «երեւելի վիճակները»։ Երկրորդը՝ Բագրեւանդի երեք գաւառի նկարագրութիւնը։ Վերջինի խնդիրը կատարում և ուղարկում է, իսկ առաջինին պատասխանում է. «Ձեր արժանապատուութեան խնդիրը... շատ փափագելի էր և իմ հոգուն, որպէս քաջ գիտէ Ձեր խոհականութիւնը. բայց եթէ հարցնելով և ոմանց պատմելով առած գրեմ, գուցէ ոչ ընթերցողին և ոչ նոյն իսկ խնդրողին հաճոյական լինի... Գրեցէք Մանուէլ բարեշնորհ հօրը, կամ որին կամենում էք, որ հարկաւոր գրքերը խնդրելիս չխնայեն, որոնցից հաւաքելով ըստ իմ տկար մտաց՝ խնդամիտ հոգով կմատուցանեմ ձեր հայրութեան»...

Այլ թէ որքան դժուար է եղել այն ժամանակին նոյն իսկ Մայր Աթոռի այնպիսի աշխատասէր միաբանին ստանալ մատենադարանից գրքեր, ցոյց է տալիս ինքը գանգատով առ նոյն Աբրահամ վարդապետը գրած երկրորդ նամակում... «Զուներ այսչափ յամիլ... խնդրոյն այնմիկ տեղեկութիւն, չէք անծանօթ զտեղւոյս՝ որ ոչ բնաւ ընծայէ ումեք ըստ բաղձանացն. թէև ամենեքին ընդարձակեսցի ուղին ըղձանաց, զի որ զայսչափ հարիւրաւոր ամս Մնայր անձեռնարկելի յումեքէ, և տակաւին Մնայ, զիա՞րդ կարողասցի ոք ի դոյզն ինչ միջոցի զծածկեալսն ամաց բազմաց անգիտութեան վարագուրաւ բացերև առնել։ Աւասիկ թէպէտ գրեցի զերկոտասան հատուածս, այլ հաստատութիւնն այնոցիկ Մնայ ընդ վարագուրաւ, որ ոչ դոյր և ի ջամբռի անդ»։

Մենք դարձեալ առիթ կունենանք տեսնելու Շահխաթունեանցի աշխատութիւնները վերոյգրեալ շաւղով և նորանց արդիւնքները։ Այստեղ ընթերցողի ուշադրութեանն ենք ներկայացնում մի աւելի բարձր ձգտումն, որով մի ժամանակ ոգևորուած է եղել այդ արժանայարգ կրօնաւորը, թէև, տարաբաղդաբար, չէ կարողացել նոյնը իրագործել։

1829 թուի ապրիլի 18-ին «Առ բարձրագոյն կառավարութիւն սրբազան հարց մեծի մայր Աթոռոյս» մատուցւում է «ի Նուաստ Յովհաննէս արեգայէ Գէորգեան» յետագայ խնդիրը. «Ես յետնեալ Նուաստ ծառայ տէրութեան ձեր ի վաղուց հետէ, գրեթէ յօրէ անտի մտանելոյ իմ ընդ պաշտամամբ սարկաւագութեան ունէի ի մտի առանձնանալ յանապատ ուրեք, այլ առաւել քան զամենայն ի Սևան կղզի. և հետզհետէ առաւելեալ յիս փափագ անձկութեան, բազումս մտախորհ եղէ յաւուր ձեռնադրութեանս ի կարգ քահանայութեան յայտնել լուսահոգի ծնողին իմում զիմս իղձ տենչանաց և այնպէս ձեռնադրիլ ուխտաւոր յայն կղզի, այլ կըշռելով զկամս սրբազան հօր իմոյ՝ չկամեցայ տրտմեցուցանել զսիրտ հայրութեան նորին, թողեալ զայն յայլում դիպաւոր ժամանակի. ուստի այժմ ես այն իղձ այն փափագ կենդանի գոլով յիս յօժարութեամբ կամաց և հոգւոյ իմոյ և ոչ յայլոյ իմիք պատճառէ, ցանկամ գնալ մտանիլ յայն կղզի և կալ մնալ անդէն։ Ապաքէն աղերս արկանեմ առաջի ձերոյ բարձր սրբազնութեան հրաման շնորհել Նուաստիս հայրաբար ներողամտութեամբ. և յու-

սամ ի շնորհս մեծի Աստուծոյ և ի խնկանուէր մաղթանս տէրութեան ձեր տանիլ պարտաւորութեանց յառաջադրութեանս»։

Նոյն մտքով խնդիրը կրկնում է յունիսի 7-ին, երբ գրում է. «Վստահ եմ ի բարեգութ հայրական ձեր սէր չառնել անտես զյետնեալ ծառայիս ձերդ տէրութեան զխնդիր... այն զի յուսամ եմ եթէ ցարդ փարատեցաւ այն մթութիւնն զխմբագրին լրագրոյ Նուաստիս՝ որոյ վասն մինչև ցայժմ ի բարձր հոռավարութենէ ձերմէ եղէ անպատասխանի»։

Վանական իշխանութիւնը նորա խնդիրը կատարեց, թէև նա բաւական ժամանակ դեռ յոյս էր տածում մի օր իրականացած տեսնելու իւր փափագը։

Ինքն ըստ ինքն Սևանի անապատը քաշուել առանձնանալու գիտաւորութեանն ի հարկէ նշանակութիւն չէինք կարող տալ, եթէ նկատած չլինէինք նորանում, ինչպէս յիշեցինք, մի բարձր ձգտում։ 1830 թուին (օգոստ. 4) նա Սևանի վանահօրը գրած մի նամակում ասելով. «Դիոնիսեայ հօր և իմ և տիրացու Մսրայ խոնարհութեանն համբոյր մատուցանել աջաց Մանուէլ սրբազան հօր (Մանուէլ վարդապետ) խնդրեմք»... շարունակում է. «Իսկ զխորհրդոց մերոց՝ որում քաջիկ հասու էք դուք ինքնին, ունիմ ծանուցանել կամ գրով և կամ ելն, զոր տէր տացէ տեսանել արժանաւոր յաջողութեամբ»։

Ահա այդ խորհուրդն է մեր ուշադրութեան առարկան։

Յիշած անձինքներից Դիոնիսիոս վարդապետը

մեզ անյայտ մէկն է. իսկ Մուսէրը յայտնի Մսեր Մսերեանցն է, որ այդ միջոցին Էջմիածնումն էր և նոյն թուի աշնանը գնաց Թիֆլիզ։ Յովհաննէս և Դիոնիսիոս վարդապետների, ցուցէ նաև դպիր Մուսէրի, մէջ խորհուրդ է լինում գնալ Սևան, կազմել մի ուսումնասէր միաբանութիւն, որ նուիրուած լինի ուսման և գրականութեան, ինչպէս Վեննետկի մխիթարեանները են։ Սկզբում երկուսի մէջ ծնունդ առած խորհուրդն արծարծւում և հետևողներ է գտնում մի կողմից Մուսէրի Թիֆլիզ գնալով և բանակցութիւն սկսելով զանազան անձանց հետ, միւս կողմից Շահխաթունեանցի ջանքերով։ Վերջինս՝ առ Մուսէր գրած նամակում յիշում է իբրև համամիտներ Աբրահամ վարդապետին, Եղլադացի Եփրեմ վարդապետին. և յոյս է յայտնում, որ իւր ընկերակից Արիստակէսի միջնորդութիւնով և Մուսէրի թղթակցութիւնով Զմիւռնիայում անտարակոյս շատ պիտանի մարդիկ ևս կգտնուեն համամիտ։ Դպիր Մուսէրը գրած է եղել նորան և ընկերներին, թէ Միքայէլ վ. Սալլանդեանն և «դպիր» Խաչատուր Աբովեանցն ևս կամենում են լինել այդ միաբանութեան մէջ և թէ Սալլանդեանն արդէն միաբանութեան Աբբան պիտի լինի. Մնում է միայն ընտրել աւելի յարմարաւոր մի վանք։ Ընտրելի վանքերի թւում Շահխաթունեանցը ցոյց է տալիս Ղըփմի ս. Խաչ վանքն ևս. սակայն մի նամակի սևագիր, որ գրուած է նորա գրչով, բայց ի դիմաց ընկերակիցների առ Մուսէր (և որ՝ ինչպէս երևում է Թուականը չունենալուց և վրայի տժգոյն գծից, չի

էլ ուղարկուել) ցոյց է տալիս, որ Էջմիածնի «միաբանուածները» կասկածով են նայել Սալլանդեանի և Աբովեանցի դիտաւորութիւնների վերայ. ըստ որում երեւում է, որ Սալլանդեանն և Աբովեանցը յայտնած են եղել, թէ օտարազգիներից եւս իրանք նպաստներ են ստանալու, այդ պատճառով էլ նամակ գրողները խնդրում են Մսուրից իմանալու, թէ ինչ նպատակով օտարներն առաջարկում են օգնութիւն. մի՛ գուցէ կամենում են այնպէս անել, ինչպէս արեցին Շուշում հաստատուած լուտերական քարոզիչները[13]) ձեռքով. միևնոյն ժամանակը յայտնում են իրանց փափագը, որ «միեղէն եղբայրութեան» տեղը կամ կացարանը մերձ լինի «տարաբաղդ մերս Հայաստանի»։

Այնուհետև գրած նամակներից տեսնւում է, որ Մ. վ. Սալլանդեանն 1832 թուին դուրս է եկել Մոսկուայից դէպի Կովկաս գալու, որ «ուսումնասէր» ընկերակցութեան համար յարմար տեղ գտնի, թէպէտ և իսկապէս այլ է եղել նորա գալու պատճառը, բայց պատրուակել է։ Քաղուածօրէն յառաջ կբերենք Շահխաթունեանցի Մսերին գրած նամակներից այդ խնդրին վերաբերեալ իսկական խօսքերը, յաւելով, որ չունինք նաև փոխադարձ գրածները։

1. (10 օգոստ. 1831)... «Ցաջողուած յուսոյն իմոյ՝ զորմէ երկարաձիգ բանիւք աւետարանեալ էիք, փոխեաց զիս զհէքս յայլ այր, վասն որոյ գրեմ առ սէրդ, զի աներկմիտ յուսով հաւատասջիք՝ եթէ և ես նուաստս մի ի նոցանէ որպէս զձեզ վառեալ հայրենասէր եռանդեամբք. և ոչ ես

և նթ, այլ և ոմանք, որք նովին եռանդեամբ կան թագուցեալ զայն հուր հայրենասիրութեան ի խորոջ սրտի իւրեանց. առ որս եթէ հնչեսցի հիւսիսն արծարծիչ ցուցցեն նոյն ընդ նոյն ակն յայտնի՝ զոր խնդրեմքն. Աբրահամ վարդապետ վասն ակարութեան կայ տակաւին յԵրևան... գիտէք զնա ի նոյն. գիտասջիք և զՀ. Եփրեմ Ելլադացին... չէք անծանօթ զբազմալեզու լիաշնորհ իմս Արիստակեայ՝ որ տակաւին կայ ի տարագրութեան սակս ուսման և լեզուագիտութեան. նովաւ և քև ի ձերդ հայրենակցաց անտարակոյս ունիմք զարս պիտանիս այժմ: Ծանօթ լիցի սիրոյդ և միւս եղբայր իմ և Հ. Աբրահամու ի դոյն խորհուրդ շաղկապեալ Հ. Յովհաննէս Կոստանդինուպօլսեցի՝ որ այժմ գտանի առ Յակոբոս սրբազան Արքեպիսկոպոսն Ամասիոյ՝ որ և ունի զտորագրութիւն իւր ի պայմանագրի ուխտադրութեանն եղելոյ առ իս: Առ սոսա ունիմ յետ այսր ի սոյն յայս միտ Թղթակցիլ: այլ դու սէր իմ՝ քա՛ջս լեր, և ի նոյն կանխեա՛ ոգւով արութեան, եռանդեամբ հայրենասիրութեան. և քաջագիծ նամակաւք փութա՛ առ յառ[illegible]եալն Աբբայ Հայր՝ և յեղբայրն՝ որ ի տանէն Մ[illegible]մեանց, փութալ ձեպել և չԹողուլ անգործ զ[illegible]նաւորեալն գործ այդպիսի՝ այնպիսի սկսուածովք և խոհական դրութեամբք՝ որ չունիցի բնաւ [illegible]րբալիլ ի դաւադրութեանց հակառակաց այդ[illegible]աց... Այլ զի՝ սէր իմ. այս բան և այս յառաջադրութիւն արդարև գործ հաղուագիւտ և ցանկալի սրտից հայրենասիրաց մանաւանդ

մեզ՝ որում ի վաղուց հետէ փափագէաք, բայց որչափ հարկաւոր և բազմօգուտ շահաստանութիւնք նորին, այնչափ ևս զանազան խոչք և խառնուրդք միջոցաց և վախճանի նորուն, որպէս իսկ քաջ յայտնի են և ձերդ ուշիմափայլ մտաց. վասն որոյ փութամք որչափ կարելին իցէ ի ձեռն ձերդ խոհականութեան ունիլ զբաւական տեղեկութիւն ի սոյն յայս գործ միեղէն եղբայրութեան կամ միաբանութեան վասն միջոցաց նորին և վախճանի՝ թէ արդեօք վախճան այսմ ուր ունի հայիլ և յինչ կայանալ. որչափ իցէք գիտակ ցարդ, և որչափ ևս կարէք հասու լինել յետ այսր, ստուգիւ ծանուցանել մեզ ճշմարտաբանութեամբ ձերով խնդրեմք։ Իսկ վասն տեղւոյ այսր միաբանութեան բաց ի նշանակեալ վայրէն երևի յարմար այլ միւս սուրբ Խաչ վանք կառուցեալ ի կոփածոյ քարանց ի վայելուչ վայրի ի գաղթականաց Անի քաղաքին Ճիրակայ մերձ ի հին Ղրիմ...»։

2. (Անթուական սևագիր առ Մսեր և Առաքել Արարատեան).

«Գրութիւն ձեր ի 22 օգոստոսի այսր ամի տողեալ գրչութեամբ եռանդուն հոգւով ազգասիրութեան յԱռաքէլ դպրէդ Արարատեանց մերս անգուգական սիրելի յեղբօրէ. և հասեալ այսր առ Հ. Յովհաննէս Շահխաթունեանց ի 31 նոյն ամսեան հասու եղաք ամենայն մտացն ի նմա գրելոց մեք երկքեան ճշմարիտ սիրով և հոգւով միացեալքս։ Դոյն եռանդ սիրոյ հայրենեաց և եկեղեցւոյ՝ որ ի ձեզդ բացափայլի, անտարակոյս հաւատամաջիք և

ի մեզ, ոչ այժմ և եթ, այլ ի հերուն հետէ իսկ,
որպէս քաջածանօթ գտայք և դուք. այլ զի՞նչ
օգուտ, զի ինչ ինչ տարաբախտութիւնք անձին և
ժամանակի ձեռնունայն կացուցանեն. այլ այժմ
որովհետև եռանդոտ և ազգասէր անձինք հետզհե-
տէ գան յերևան և ի միաբանութիւն միոյ խորհր-
դոյ կայլին անխարդախ, յոյս առ Աստուած՝ յաջո-
ղել այնմ անտարակոյս, զի որ ինչ դժուարին՝ ի
ձեռն միաբանութեան դիւրին և հարթ. համա-
ռօտս գրեմք առ սիրելիսդ. Ցաւ անտարակոյս
զմեզ առ այդ խորհուրդ. այլ միայն ջանադրու-
թիւն և հոգ մեր ամենեցուն լիցի յօգուտ հայ-
րենեաց և եկեղեցւոյ՝ ոչ նորագոյն ինչ նորոգ ծնա-
նելով, այլ զլուսաւոր վարդապետութիւն երանելի
նախնեացն և զ'ի նոցունց քարոզեալ զճշմարտու-
թիւնն անպատրուակ ի վերայ աշտանակի ի լոյս
տունջեան կացուցանելով զնախնեացն ասեմ զհո-
գեընկալ Թարգմանչացն մերոց՝ որոց հոգեկիր ան-
ձանց հազուագիւտ ժամանակ փակեցաւ ընդ խա-
ւարաւ տգիտութեան անարժան վարդապետաց
աբեղայից ազգիս ըստ նամակին Ղազարայ առ Մա-
միկոնեանն Վահան: Եւ զի ըստ որում դժուարին
է ձեզ այդր եղելոցդ և մեզ աստէն կացելոց Թըղ-
թակցիլ յաճախ յայս նիւթ, ուստի տամք զվստա-
հութիւն զմեզ, զի դուք քաջագօտի եղեալ և
բարուօք հասու մտաց և խորհրդոց նորուն Սալ-
լանդեան Ծայրագոյն վարդապետի... և Խաչատուր
դպրի Ա[illegible]վեանց թէ արդեօք միտք և ջանք նո-
ցուն յայս խորհուրդ զլխաւորապէս առ ի՞նչ վախ-

ճան հայիլ ունիցին. մի՛ ինչ տարակուսութիւն կալջիք ընդ այս գրուած մեր, զի աշխարհ նմանեալ ծովու, ոչ պակասին ի նմին զանազան և պէսպէս ծնունդք պէսպէս կենդանեաց խառնելոց զմիմեամբք՝ որք յուշինչ հային, եթէ ոչ վարել զմիմեանս ի կլանել և այլն. ապացոյց այսմ. զի ընթերցեալ է իմ ի բազում գրուածս և լուեալ իսկ ի բազմափորձ անձանց՝ եթէ որչափ են անձինք յՆերոպա, այնչափ և հաւատք. գիտեմք բազումք են առ նոսա անձինք մեծահարուստք և ձեռնտուք յայսպիսիս թեակոխելոց՝ այլ թէ առ ինչ վախճան, յայտնի են ձեզ և յայտնի ես լինիցին. որպէս ահա ի Շուշի լուտերականք ոմանք առ կայացեալ անդէն զծախս ուսումնարանին և գործարանին և զվարձս վարժչացն լիօրէն վճարէին, այլ և նոցին իսկ մանկանցն ուսանողաց առ ինքեանս նուիրէին զգրամս ծախս շաբթական. այլ զի՞նչ զկնի՝ խմոր չարութեան զանգեալ գտաւ ի նմա՝ որ հազիւ ուրեմն քաջաջան ճշմարիտ քարոզութեամբ նորուն Զաք. հօր անհետացաւ, ենւ։ Բայց այս ինչ է և եթ բան մեր առ ձեզ, զի յետ ստուգիւ հասու լինելոյ ձեր մտացն ուղղափառութեան և ճշմարտութեան խորհրդոյն՝ ջան ունիջիք որչափ հնարաւորն իցէ մերձ լինիլ տեղւոյ կամ կացարանին միեղէն եղբայրութեան տարաբախտ մերս Հայաստանի, զի զկնի յոլով շահատանութիւնս մատուցանելոյ հայրենակցաց, ունիցիմք և մեք դիւրութիւն առ ձեռն բերելոյ զհարկաւոր և զհազուագիւտ խնդրելի մատեանս նախնեացն մերոց՝

որոց այժմէն կարօտի նա ինքն Ծ. վ. Ս. Հ. Ա. զօրս և գրութեամբ իսկ խնդրեալ աստի ի վաղուց, տակաւին մնայ անպատասխանի եղն եղն»:

3. (13 փետր. 1832)... «Այնպէս երևի, եթէ խափանեցաւ գնալ մեր ի Կոստանդնուպօլիս... գրութիւն ձեր ի հեռաւորս առ այլ և այլ անձինս համախորհուրդս մխիթարութիւն մեծ է ինձ, մանաւանդ երբ տէր տացէ տեսանել զսկզբնաւորութիւնն ի կանգուն ձեռնտուութեամբ ձեռնկալուլին համայնից, և ես մինչ ցարդ անկարացայ առ սիրելիսն իմ թղթակցել ի գոյն խորհուրդ, ըստ որում առաջին գրութեանցն իմոց առ նոսա չունիմ տակաւին զպատասխանի, այլ չունիմ դադարել անդրէն... Մեսրովբ Թաղիադեանց յետ մուտ գործելոյ այսր յԵրևան մնայր անգործ, այլ ի սկիզբն այսր ամի պաշտպանեալ ի նորոգ Կաթուղիկոսէ և եթ՝ կարգեցաւ ուսուցիչ սարկաւագաց և դպրաց սրբոյ Աթոռոյս, որոյ զիարդն ծանուցից զկնի. յայտնի են Ձեզ սէ՛ր իմ, զի նորաձևութիւն հանդերձի և արտաքին շարժմունք չեն ինչ առ իս, և չհայիմ յայնս ի խափան հարկաւորացն ազգի և հայրենեաց եղն...»:

4. (9 ապրիլի 1832)... Բացածանուցաւ ինձ տեղեկութիւնն իմ զԾ. Մ. վ. Ս. և զելանելոյ նորա յայսմ ամի յայսոսիկ կողմանս ի գտանել զբարեվիճակն վայր բնակութեան ուսումնասէր ընկերակցութեան, ոյր վասն մաղթանք նուաստիս անձինս եղանէին, եղանեն և եղցեն առ այցելութիւնն վերին տնօրինել յօգտակարն, ի կարևորն և ի վայե-

լուծն զփափագելին ի մէնջ ի բազմացս զազգօգուտն խորհուրդ. և յաջողեսցէ տէր միջնորդութեամբ մատենին Թամիրաս Քնարազուրկ կոչեցելոյ ընդունայնանալ զրպարտանացն չարախորհ անձանց, և մաքրել մտաց բարեխորհն անձանց ի սուտ համբաւոցն ծանուցելոց, և շրջել բանին յօգուտ ազգի և եկեղեցւոյ արժանահայց խնդրուածովք մարգարէաշնորհ քերթողահօր մերոյ Մովսիսի տաչորելոյն սիրով ազգային բարեդիպութեանց...: Մեսրովբ Թաղիադեանց կարդեալն ուսուցիչ ոմանց կղերց Աթոռոյս և մանկանց սակաւուց գեղջս ըստ ինքնայօժար կամեցողութեանն խոստացեալ էր չստանալ յայսմ ամի զվարձս, բայց եթէ զկարևոր ինչ հարկաւորսն անձին իւրոյ ի կերլեաց և յըմպելեաց յԱթոռոյս: Դասատու ժառանգաւորք Աթոռոյս սարկաւագ չորք, Գէորգ, Ալէքսան, Մովսէս և Գասպար. և դպիրք ի վարժարանէն վեց. այսոցիկ և ոմանց մանկանց գեղջս եկաց ուսուցիչ ի քերականութեան, յԱստուածաշնչի և ի Թեսաւրոսն մինչև ցվախճան քառասնաւուրց պահոց, զի հասու լեալ ինքնին՝ եթէ անխոհեմ և անպատշաճ ասացուածք բանից իւրոց յինչ ինչ նիւթս խորհրդոց եկեղեցւոյ, և առ երևելի և հասարակ անձինս ոմանս, լսելի լինին հետզհետէ, ոյր վասն և ի վերջոյ ունի կրել զնախատինս և զանպատուութիւնս, մանաւանդ զի՝ յուսայր եթէ զբերեալն ընդ իւր զգիրս տպագրութեան գործարանի ունին ընկալնուլ Աթոռայինք դրամով կամ այլով շահեցողութեամբ, որ ոչ յաջողեցաւ, զի Աթոռայինն կարի

ընտիր գտաւ քան զնորայն, ըստ քաջ վերահասութեան առն Ցովակիմայ, եկեղոյն այսր յատուկ վասն կարգադրութեան գործարանին, յորում աշխատի այժմ. և իցէ թէ նախ քան զմուտս աշնան տպեսցի փոքրիկ գրքոյկ ինչ, կամ օրացոյցն հանդերձեալ ամի. վասն որոյ նա ինքն Մեսրովբ ի նոյն վախճանի քառասնորդաց պահոցն լուելեայն ի պահու գիշերային ժամերգութեան առաքէ զարկեղս գրենոյն և զայլ ինչս իւր յԵրեւան. և ինքն ես առանց ումեք ի մեծամեծացն կամ ի փոքունց ազդելոյ գնայ անդր յԵրեւան անդարձ. և կայ անդէն ցարդ. որ վասն և տարաձայնութիւնք ինչ ծագեցան, և թերեւս ծագեսցին. այլ միայն զայս ինչ ունիմ յայտնել Ձերում եղբայրութեան, չվստահանալ երբէք առ նա բացայայտ գրութեամբ զխորհրդոյն, զի բաց յանհաստատ լինելոյն ի բանս և ի գործս, թերութիւնք ինչ ևս նշմարին տեսանին ի նմա հակառակ ողջախոհ մտաց, և անհամաձայնութիւն վարուց և բարուց նորին մերումս ընկերակցութեան՝ զորս իբրև խորհուրդ բացածածուցի ձեզ, և հետզհետէ ստուգութիւն այսոցիկ ևս բացափայլեսցին այլովքն հանդերձ. ուստի և հաւանական թուի կասկած ձեր զնմանէ...[14]»):

Թէ այնուհետև որքան ժամանակ դեռ այդ ուղղութիւնով ջանքեր եղան և ինչո՞ւ այդ ընկերութիւնը գոյութիւն չունեցաւ. արդեօք արգելքը միայն նիւթականի պակասութի՞ւնն եղաւ, թէ նաև հոգևոր կամ քաղաքական իշխանութեան տհաճութիւնը—չենք կարող ասել, թէպէտև ի նկատի ու-

ննալով որ սկզբում այնքան զգուշութիւնով գաղտնի պահուած խորհուրդը վերջում յայտնի է եղել իշխան Բէհբուդեանցին և Կարբեցուն, դժուար չէ և այդպիսի ենթադրութեան գալ։ Գործի յաջողութեան համար հայրենակիցների ձեռնտուութեան կարօտ լինելով Շահխաթունեանցը 1831 թուին վճռում է «Խորհուրդը» յայտնել իւր բարեկամ Թովմաս Ղորղանեանցին, որ ծառայում էր նահանգապետի մօտ (յետոյ Էջմիածնի Սինօդի պրոկուրօր), առանց ուրիշների անուն տալու, իբրև իւր դիտաւորութիւն։ Վերջինը համակրութիւնով լսելով նորանից այդ մասին՝ խոստանում է թէ իշխան նահանգապետի հետ խօսել երբ կվերադառնայ Երևան, և թէ խորհրդակցել ուրիշ նշանաւոր անձանց, ի միջի այլոց և Թիֆլիզի Ներսիսեան ուսումնարանի հոգաբարձուաց հետ գաղտնապահութեան պայմանով[15])։

Շահխաթունեանցի մի նամակից (23 դեկտ. 1831) բերուած յետագայ տողերը ցոյց են տալիս, որ Թիֆլիզից Ներսիսեան դպրոցի հոգաբարձուները թէ վարդապետին իրան են քաջալերել և թէ նորան յանձնարարել են կաթողիկոսի առանձին խնամքին. «Զնամակ ազգասէր և հայրենասէր բարեկարգ ժողովոյդ գրեալ յանուն մերս նուաստութեան ի 31 ամսեանն հոկտեմբերի այսր ամի համարաւ 33 ընկալաք ամենայն վերապատուութեամբ ի 8 նոյեմբերի։ Բանք ի նմին արդարև ճշմարիտ թարգուցողաց յինքեանս ի միտս զտապ հրաբորբոք հայրենի լուսաւորութեան, և հետախաղաղ արծար-

ծողաց զնոյնս առ այլ հայրենասէր անձինս յաւաւել բացայայտութիւն օգտի հայրենեաց։ Այլ որ առ մեզ էին զօվք իբրև առ ճգնող ոք և ունող յեռանդուն սիրոս զպայծառացուցումն լուսաւորութեան ազգի, այդ արդարև ըստ իրաւացի բարեկարգ ժողովոյ և հոգաբարձուաց այնօրինակ հայրենասիրութեան գործ, և ոչ հանգոյն մեզ տկարացելոց յամենայն ձիրս վերաբերեալս այնմ բազմօգուտ շահաստանութեանց՝ զոր և մեք ըստ մերում յատկացեալ պարտաւորութեանցն միշտ ի խորհրդեան մտաց ունելով յանձն առնեմք խորախորհուրդ խնդրուածովք իմաստութեան շինողին և անարգել յառաջ ածողին՝ որ կանխագէտ տնօրէնութեամբն գիտաց երբեմն անդ ի սկիզբն հինգերրորդ դարուն գլխաւորել՝ ի ձեռս առեալ զարփին լուսաւոր զպարթեւն Իսահակ ասեմ և զՄեսրովբ՝ օժանդակ նորին յարդարեալ զՎռամշապուհ՝ թերևս առ ի զդէմ ունիլ այնու լուսաւորութեամբ ապազայ փորձութեանցն եղելոց պարսկային մոլար հրապաշտութեանց. և յայնմ հետէ ցայսր ոչ ուրեք ընթեռնումք վայելեալ և վայելչացեալ ազգի հայոց յայնպիսի երկնաւոր պարգևս՝ որ բաւական եղև զեկեղեցի, զազգ մի պահել յաշխարհախռով սասանութեանցն։ Իսկ այժմ որ ունի աչս ի գլուխս իւր կառավար կալեալ զմիտս՝ հայեսցի դիտեսցէ, տեսցէ՝ թէ քանիք են սասանութեանց, խռովութեանց հողմոց հնչմունք, այսինքն մոլար վարդապետութեանց ընձիւղք, որք ոչ ըստ պարսկայնոցն ահեղակոչ ձայնիւ և մի միայն, այլ անձայն ամե-

նեւին թագուցեալ ի սեթեւեթս բանից. թիւք նոցին բազումք. ոյր վասն օգտախնդիրք համազգեաց և եկեղեցւոյ միաբան խորհրդով խորհեսցին որչափ և գիտեն, հոգասցին որչափ և կարեն և զշահատանութիւն օգտի հայրենեաց և եկեղեցւոյ գուն գործեսցեն բազմապատկել ըստ յատուկ պարտաւորութեան անձին որչափ և կեանք իւրեանց յերկարաձգեսցի աստէն, թերևս պատրաստութիւն ինչ գործեսցի առնուլ զդէմ այնպիսի մրրկայոյզ պղտորութեանց զկնի յարուցելոց. քանզի բազում անհաստ անձինք գիտացին և գիտեն արդէն խորհել զարժանն և ի գործ դնել բարւոք, բայց միայնութիւն նոցին ձեռնունայն եթող և թողու զնոսին հանդերձ ձախող դարձուածովք: Յանձնարարութիւն բարեկարգ ժողովոյդ վասն մեր առ Սորին Սրբազնագոյն օծութիւնն առանձին գրութեամբ չպարտաւորէ զմեզ մատուցանել զմերս լիաբերան շնորհակալութիւն առ ժողովդ, բայց եթէ ազգասէր բարոյից ձեր բերք և մարդասէր սրտից ձեր ցոյցք...»:

Նամակի այս խօսքերը, թէ «համազգիների և եկեղեցու օգուտը ցանկացողները թող միաբան խորհրդով մտածեն, որքան գիտեն, և հոգան, որքան կարող են... զկնի յարուցած մրրկայոյզ պղտորութիւնների (մոլար վարդապետութիւնների) առաջն առնելու»—ենթադրել են տալիս, թէ «միաբանողների» ընտրած գործունէութեան ծրագրի մէջ թերևս մտած լինէր և քարոզիչներ պատրաստելը ժողովրդի համար: Պէտք է ասել, սակայն, որ ժո-

ղովոցի մէջ գէթ որոշ միջոցներում քարոզիչներ ուղարկելու մասին տնօրէնութիւն եղած ենք տեսնում Մայր Աթոռում դեռ 1828 թուին: Որովհետև այդ ժամանակին Ներսէս արքեպիսկոպոսը «Ծայրագոյն կառավարիչն հոգևորականաց» Երևանումն էր իբրև անդամ Արարատեան երկրի ժամանակաւոր վարչութեան, ուստի ս. Աթոռի կառավարութիւնը վերոյիշեալ թուին յունվարի 31-ին, գրում էր նորան հետևեալ «ամենախոնարհ յայտարարութիւնը». «Կառավարութիւնս պատշած դատեցաւ վասն ներկայ անձնական օգտի ի ս. Աթոռս գտանեցեալ աբեղայից՝ և ապառնի ի պիտանաւորութիւն ս. Աթոռոյս, յորոց ընտրեաց զերկոտասան վարդապետս կամ աբեղայս, որոց ցուցակն եդաւ ի սմին. այս վարդապետաց զվեցն ձերդ բարձու հրամանաւ կամք է ի շրջակայս Երևանու և դաշտին Արարատու յայսմ մեծի պահոց քարոզիչս առաքել. և զմիւս վեցն աստ ի մէջ սրբոյ Աթոռոյս շաբաթն մեկին առաջարկել առ ի քարոզել երից անգամ ի շաբաթուն. չորեքշաբթի՝ շաբաթ և կիւրակէ յերեկոյինսն: Մնացօղքն ի ս. Աթոռս՝ թուի թէ պատշաճ իցէ որք յառաջագոյն զանազան գործովք արտաքս ելեալ՝ քարոզեալք են, թողուլ զայնրս աստ. իսկ ի շրջակայս առաքել զայնպիսիս՝ որք չեն տակաւին յատեան ելեալք՝ վասն երկուց պատճառաց նախ՝ զի մի՛ յատենի բազմութեան հոգևորականաց կասկածանօք երկչոտս մնասցեն. և երկրորդ՝ այլքն՝ որ կրթեցեալքն են ընդ աշխարհականաց, և աչք սոցին անծանօթս մի՛ մնասցեն: Իսկ

շրջակայքն՝ յորս կառավարութիւնս ըստ բերման ժամանակիս պատշաճ դատէ քարոզիչս առաքել, ցուցակն եղաւ ընդ քարոզչաց ցուցակին. բաժանել և տնօրինելն կայ և Ռուսյ ի սուրբ կամս Տէրութեանդ, միայն Կառավարութիւնս սպասէ զծանօթութիւն ի Տեառնէդ առ այս, զի ըստ այնմ պատրաստեսցէ որ ինչ պիտոյքն են առ այս առաջադրութիւն:

Անդամք կառավարութեան
Յովհաննէս արքեպիսկոպոս.
Սահակ արք եպիսկոպոս.
Ստեփաննոս եպիսկոպոս:
Մանուէլ վարդապետ

«Վասն քարոզութեան յատկացեալ» այդ «Նորահաս վարդապետներից» մէկն է և «Յօհաննէս վարդապետ Աստուածատուր եպիսկոպոսի»:

Գ.

Նախընթացի շարունակութիւնն անընդհատ պահելու համար լաւ տեղում կանգ չառանք մի անցքի վերայ, որը միակ սխալն է Շահխաթունեանցի գործունէութեան մէջ, ինչքան այդ մեզ կարելի է ասել մեր ունեցած տեղեկութիւնների հիման վերայ. սխալ, որ իբրև բիծ դեռ կմնայ նորա՝ 1828 թուի գործունէութեան վերայ, մինչև որ, ինչպէս հաւատացած ենք, ժամանակը լոյս հանի նոր փաստեր, որոնց հիման վերայ կարելի լինի շատ և շատ թեթևացնել նորա պատասխանատուութիւնը պատմութեան առաջ:

Մեր խօսքը այն կեղծ գրութիւնների մասին է, որոնք 1828 թուին ուղարկուեցին Էջմիածնից կոմս Պասկեւչին Եփրեմ կաթողիկոսի, Սինօդի և միաբանութեան անունով։

Ի՞նչ էին արդեօք այդ թղթերի բովանդակութիւնները.—տարաբաղդաբար ոչ պ. Աղ. Երիցեանցին է հնար եղել պարզելու, և ոչ մեզ կայ այդ հնարը. թէ նորա և թէ մեր ձեռքում ունեցած թղթերն են միայն Պասկեւիչի շնորհակալութեան թղթի և կաթողիկոսի պատասխանի պատճէնները, սակայն և այնպէս անկարելի էլ չէ գոնէ աղօտափայլ լոյս սփռել գաղտնիքի վերայ կողմնակի փաստերով։ Կոմսի պատասխանից երևում է նախ՝ որ կաթողիկոսի, Սինօդի և Էջմիածնի վանքի միաբանութեան «բարձրապատիւ և նշանաւոր մասի (դասակարգի)» անունից շնորհաւորութիւններ են ուղղած Պասկեւիչին, ընդդէմ տաճիկների տարած յաղթութիւնների առիթով. երկրորդ՝ որ խնդրել են կուսակալից պաշտպանել իրանց ճնշող հալածանքներից։ Ի՞նչ էին այդ հալածանքներն և ումից էին կրում կաթողիկոս, Սինօդ, միաբանութիւն։

Այդ կեղծ գրութիւնները կազմել է տուել Սերովբէ վարդապետն, որի թշնամական յարաբերութիւնները դէպի Ներսէս Աշտարակեցին և մտերմական ծառայութիւններն, որ մատուցանում էր Պասկեւիչին, յայտնի են։ Ներսէս արքեպիսկոպոսին յայտնի է եղել, որ այդ կեղծ նամակների մէջ եղել են իւր դէմ զանազան զրպարտանքներ—Պասկեւիչի շատ սիրածը. ուստի նա 1829 թուի ապրիլի 29-ին

Քիշնեւից կաթողիկոսին գրած ընդարձակ նամակում Սերովբէի զանազան ժամանակ կատարած չարութիւնները և խարդախութիւնները թուելով՝ ասում է և հետևեալը. «Ժամանեցին զկնի այնորիկ և ծանօթութիւնք՝ թէ բաւականութիւն ինքեան համարելով գյօղուածս զրաբանութեանց ունկնախօսից, յօժարեալ է Նորին Պայծառափայլութիւնն զտեղի տալ ամենայն անտեղութեանց, միայն զի զանարժանս արժանաւոր լսելեաց՝ արժանացի լսել զինէն. յոյր սակս յարգելով և զառանձնագրութիւնս արեղայից գրգռելոց ի բազմափորձ Սերոբէ վարդապետէ, շնորհաւորս իմն պատասխանս գրութեամբ իւրով առ նոսա վերապատուէ զանարգսն յարեղայից անուամբ նշանաւորաց և պատուելագունից առաջնոց ի միաբանութեանց պատրիարգական Աթոռոյն»: Պարզ է ահա, որ այդ նամակները կազմած են եղել իբրև բողոք Ներսէսի դէմ և զանազան զրպարտութիւններ են պարունակել:

Բայց ի՞նչ հարկ կար Սերովբէին զրպարտութիւններ կազմել Քիշնեւում նստած Ներսէսի վրայ:

Եփրեմ կաթողիկոսը 1828 թուի հոկտեմբերի 18-ին խնդիր էր ուղարկել Թագաւոր կայսրին, որ Քիշնեւից Էջմիածին վերադարձնի Ներսէսին, որպէս զի ինքը, զառամեալ և ցաւագար հայրապետը, նորան յանձնի կաթողիկոսական գահն և ինքը հրաժարուի: Այդ միջոցին ահա Պասկեւիչից Բայազետ ուղարկուած Սերովբէն վերադառնում է Էջմիածին և իսկոյն այդ տեղ խաբէութեամբ որսում է չորս

վարդապետների և վերյիշեալ նամակները գրել տալիս, իսկ ինքը շտապում է գնալ Թիֆլիզ և Էջմիածնի գործերի դրութիւնը ներկայացնել այնպէս, որ Ներսէսի արած կարգադրութիւնները յառաջացրել են խառնաշփոթութիւն, և որ՝ ամբողջ միաբանութիւնը կարօտում է պաշտպանութեան Ներսէսի բռնակալութեան դէմ։ Պասկևիչը՝ նոյն թուականի նոյեմբերի 18-ին «Ծածուկ» զեկուցագիր ուղղելով օտար դաւանութեանց գործերի զեկավար Բլուդովին [16]) և Ներսէսին նկարագրելով ամենավատ գոյներով որպէս վնասակար թէ կաթողիկոսներին, թէ Էջմիածնին, թէ հայ ազգին և թէ տէրութեանը՝ շարում է և այն բոլորն, ինչ որ լսել էր Սերովբէից, թերևս և այն, ինչ որ կարդացել էր կեղծ նամակների մէջ. Թէ՝ Ներսէսը Քիշնև գնալու միջոցին Էջմիածնի գանձարանն և գործերի կառավարութիւնը յանձնել է Յովսէփ վարդապետին, իսկ Թիֆլիզի ընդարձակ թեմը Ալամդարեան նորընծայ վարդապետին. Թէ՝ նորա այդ կարգադրութիւնները խանգարել են Սինօդի և միաբանութեան իրաւունքներն և վանքի մէջ ընդհանուր զայրոյթ են առաջացրել. Թէ՝ իրան հասած տեղեկութիւններից իմանում է, որ Սինօդի անդամներից շատերը կամեցել են հրաժարուել պաշտօնից և հեռանալ վանքից. Թէ՝ ամենայարգելի եպիսկոպոսներից և վարդապետներից ոմանք պատրաստ են եղել ապստամբել Ներսէսի դէմ և պահանջել Յովսէփ և Յարութիւն վարդապետների պաշտօնանկութիւնն և Սինօդի անդամների նոր ընտրու-

թիւն, բայց Սերովբէ վարդապետը Բայազիտից Էջմիածին վերադարձած լինելով այդ միջոցում՝ խաղաղացրել է նորանց իւր խելացի խորհուրդներով և այժմ այդ հոգևորականութիւնն սպասում է կառավարութեան կարգադրութեան։ «Բազմավիպ» Սերովբէից գրգռուած աբեղաներն են—Զաքարիա վ. Գուլասպեան, Աբրահամ վ. Վաղարշապատցի, Ղուկաս վ. Մաստարեցի և Յովհաննէս վ. Շահրիարցի (Շահխաթունեանց)։

Այս չորս անձինքներից մինը, Զաքարիա վարդապետը Ներսէսի թշնամիներից էր և նորանից հալածուած [17]), այդ էր պատճառն, որ Պասկևիչը նորան աքսորավայրից Թիֆլիզ էր տանել տուել և ռոճիկ նշանակելով պահում էր իւր մօտ, որի մասին անբաւականութիւն է յայտնում կոմսին Եփրեմ կաթողիկոսը։ Ի նկատի առնելով այդ՝ հաւանական է երևում, որ կեղծ նամակների բուն կազմողները միայն Սերովբէն և Զաքարիան եղած լինին, իսկ մնացած երեքը մինչև անգամ նորանց իսկական բովանդակութեանն անտեղեակ լինելով՝ դէպի Զաքարիա վարդապետն ունեցած բարեկամութեան վստահութեանն են զոհ գնացել և ստորագրել են Սերովբէի պատրաստած ռուսերէն գրութիւններին։ Այսպէս ենթադրելու իրաւունք են տալիս մեզ հետևեալ փաստերը. նախ՝ որքան էլ Ղուկաս և Յովհաննէս վարդապետների մէջ կամենանք տեսնել պարզամտութիւն և անփորձութիւն, այսու ամենայնիւ չենք կարող վերագրել նորանց պարզամտութիւնով կատարած այնպիսի աններելի խարդախու-

թիւն, որպիսին է կաթողիկոսի և Սիւնհոդոսի անունով կեղծ նամակներ յօրինելը. իսկ գիտութեամբ կատարուած յանցանք ընդունելն էլ մեզ համար ենք յանցանք համարում։ Երկրորդ՝ ինչպէս վերևում տեսանք՝ Ներսէս Աշտարակցին եղել է Ճահխաթունեանցի համար բարերար և հոգևոր հայր. և նա երբէք չէր յանձն առնի նորա դէմ բողոքել և նորա կարգադրութիւնները հալածանք և հարստահարութիւն անուանել։

Ի հարկէ ընթերցողը կարող է ասել.—մի՞թէ կարելի է նորանց անգէտ համարել կատարուած կեղծիքներին, քանի որ, ինչպէս կաթողիկոսը գրում է Պասկևիչին, իրանք, այդ չորս վարդապետները լսելով որ կաթողիկոսը պատրաստուած է կոմսից խնդրել բուն նամակները, եկել խոստովանել են, թէ իրանք են «դաղտնի գրութիւնների հեղինակները», որոնք «միասին և ծածուկ... կազմել են այդ գրերը Սերովբէ վարդապետի խորհրդով»[18]): Սակայն մենք խնդրում ենք չմոռանալ դորա հետ և այն, որ կաթողիկոսի գրութեան մէջ յիշեալ վարդապետների խոստովանութիւնը հիմք է առած նամակների կեղծութիւնը միայն ցոյց տուած լինելու և ոչ կեղծելու եղանակները, մանաւանդ որ, ինչպէս և պ. Երիցեանցն է նկատում[19]), կաթողիկոսն իւր գրութեան մէջ Պասկևիչին սիրելի Սերովբէի մասին շատ զգուշաւոր լեզու է գործ ածում։ Միւս կողմից՝ չպէտք է անտես առնել և այն, որ եթէ այդ վարդապետներն իսկապէս էլ նամակների ամբողջ կազմութիւնն իրանց վերայ առած լինին,

Սերովբէին վերագրելով միայն տուած «խորհուրդը»—արել են երեւի երկիւղից, որ Սերովբէի վրէժխնդրութիւնից չէնթարկուեն խիստ պատիժների. ապա թէ ոչ՝ նորանք անընդունակ կլինէին այնպիսի ճարպիկութեամբ կեղծել, որ մինչ անգամ Պասկեւիչը համարէր կաթողիկոսի, Սինօդի և միաբանութեան «նշանաւոր» անդամների իսկական գրութիւններ:

Մեր ձեռքում կայ մի նամակ, որ գրել է «Յօհաննէս վարդապետ շահրիարցի», անկասկած Ներսէս արքեպիսկոպոսին, ըստ որում սկսում է «Բազմագութ հայր իմ ի մանկութենէ անտի իմմէ» խօսքերով, որպիսիք նա միշտ գործ է ածել Ներսէսի հետ գրով խօսելիս: Նոյնպէս Ներսէսին միայն կպատշաճեն այս խօսքերը. «Որպէս և ի զկզբանէ անտի և այսր իբրու ի խնամարկեալ ունիք ոչ սակաւ գթութեամբ և ողորմութեամբ և անբաւ բարերարեալ, թէպէտ ընդ այլով տէրամբ եմ եղեալ. զայս խոստովանիմ քրիստոնէական պարտաւորութեամբ մինչ իսպառ»: Այս նամակը կլինէր անժխտելի վկայութիւն մեր վերոգրեալ կարծիքի, եթէ միայն ունենար թուական. բայց որովհետև յայտնի չէ՝ թէ երբ է գրուած, ձգում է մեզ ընթերցողի կամքին թողնել հաւանելու կամ ոչ մեր ենթադրութեան, որ ահա յայտնում ենք այդ առիթով:
—Յովհաննէս վարդապետը սրտի դառնութիւնով ուղղել է իւր «բազմագութ հօրը» հետևեալ խօսքերը, որ յառաջ ենք բերում աշխարհաբար թարգմանութիւնով[20]. «Եթէ յանցանք էլ գործած լի-

նէի, էլի պէտք էր ձեր․ և ուրիշների գիտութեամբ պատժել և նախատել ինձ․ և ոչ թէ յանցանքս այն լինի[21]) և այնպէս շուտով փութայ վրէժ առնել հոգևորականների և աշխարհականների այնքան խուռն բազմութեան մէջ։ Դիցուք թէ ես անարգ մէկն եմ և ինձ խնայումն չկար․ թող ս․ Տաճարի և Հայրութեանդ պատուի համար փոքր մի ներողութեան արժանի համարէր ինձ և ոչ իսպառ անարգանքով ոտի տակ տար իմ այսքան բազմօրեայ ծառայութիւնը։ Ինչ և իցէ... եթէ փոքր և չնչին յանցանքի համար այսպէս է, ապա եթէ, Աստուած մի՛ արասցէ, մեծ յանցանքների մէջ սայթաքեմ, այն ժամանակ ինչ չի պատրաստուի ինձ համար... վասն որոյ յատկապէս աղաչում եմ բազմագութ Հայրութիւնիցդ, եթէ կամենում ես ձեր հայրական այնքան բարերարութիւններն արդիւնաւորել ինձ վերայ, հրաման խնդրիր Նորին բարձր սրբազնութիւնից հրաժարեցնել ինձ այս գործից, որ բաւական համարելով մինչև ցարդ արածս․ թէպէտև (մանաւանդ որ) այնքան էլ աւելի հարկաւոր մէկը չեմ։ Չեմ ասում, թէ հրաժարուելուցս յետոյ այստեղ միաբան լինիմ, այլ բնակեմ Սևանում, կամ ուր որ ձեր ողորմած հայրութիւնը պատշաճ կհամարի».....

Ե՞րբ և ի՞նչ առիթով կրած պատժի մասին է ուղղած այս բողոքը։

Պէտք է ասել, որ Շահխաթունեանցը Պօլսից վերադառնալուց յետոյ մի քանի տարի ձեռագրել է պօլսահայ վայելչագրութեան նմանութիւնով,

*իսկ յետոյ հետևել է էջմիածնականին։ Թէ 1826 թուին առ Ներսէս գրած նամակն և թէ այս, որի մասին խօսում ենք, վերաբերում են առաջին վարժութեան։ Բացի սորանից՝ նորա կեանքի մէջ չենք նկատում մի այլ կէտ, որ ենթարկէր նորան անարգանքի կամ պատժի, բացի վերոյիշեալ կեղծ նամակների դէպքից, հետևաբար՝ կարծում ենք, որ այս նամակը գրուած է 1829 թուի սկզբում և բողոք է այն պատժի դէմ, որին ենթարկուեց ինքը, նամակագիրը կաթողիկոսի հրամանով, միւս երեք ընկերակիցների հետ։*

*Այս այսպէս ընդունելով՝ մտադրութեան արժանի ենք գտնում հետևեալը.—Ներսէսին յայտնի «ծածկագրութեան» պատճառ համարուողներից մէկը Ներսէսին իրան է բողոքում իբրև իւր «բաղմադութ ծօրը», որ կաթողիկոսը պատժել և անարգել է իրան հրապարակով, այն էլ այնպիսի «փոքրը և չնչին» սխալման համար։ Անկասկած՝ ոչ թէ նա չէր համարձակի փոքր և չնչին անուանել իւր յանցանքը, եթէ Ներսէսի վերայ բողոք կամ զըրպարտութիւններ պարունակող թղթի ստորագրած լինէր, այլ և չէր համարձակի այնուհետև նամակ գրել նորան։*

*Կրկնում ենք՝ ինչ որ ասացինք վերևում, թէ երեք վարդապետներն էլ—Աբրահամ, Ղուկաս և Յովհաննէս ղոհ գնալով իրանց վստահութեան առ Զաքարիա վարդապետն՝ ստորագրել են Սերովբէի պատրաստած թղթերին, որոնց բովանդակութիւնն այլ ընդայլայ պատմուած է եղել իրանց։ Ինչ կաս-*

կած, եթէ Պասկեւիչը կատարէր Եփրեմ կաթողիկոսի ցանկութիւնն և ուղարկէր իսկական նամակներն, այն ժամանակ յիշեալ վարդապետները կարող էին պարզել խարդախութիւնը. սակայն այդ չարեց կոմսը, երևի Սերովբէի խնդրով կամ տուած բացատրութիւնով, և մէջտեղում մնում էին միայն կոմսի յաղթութիւնը շնորհաւորելու և հալածանքների դէմ պաշտպանութիւն խնդրելու խօսքերը. և նորանք կարող էին ասել թէ մենք ենք գրել, ըստ որում վերջին խնդրուածն իսկապէս ընդհանուր մտքով կարող էր իրանց հաւանածը կամ գործածածը լինել. մինչդեռ յետոյ ուրիշ կերպարանք առած լինել յայտնի չէր լինի իրանց։

Զնայելով այդ փորձութեան՝ Յովհաննէս վարդապետը դարձեալ վայելում էր Եփրեմ կաթողիկոսի և ժամանակակից Սինոդի վստահութիւնն և համարմունքը։ 1830 թուին Եփրեմի հրամանով նշանակւում է Սինոդի ատենադպրի օգնական, իբրև մի անձն, որ պիտի լինէր հաւատարիմ և գաղտնապահ։ Այդ պաշտօնը վարում է երկու տարի, և թողնում է 1831 թուի վերջում, Պօլիս ուղարկուելու համար, ինչպէս գրում էր ինքը (9 ապրիլի 1832) Մսուր Զմիւռնացուն... «Պաշտօն դրագրութեան յետ մուտ գործելոյ այսր սորին°°°. և զկնի լռութեան անցեալ ամին չէր յատկացուցեալ յիմ վերայ, որովհետև որոշեալ ունէին զիս յուղեգնացութիւն անդր ի Կ. Պօլիս, և յետ նանրանալոյ այնր խորհրդոյ ես չհաստատեցայ և չյատկացայ յիմ անուն, թէև չեմ ազատ ցարդ. այն ռոճիկ՝ զոր գիտէք, տեսաց

ցմուտ նոր տարւոյս, և յիշատակեցաւ չյիշել այնուհետև այն անուան, այլ միայն խոստմունք բաւականացուցանելոյ՝ որոյ ես չերևին հետք ինչ նըշմարանաց ցայժմ, և չէ յուսա «ևլն ևլն»...

Որովհետև թէ վերևում և թէ այստեղ յիշատակութիւն է լինում նորա Պօլիս գնալու մասին, աւելորդ չենք համարում յայտնել թէ որպիսի նպատակով էր լինելու այդ ուղևորութիւնը։ Եփրեմ կաթողիկոսի հրաժարուելուց յետոյ Յովհաննէս Կարբեցին բարձրանալով գահը՝ պատրաստում է Կ. Պօլիս ուղարկելու պատրիարքի և ազգայինների անունով օրհնութեան կոնդակներ, որով ծանուցանելով իւր ընտրութիւնն և օծումը՝ յորդորում էր նորանց հաստատ մնալ իրանց հաւատարմութեան մէջ դէպի Էջմիածինն. այլ խօսքով՝ խընդրում էր ճանաչել իւր կաթողիկոսութիւնն։ Եւ որպէս զի տարածուած շշուկներն Եփրեմի հրաժարուելու և իւր կաթողիկոսանալու մասին չկարողանային պղտորել պօլսեցիների մտքերը՝ մի յորդորական կոնդակ ևս գրել է տալիս հրաժարուած կաթողիկոսին։ Այս կոնդակները տանելու և պատրիարքին ու Պօլսի հայերին ի հպատակութիւն յորդորելու և համոզելու համար կաթողիկոսն ընտրել էր Բարսեղ արքեպիսկոպոսին և Շահխաթունեանցին. սակայն նորանց առաքելութիւնը խափանուեց Կովկասի կուսակալ բարօն Ռօզէնի անհամաձայն գտնուելու պատճառով[22]։ Այդ որոշման անյաջող ելքից յետոյ կաթողիկոսը կարգում է Յովհաննէս վարդապետին Սինօպի ան-

դամ[23]) և Աթոռի տպարանի ու մատենադարանի կառավարիչ. բայց հազիւ մի տարի անցած՝ նա ստիպուած է լինում հրաժարուել այդ պաշտօններից այն յուզման պատճառով, որ տեղի է ունենում Կարբեցու դէմ Էջմիածնում, որին մասնակցում էին ութն անձեր, որոնց թւում և ինքը, Շահխաթունեանցը:

Ի՞նչպէս և ինչի՞ց արդեօք յառաջացաւ այդ յուզմունքը: Թէև արժէր լուսաբանել այս պատմական դէպքն այնքան, որքան կներեն մեզ ժամանակն և ունեցած աղբիւրները, բայց որովհետև պէտք կլինէր շատ ընդարձակ խօսելու, որ թերևս առանձին գրուածի նիւթ լինելու յարմարաւոր է, քան ներկայիս, ղանց ենք առնում այդպիսի աշխատութիւնն, ընթերցողի ուշադրութեանը յանձնելով միայն այն լուրջ պատճառներն, որոնք իբրև Յովհաննէս Կարբեցու կաթողիկոսութեան անբաժանելի հետևանքներ տեղի տուին Մայր Աթոռի միաբանութեան մեծագոյն և լաւագոյն մասի անբաւականութեան, որի արտայայտողները լինել ընտրուած էին ութն անձեր:

Դեռ Կարբեցու գահակալութեան երկրորդ տարին էլ չէր լրացել, երբ կատարուած բազմաթիւ զեղծումների և կաթողիկոսական գահի ու կոչման նուիրականութեանն ստուերարկող խայտառակութիւնների դէմ ձայն բարձրացրեց միաբանութիւնը: Նորա նշանաւոր անդամներից մինը, Գրիգոր արքեպիսկոպոս արղուինցի, 1833 թուի մայիսի 31-ին ներկայացրեց յետագայ թուղթը.

«Վեհափառ Տեառն Յովհաննու Սրբազնակատար Կաթողիկոսի ամենայն Հայոց

Ի Գրիգոր արքեպիսկոպոսէ
կարեկցական առագչեցութիւն

Յորէ անտի հրաժարման իմոյ յԵրևանայ և մտանելոյն իմոյ ի սուրբ Աթոռս ակնկալեալ սպասէի բարեկարգութեամբ կառաւարութեան պատկանելոյն Սրբոյ Աթոռոյս, սրբագումար միաբանութեան և հայրենի ազգի. բայց այն ամենայն յուսով և լուութեամբ Տեառն իմ գտաւ անպտուղ. իսկ և առաջարկութիւն սրբազան սինօթի որ առ ձեզ ոչ եղև գլխաւորեալ, որպէս տեսանի յանցեալսն և արդէն իսկ. և ի բազմաց՝ ի հեռաւորաց և ի մերձակայից նախատակած լինելն Աթոռայնոցս ձե՛զ յայտնի են, թողեալ զբազում աստուլման Տփխիսոյ. ի միտ բերջիք և զգրութիւն Գերապատիւ Բլուտով մինիստրին հոգևորական գործոց այլասեռից որ առ կուսակալն Վրացտանի առ պարոն Բօզէնն և առ ծերունազարդ սրբազնագոյն Հայրապետն թէ խանգարեալ կառաւարութիւն Վանաց էջմիածնի և այլն. և այլ բանք բազում՝ պատճառք խանգարման և նշան վերջին ապաբախտութեան սրբոյ Աթոռոյս, միաբանութեան և ազգի մերում, զորս տեսանէի և լսէի. բայց յոչ գտանելն իմ զօգուտ իմն հասարակաց յուսակտուր եղէ իսպառ. և անճարացեալ ի մայիսի ամսոջս հարկիւ բարւոք համարեցի հրաժարիլ աստի. ոյր վասն և խնդրեցի զգործ նուիրակութեան բէզարապիոյ ի ձէնջ՝ ապա թէ ոչ՝ զի՞նչ պիտոյ էր ինձ գործ նուիրակութեան

յայսպիսի ցաւագարութեան խմուժ. և մինչ զայն ես ո՛չ կամեցայք տալ ինձ, խնդրեցի դարձեալ հրաման տալ ինձ գնալ գո՛նեայ ի ջերմուկսն Եագօրսկայու վասն բժշկութեան ձեզ յայտնի տկարութեանց իմոց՝ որոյ վասն ես հրամայեցիք ինձ՝ թէ մոռացի՛ր զայն ճանապարհ, և չկամիմ հեռանալն քո աստի։

Տէր հօգևոր՝ եթէ բարեհաճեսջիք վերահաստատել զկարգ Սրբազան Սինօթի և կապակցիլ ընդ նմա հաստատուն հանգամանօք հանգոյն Դանիէլ և Եփրեմ սրբազնագոյն Հայրապետաց և կարճել զզրութիւնս այլոց ի յաջորդաց, յառաջնորդաց և ի Նուիրակաց և յայլոց, յորոց ունին հասանիլ արդիւնք ի սուրբ Աթոռս. առ որս Սրբազնագոյն Տէրութիւն ձեր համաձայնութեամբ սրբազան սինօթի գրեսցէ ուր ուրեք և իցէ, և ընկալցի զամենայն արդիւնս եկեղեցականաց և ժողովրդականաց և մի՛ առանձնակլի, և մի՛ լիցի ասել, թէ այս իմ է և այս Աթոռոյն, այլ զամենայնն ստասցի Աթոռն և ի ձեռն սինօթի և միանգամայն մտցէ ի գանձարանն, որպէս և էր յաւուրս վերոյիշեալ Հայրապետացն, եթէ կարելի՛ իցէ ձե՛ր անձնականն ես, զի դուք գոլով գլուխ մեր ամենեցուն՝ ձե՛ր է ամենայն ինչ, վասն որոյ ամենայն ինչ մնասցէ ի գանձարանի Աթոռոյն, և անտի ելցէ ծախք և մտցէ մուտք բարձրագոյն հրամանաւ ձերով և գիտութեամբ սրբազան սինօթի, զի կորնչին բազում իրք ի զուր, որպէս և գիտէքդ, և ընդ վայր բամբասիմք ի զանազան անձանց և վիրաւորիմք ի միմեանց։ Նաև եթէ բարեհաճեսջի՛ք առնե՛լ հիւանդացեալ միաբա-

նից յատուկ պաշտպանութիւն, զի բազումք ան-
խնամ մնալով ի թէթև տկարութեան, յետոյ ան-
բուժելին դառնեն և դժուարաւ բժշկին. և միա-
պէս գութ և խնամ ունիլ առ միաբանութիւնն
և զիւրաքանչիւրսն ըստ կարգի և աստիճանի պատ-
ուել բաւականութեամբ հանդերձ, և սեղանի կար-
գադրութեան հոգ ունիլ ի մասին միաբանից և բառ-
նալ զզանազան քրթմնջիւնս. ըստ նմին կարգադրել
զպատարագիչս և զաւագերէցս անխափան լինիլ:

Նաև եթէ բարեհաճեսջիք՝ ըստ առաջին սո-
վորութեան երեք օր ուխտաւորաց անասնոց կեր-
լեք տալ բարեկարգել, զի մի՛ նոքա սատցեալ վէրս
փոխանակ բարեհամբաւելոյ, գնացեալ խրտուսցեն
զժողովուրդսն. այսքան ինչ բաւական համարելով
ինձ պարտ պարտականութեան, և այլ շահաւորս
և օգտակարագոյնս՝ ձերդ Սրբազնագոյն տէրութիւն
և սրբազան սինօդն անօրինեսցէ ամենայն բարե-
հաճութեամբ և հաստատութեամբ ի յաւիտենա-
կան պայծառութիւն սրբոյ Աթոռոյս, և ի նախա-
տակծութենէ մշտնջենաւոր ազատութիւն հոգևո-
րականաց և ժողովրդականաց ազգիս Հայոց:

Ապա եթէ յետ այսօրին կրկին ունի առանց
բարեկարգութեան մնալ սրբոյ Աթոռոյս կառաւա-
րութիւն և հետզհետէ պարտիմք կրել ողջոյն
հոգևորականքս միանգամայն յօտարաց և ի մերայ-
նոց զնախատինս անվայելուչս կոչման և եկեղեցւոյ
մերոյ, յայնմ հետէ ոչ թէ ունիմ զօգտաբերն ան-
ձին իմոյ զգործն նուիրակութեան առիթ ցուցա-
նել յաթոռոյս ելանելոյ և զջերմուկան պատճա-

ռել ի բուժումն քարոզեալ ակարութեանց իմոց և ըստ բարձու հրամանի ձեր զվերոյիշեալ ճանապարհն մոռանալ, այլ և առանց օգտի արծաթոյ նուիրական գործոյ աշխատասիրի այսու իսկական գրութեամբ իմով խոստանամ, ոչ միայն աստ՝ այլ գնալ դէպ յԱստապատ, (ուր քաջ բժիշկ ոմն լսեմ գոլ անդ) գոնեայ գտից թերևս զդիւրութիւն, եթէ ոչ բոլորովիմբ զբժշկութիւն. վասն զի մարդիկ կենդանիք գործովք զանազանին ի մեռելոց. և ակարք չխօսին ինչ բնաւ ոչ վասն ինքեանց օգուտ և ոչ հասարակաց:

Մի՛ այնպէս համարեսջիք՝ իբր յանդգնութիւն, այլ իսկապէս ջերմեռանդ սրտի հարազատ ցաւակցութիւն, և յայտայն ձերդ սրբազնագոյն տէրութեան սուրբ անուան անմահ յիշատակութիւն. և մեզ ներկայ գտանեցելոցս առ կենդանութեամբ ձերով՝ կարի քա՛ջ ուրախութիւն. ըստ այնմ՝ եթէ վշտանայ ինչ մի անդամն, վշտանան ամենայն անդամքն ընդ նմա՝ և եթէ փառաւորի ինչ մի անդամն, խնդան ամենայն անդամքն ընդ նմա:

Ուրեմն՝ ի վերջոյ յետ այսօրիկ առանց զանցառութեան և յօրէ յոր յետաձգութեան եթէ բարեհաճեսջիք բառնալ զանհամաձայնութիւն ի միջոյ և հաստատել զարժանաւոր կառաւարութիւն յաւիտենական պարծանք և շինութիւն անուան բոլոր միաբանականացս, յայնժամ ոչ պատճառեսցի դժուարութիւն անձինս, այլ ուրախացեալ ընդ հաստատեալ ճշմարիտ բարեկարգութիւն և ընդ օրինաւոր կառաւարութիւնն՝ եղից զերես իմ ի դէտ-

նի, և արկից զգլուխ իմ ընդ սուրբ ոտիւք ձերովք և Տեացից, ցնծութեամբ սրտի իմոյ և հոգւոյ աստ ի սուրբ Աթոռոջս մինչև ցել շնչոյ իմոյ՝ զայն ամենայն համարելով ինձ կեանս առողջս և ոչ ցաւագնեալս, և այլն Տեամ վասն ցանկալի կենաց ձերոյ երկարաձգութեան ջերմեռանդ աղօթարար՝

յետին միաբան Սրբոյ Աթոռոյս
խոնարհ ծառայ
արթուինցի Գրիգոր արքեպիսկոպոս»։

Հինգ ամսից յետոյ այդ նոյն եպիսկոպոսի հետ միացած և եօթը միաբաններ ուղղում են կաթողիկոսին այս բողոքը.

«Նորին Վեհափառութեան Սրբազնագոյն Կաթուղիկոսի և Հայրապետի ամենայն Հայոց Տեառն Յովհաննու և Ամպետի

Ողորմած Հովուապետի

Յայտ է ըստ բնական և քաղաքական իրաւանց և Աստուածայնոց, թէ վախճան ամենայն իշխանութեանց՝ է բարին և երջանկութիւնն հասարակաց, առանց որոյ ոչինչ իշխանութիւն է օրինաւոր և հաճոյ Աստուծոյ, ըստ որոյ և պատգամք Աստուածայինք՝ առ որս իշխանք են և առաջնորդք ժողովրդեանն Աստուծոյ՝ ահազնալուրս. որոտան. «Մխիթարեցէք մխիթարեցէք զժողովուրդ իմ, ասէ Աստուած» և թէ «ո՛հ հովիւք իսրայէլի, միթէ հովիւք զանձի՞նս արածեն, ո՞չ հովիւք զխաշինս արածեն» և այլն. և Առաքելականն թէ «Զգոյշ կացէք անձանց և ամենայն հօտիդ, յորում եդ զձեզ հոգին սուրբ տեսուչս, հովուել զժողովուրդ տեառն՝ զոր ապրե-

ցոյց արեամբ խերով» (Եսայ. խ. 1= Եզեկ. լզ. 2. Գործ. ի. 28)։ Առ այս նպատակ մտաց՝ երբ նորին սրբազնասրբութիւնն երիցագոյն Հայրապետն Եփրեմ առ կարի իմն ծերութեան և ցաւագարութեան անձին՝ ոչ ևս կարէր վարել զիշխանութիւն Հայրապետական, և կամ յաւէտ զգործս և զպաշտօնս վերաբերեալս առ աստիճանն Հայրապետական կատարել, հարկ եղև ընտրել զնոր Հայրապետ, զի ակնկալեալ բարիք հասարակացն և մանաւանդ յոգնադիմի գործք աթոռայինք և կարգաւորութիւնք բազմապատիկ իրաց՝ որք Մնային մի միայն ընտրութեան և հաստատութեան կամ օծման նորոգ Հայրապետի, անարգել յառաջասցին. և սակայն տեսաք և տեսանեմք յայտնապէս, թէ զկնի ընտրութեան ձերոյ և օծութեան ոչ միայն ինչ մի յակնկալեալ բարեաց անտի հասարակաց և ի գործոց և ի կարգաւորութեանցն ոչ գտաւ յառաջացեալ մինչև ցայսօր ժամանակի, այլև ընդհակառակն ազգի ազգի նորանոր անկարգութիւնք զհետ այնմ եկին և առաւելան օր քան զօր ի վնաս և ի նախատինս և յապերջանկութիւն Աթոռոյն և Աթոռայնոց և հասարակութեան ազգի և եկեղեցւոյ։

Քանզի ահա սինօթական կառավարութիւնն, աղբիւրն բարեաց հասարակաց՝ որ միայն էր Մնացեալ գրեթէ որպէս նշոյլ իմն բարեկարգ կառավարութեանց ի մէջ Աթոռոյն, փոխանակ առաւել ևս ըստ օրինի կարգաւորեալ լինելոյ և հաստատեալ կանոնաւոր հանգամանօք որպէս պարտն է, ընդհակառակն զկնի օծութեան Ձերոյ օր քան զօր

դատաւ խանգարեալ և անկարգացեալ այնպէս և այնչափ, զի այժմ հազիւ թէ անուն Սինօթի երևի ի միջի, և ոչ Սինօթ իսկութեամբ։ Տեսանեմք նոյնպէս՝ զպատիւ գահագլխութեան եկեղեցւոյ ի վերջին անարգութիւն խոնարհեալ, և զզօրութիւն կամ զկարողութիւն հայրապետական իշխանութեան մինչ իսպառ նուաղեալ. զգանձարան Աթոռոյն թափուր ամենևին ի գանձուց և աղքատացեալ և զկառավարութիւն նորին ամենայն մասամբ պղտորեալ և խառնափնդորեալ։ Մնացուածք պարտուց Աթոռոյն դեռ կան մնան մինչ ցայսօր առանց հատուցման, երբ ըստ չափու ամենայն հասից կամ եկամտից Աթոռոյն գոյացելոց մինչ ցայժմ չէ մարթ ասել կամ կարծել, թէ չէր հնար հատուցանել։ Տեսանեմք դարձեալ զկրծիմն բաժանութեան բազմաթիւ վիճակաց Հայոց տաճկաստանի ի հոգևորական իշխանութենէ Աթոռոյն դեռ ոչ ի բաց բարձեալ, այլ առաւել ևս հաստատեալ և արմատացեալ, և զյոլովս ի վիճակաց ևս այսոցիկ կողմանց զրեթէ ըստ ամենայն եկեղեցական և հոգևորական կարգաց և կառավարութեանց ի բազմադէմ խանգարմունս և յանկարգութիւնս շաղեալս, և դեռ ոչինչ իւիք կարգաւորեալս մինչ ցայսօր։ Զկարգս ներքին և արտաքին այլ և այլ պաշտօնատարութեանց և զրեթէ բովանդակ իրողութեանց Աթոռոյն ևս քան զևս շփոթեալս և աղաւաղեալս և յօգտակարացն և ի կարևորաց կամ յազգաշահ և ի հասարակօգուտ գործոց անտի և ի կառավարութեանց ինչ մի բնաւ ոչ յառաջացեալ կամ ըստ օրինի զարգացեալ. օրի-

նակ իմն, վարժարան Աթոռոյն գրեթէ ըստ ամենայն հանգամանաց տեսանի անխնամ և առանց ամենայն զարգացմանց և պարտուպատշաճ կարգաւորութեանց: Եւ վերջապէս տեսանեմք ևս որպէս զհասարակութիւն միաբանից Աթոռոյն ընդհանրապէս ազգի ազգի օրինակաւ զրկեալս և անբաւականս ամենևին, նոյնպէս և զհասարակութիւն գրեթէ բովանդակ ազգի մերոյ անգոհունակս զՁէնջ գլխովին և յանհնարինս տխրեալս և ըմբռնեալս ի սուգ և յողբս ընդ խրթնութիւն և ապերջանկութիւն Աթոռոյն և հայրապետութեան, և զջերմեռանդութիւնս բազմաց օր ըստ օրէ նուազեալս յԱթոռայնոց և պակասեալս:

Սրբազնագո՛յն Տէր, չեն կամք մեզ աստէն առ ժամս խնդրել կամ որոնել, թէ զի՞արդ կամ որո՞վ օրինակաւ և կամ որո՞վք արժանաւոր միջոցիւք և պարագայիւք յառաջացաւ ընտրութիւնդ Ձեր կամ ամբառնալդ յԱթոռ հայրապետութեան ամենայն Հայոց· այլ զայս և եթ խնդրեմք, թէ պատճառք այդ ամենայն վնասուց և անկարգութեանցն զկնի օծութեան Ձերոյ յառաջացելոց՝ զինչ ինչ իցեն արդեօք, և ահա որչափ և որոնեմք՝ ոչ զայլ ինչ գտանեմք, բայց եթէ զգործս կամ զհանգամանս գործոյն Ձերոյ, զորոց զսակաւս և եթ ի գլխաւորաց յառաջ բերցուք ի ներքոյ:

Նախ՝ զի վեհաստիճանութիւն Ձեր անդէն յետ օծութեան իւրոյ ցանկացեալ ինքնիշխան տիրագութեամբ վարիլ, և զամենայն ինչ ըստ կամս և ըստ հաճոյս իւր գործել, ձեռն էարկ նախ քան

զամենայն խանգարել և ունայնացուցանել մինչ խսպառ զՍինօթական կառավարութիւնն Աթոռոյն ընդդէմ սահմանադրութեան իւրոց նախորդաց և հաճութեան կամաց հասարակութեան համօրէն ազգին. ըստ որոյ այժմ գտանի այն գրեթէ ի վերջնում աստիճանի ցածութեան և անարգութեան, զուրկ զոլով յամենայն սեպհական իրաւանց իւրոց և ի կարողութեանց և ի բովանդակ իսկ հանգամանաց և պարագայից կանոնաւոր սինօթի: Եւ առ սոյն նպատակ միայն Ձեր՝ ի ժամանակի օծութեան Ձերոյ զսահմանադրեալ բնական օրինակն երդման կաթուղիկոսաց փոփոխեալ և կրճատեալ բարձմամբ հատուածոց բանիցն որ վասն սինօթին՝ չառիք յանձն երդնուլ ըստ նախորդաց Ձերոց՝ որպէս օրէն էր, և վասն պահպանելոյ զկանոնս սինօթական կառավարութեան: Եւ այսպէս վեհաստիճանութիւն Ձեր սկսաւ վարիլ և վարի մինչ ցայսօր լոկ ըստ սեպհական կամ եզական կամաց և հաճոյից իւրոց՝ առանց ինչ անսալոյ համաձայնութեան սինօթի և առանց իսկ միտ դնելոյ օրինաց ինչ և կամ կանոնաց: Եւ յայսմանէ թէ քանի՛ խանգարմունք և պղտորութիւնք յառաջացան ինքնին և այլոց ստորին կառավարութեանց և պաշտօնատարութեանց Աթոռոյն ներքոց և արտաքնոց և բարեկարգութեանց յօգունց իրողութեանց, քաջ իսկ յայտնի են ըստ ինքեան:

Երկրորդ՝ յօրէ անտի օծութեան Ձերոյ և այսր ոչ միայն չյայտնեցիք զանձն Ձեր դէ՛թ միով իւիք ընդունակ ի տնօրէնութիւնս և ի կառավարու-

թիւնս հովուապետական պարտաւորութեանց և ի խնամս իրաց հասարակաց, այլև որ առաւել ծանրն է՝ և ոչ իսկ ցուցիք զՁեզ բնաւին սիրող և կամեցող ի սրտէ օգտաւէտ բարեկարգութեանց և հասարակաօգուտ գործոց արտադրութեան կամ յառաջտուութեան. ուստի տեսանեմք զի ոչինչ գործ յօգուտ հասարակաց և կամ յօգուտ և ի բարեզարդութիւն Աթոռոյն յառաջացաւ ի Ձէնջ մինչ ցայսօր ըստ արժանւոյն, որպէս և ոչինչ փոփոխութիւնք կարգաց և կառավարութեանց, ոչինչ բարձմունք և կամ ուղղութիւնք անկարգութեանց վնասակարաց, և ոչինչ սահմանադրութիւնք նորանոր հարկաւոր և օգտաւէտ կարգաց և կանոնաց, զորս վիճակ Աթոռոյն՝ մանաւանդ զկնի փոփոխման իշխանութեան նահանգիս հայոց հարկաւ պահանջէր:

Երրորդ՝ փոխանակ հոգ յանձին բերելոյ՝ ի հատուցանել զպարտս Աթոռոյն և ի ճոխացուցանել զաղքատ գանձարան նորին, ընդհակառակն սիրեցիք դուք անդուլ հոգածութեամբ տքնիլ առաւելապէս ի մթերել զարծաթ և զոսկի, և ի բազմապատկել զինչս Ձեր միայն և զգանձս, որպէս և ի ճոխացուցանել զմարմնաւոր ազգականս Ձեր և զմերձաւոր ընտանիս: Այս միայն գոլով առաջին կամ մանաւանդ միակ նպատակ մտաց Ձերոց՝ ոչ միայն ոչինչ փոյթ եղև Ձեզ մինչ ցայսօր ցուցանել զպարզ իմն հաշիւ յաղագս ձեռամբ Ձերով ստացեալ արդեանց և գումարաց յանուն Աթոռոյն նախ քան զօծումն Ձեր և զկնի օծութեան և կամ առնել զպարտուպատշաճն կարգաւորութիւն յաղագս ե-

կանոնից Աթոռոյն և կառավարութեան զանձարանի նորին, այլև ընդհակառակն ջանահնար եղէք միշտ պէս պէս օրինակաւ և այլ և այլ անդէպ միջոցիւք յիւրաքանչիւր դէպս ի սեպհական ընչից և ի զանձուց Աթոռոյն յաւելուլ ի գանձս Ձեր՝ փոխանակ զի պարտ էր Ձեզ և զանձնական իսկ եկամուտս Ձեր ընծայել Աթոռոյն ըստ օրինակի նախորդացն Ձերոց, և այն յայսպիսում նեղ ժամանակի Աթոռոյն։

Չորրորդ՝ զկնի օծութեան Ձերոյ նոյնպէս ձեռըն արկիք անմիջապէս ոչ բարւոք խորհրդով նուաճել և ընկճել զսիրտս հաստատութեան միաբանից Աթոռոյն և նկուն առնել զամենեսին պէս պէս ահարկութեամբք և սպառնալեօք և անարգելով կամ պարտաւորելով զոմանս ի նոցանէ հրապարակաւ սնոտի պատճառանօք։ Եւ այսպէս վեհաստիճանութիւն Ձեր յայտնեաց զինքն հասարակաց անխնամակալ, և մինչ ցայսօր ես ընդ յոլով ատելութեամբ վարի տարապարտ. ուստի և ոչ տարայք փոյթ մինչ ցայսօր ժամանակի ի կարգաւորել զսեղանն հասարակաց ըստ օրինի, ի խնամարկել զհիւանդս և զցաւագարս իւրեանց հարկաւորօք, և ի լնուլ զկարեւոր պէտս չքաւորացն ի միաբանից անտի, որոյ վասն և հասարակութիւնն գրեթէ բոլորովին վշտացեալ գտանի որպէս և տեսանեմք։

Հինգերորդ՝ որպէս նախ քան զօծումն Ձեր և զկնի օծութեան զյոլովս յանարժանից և յարժանաւորաց անխտիր ամբարձիք ի պէսպէս աստի-

ճանս և ի պատիւս քահանայութեան տուադերեցութեան, խաչակրութեան և այլոց սոյնպիսեաց՝ անձնական շահախնդրութեամբ, նոյնպէս և յաստիճանիդ Ձերում յայժմիկ զյոլովս յանարժանից և յարժանաւորաց ձեռնադրեցիք յեպիսկոպոսութիւն ըստ հաճոյս առանց համաձայնութեան սինոդին, ընդդէմ օրինաց եկեղեցւոյ և կանոնաց կամ կարգադրութեան սինոդական կառավարութեան Աթոռոյն՝ որով ետուք պատճառ միանգամայն՝ զի իւրաքանչիւր ձեռնադրութիւնք Ձեր ոչ լինին կամ անցանեն առանց շփոթութեան և տարաձայնութեան։ Ըստ այսմ վարեցայք և ի տալ զխաչս լանջականս և զփիլոնս ոմանց ի վարդապետաց և յաբեղայից, որպէս և ի միջնորդութիւնս Ձեր ի վարձատրել զոմանս կայսերական ողորմութեամբք։

Վեցերորդ՝ ոչինչ փոյթ կալայք մինչ ցայսօր յաղագս կանոնաւոր կարգադրութեան արտաքին վիճակաց՝ որ յայս կոյս Կովկասու, յորոց ի յոլովս են բազմադէմ անկարգութիւնք և պակասութիւնք. զի ո՛չ գոն ի նոսա ո՛չ կարգք հոգևորական կառավարութեանց, ո՛չ բնական ուղղութիւնք եկեղեցական ծիսից և կարգաւորութեանց, և ո՛չ իսկ ամ ըստ ամէ ըստ օրինի շարունակ ստորագրութիւնք եկեղեցեաց և եկեղեցականաց, մկրտելոց և ամուսնացելոց, կենդանեաց և ննջեցելոց՝ այլովքն հանդերձ, զորոց զամենեցունց չունելով Ձեր զճիշդ տեղեկութիւն, զիա՞րդ ունիցիք տալ ծանօթութիւնս զնոցունց ըստ պարտաւորութեան Ձեր կամ կառավա-

րութեան Աթոռոյն՝ առ Նախարարութիւն հոգեւորական գործոց այլասեռ դաւանութեանց։

Եօթներորդ՝ վեհափառութիւն Ձեր ոչ հաճեցաւ յարգել ըստ արժանւոյն որպէս երիցագոյն Ձեր զսրբազնասուրբ Հայրապետն Եփրեմ, և վարիլ գէթ ի մեծամեծ իրողութիւնս խրատու և խորհրդով Նորին որպէս պարտն է, և որպէս պարտաւորութիւն Ձեր պահանջէր ըստ բարձրագոյն հրովարտակի Թագաւոր կայսերն, և ըստ առաջադրութեան Ձեզ յատուկ թղթով Նորին Գերազանցութեան կառավարչի նախարարութեան հոգեւորական գործոց Դիմիտրիս Նիկօլայեվիչին Բլուդովայ՝ գրեցելով ի 8 երորդէ յուլիսի 1831 ամի համար 1345, ի բարձրագոյն հրամանէ Նորին Կայսերական Մեծութեան· ուր ընդ հակառակն՝ եթէ վարեալ էր Ձեր ըստ օրինի և օգտեալ խրատու և խորհրդով Նորին սրբազնասրբութեան, ոչ արդեօք յառաջանային այնքան անկարգութիւնք և վնասակարութիւնք։

Ութերորդ՝ ի պատասխանագրի սինօթին Էջմիածնի ի 15 էն ամսեան հոկտեմբերի 1830 ամի, համար 137· առ հրաժարագրութիւն Նորին սրբազնասրբութեան երիցագոյն Հայրապետին, ուր ընդ այլոց բոլոր սինօթական անդամոց ստորագրեցիք և դուք ինքն, նշանակեալ գոլով յատկապէս և այս բան, թէ «նոր օծեալ կաթուղիկոսն կամ յաջորդն Ձեր ո՛վ ոք և իցէ, ոչ կարէ նստիլ ի հայրապետական աթոռն յեկեղեցւոջ ցորչափ վեհափառ օծութիւն Ձեր իցէ կենդանի, և բնակու-

թիւն Ձեր ևս մինչև ցվախճան կենաց Ձերոց եղեցի միշտ վեհարանդ այդ՝ յորում և կայք արդ»: Վեհափառութիւն Ձեր հակառակ այսոցիկ նախ՝ զկնի օծութեան Ձերոյ ի նմին իսկ աւուր անմիջապէս սկսայք նստիլ ի Հայրապետական աթոռ անդր յեկեղեցւոջ. և երկրորդ՝ յետ սակաւուց արարէք՝ զի նորին սրբազնասրբութիւնն հարկեցաւ ակամայ կամօք իջանիլ ի վեհարանէ անտի իւրով ծերութեամբն և ցաւագարութեամբն անձին, և երթալ բնակիլ ի սորին հասարակ տեղւոջ, ուր և կայ նա մինչ ցայսօր: Առաջինն համարի եղեալ մասնաւոր պատճառ, որով Հայք Տաճկաստանի կային մնացին ի բաժանման իւրեանց. իբր զի եթէ զհակառակն էր արարեալ Ձեր համաձայն նշանակութեան թղթոյ սինոդին, զոր օրինակ արար երբեմն և Ղուկաս կաթուղիկոս, ոչ նստելով յետ օծութեան իւրոյ յաթոռ Հայրապետական յերկար ժամանակ, որ յայտնի է բազմաց, հաւանական է՝ թէ անշուշտ յառաջանայր միութիւն նոցին ի գործադրել անդ և այլոց կարևոր միջոցաց և պարագայից: Իսկ երկրորդն յայտ է թէ ոչ միայն անվայել էր Ձեզ և հակառակ ևս էր իրաւանց, այլ և կարի իմն հակառակ թուեցաւ ամենեցուն որոց լուանն զայնմանէ, ընդ որ և մեծապէս իմն սկսան գժգմնիլ:

Զանց արարեալ աստէն զայլովքն, ես առաւել զայնպիսեօք՝ յորոց յառաջացան մասնաւորապէս նախատինք մեծամեծք Աթոռոյն և աթոռայնոց և հասարակութեան ազգին և Հայրապետութեան, վասա

համբաւութիւնք անուան Ձերում և անձին, և դայթակղութիւնք հասարակութեանց մերազնէից և այլասեռից՝ հեռաւորաց և մերձաւորաց, եզրակացուցանեմք զայս, թէ այսպիսի գործք և վարմունք վեհաստիճանութեան Ձերոյ յայտնի իսկ (ներեսջիք ասել Սրբազան Տէր) ոչ հայրին յօգուտ եկեղեցւոյ, և ոչ իսկ յօգուտ տէրութեան. ըստ որում ոչ արդարացուցիք դուք մինչ ցայսօր և ոչ միով իւիք զվարկ Նորին Կայսերական Մեծութեան, որ հաստատեաց զՁեզ ամենազօրմածաբար յայդմ աստիճանի և կոչման իւրովն Բարձրագոյն հրովարտակաւ, և վերապատուեալ փառաւորեաց այնչափ առաւելութեամբ որպէս ընդհանրական գլուխ համօրէն ազգին հայոց:

Վասն այսորիկ նկատելով մեր, թէ իբր Աթոռոյն օր քան զօր ի չարաչար սահման ընթանան, և Աթոռն արդէն իսկ ի վտանգի դնի, հարկ և պարտաւորութիւն անձանց համարեցաք որպէս սրտացաւ որդիք մօր մերոյ սրբոյ եկեղեցւոյ և սրբոյ Աթոռոյն Էջմիածնի, և վշտակից անդամք հասարակութեան ընդհանուր ազգի մերոյ՝ համարձակիլ և առաջի առնել զայս ամենայն Ձերում վեհաստիճանութեան առանց ամենայն մարդահաճութեան և այլոց հակառակ կրից, և գիտելով քաջ, թէ վէրք ծածկեալք անբժշկելի մնան, լաւագոյն համարեցաք բանալ և յայտնի առնել զվէրս ի գտանել զբժշկութիւն, քան թաղուցանել. և զի միանգամայն անպարտ գտցուք մեք այսուիկ յապագային առաջի հասարակութեան ազգի մերոյ, և առաջի տէրութեանն որոյ իմք հպատակք:

Ապա ըստ այսմ՝ զայլ կարևորսն թողեալ մեր առաջի առնել Ձեզ յայլում պահու և այլով թղթով ըստ բերելոյ հարկին՝ աստէն առ ժամս ի վեհաստիճանութենէ Ձերմէ ամենախոնարհաբար խնդրեմք զայսոսիկ և եթ: Նախ՝ զի վեհաստիճանութիւն Ձեր հաճեսցի ըստ համաձայնութեան մերոյ և ըղձի հասարակութեանն գրել անյապաղ ուր հարկն է և խնդրել, զի Բարձրագոյն Հրամանաւ Նորին Կայսերական Մեծութեան վերահաստատեսցի սինօթական կառավարութիւնն Աթոռոյն մերոյ սրբոյ Էջմիածնի ըստ ամենայն պարտուպատշաճ կարևոր հանգամանաց իւրոց և պարագայից՝ հանդերձ Ձերցալիւ, որով զօրասցին և թագաւորեսցին օրէնք միայն յօգուտ եկեղեցւոյ և յերջանկութիւն հասարակութեան որպէս և յօգուտ իսկ տէրութեան: Երկրորդ՝ զի յարգելով զպատիւ օրինաց և կանոնաց՝ մի՛ ևս այսուհետև հաճեսջիք բնաւ ձեռնադրել զոք եպիսկոպոս ըստ հաճոյս և ինքնօրէն, այլ խորհրդով և ընտրութեամբ և համաձայնութեամբ սինօթին և մեր իսկ, մինչ ցկանոնաւոր հաստատութիւն սինօթին Բարձրագոյն Հրամանաւ՝ քանզի բաւական են շփոթութիւնք և անկարգութիւնքն յառաջացեալ մինչ ցայսօր յանընտրաբար անխտիր ձեռնադրութենէ: Սոյնպէս ևս մի՛ հաճեսցի բնաւ վեհաստիճանութիւն ձեր միջնորդել երբէք յաղագս վարձատրելոյ զով ոք և իցէ կայսերական ողորմութեամբք՝ առանց խորհրդոյ և համաձայնութեան սինօթին և մեր: Երրորդ՝ զի վեհաստիճանութիւն Ձեր հաճեսցի ըստ օրինաց

ցուցանել սինօթին զպարզ հաշիւ վասն ամենայն արդեանց և գումարացն ստացելոց ձեռամբ Ձերով կամ ի ձեռս Ձեր հասելոց նախ քան զօծումն Ձեր յաւուրս առաջնորդութեան Ձերոյ մինչ ցայսօր ժամանակի։ Զորրորդ՝ ի վերջոյ ամենայնի առաջի առնեմք և զայս, զոր թէպէտ ծանր է յոյժ և լոկ իսկ բանիւ յիշատակելն, թող թէ գրով արձանացուցանել, այլ զի կարի յոյժ մեծացան պատճառաւ այսր անարգանք և նախատինք Աթոռոյն և աթոռայնոց և հայրապետութեան և Ձեր իսկ սրբազնասուրբ անձին, բռնադադիմք խնդրել ամենախոնարհաբար նոյնպէս՝ զի զկինն զայն զբերեալն Ձեօք ի Տփխիսայ՝ զոր ունիք ընդ խնամարկութեամբ Ձերով մինչ ցայսօր, հաճեսջիք արտաքսել անպատճառ ի տանէ անտի հօր սարկաւագի Ձերոյ և ի դեղջէն, զի հեռասցի նա ի քաղաք իւր ի Տփխիս անդր կամ ուր և ինքն կամիցի. Նոյնպէս և զսարկաւագդ ի բաց հանել ի Ձէնջ և ի միաբանութենէ Աթոռոյս գլխովին և արտաքսել. քանզի բաւականք են վնասքն և այնքան խայտառակութիւնքն յառաջացեալք ի պատճառս դոցա. և Ձերում վեհափառութեան անվայել է ամենեւին պաշտպան լինել այդպիսեաց։ Հուսկ ապա խընդրեմք ես ամենախոնարհաբար, զի վեհափառութիւն Ձեր հաճեսցի գէթ ի միջոցի երից աւուրց շնորհ առնել և տալ մեզ զպատասխանի գրաւոր, զի ըստ այնմ և մեք արասցուք զարժանն՝ ապա թէ ո՛չ և այնպէս ունիմք մեք ուր հարկն է՝ ծանուցանել։

Մնամք ճշմարիտ և կատարեալ վերապատուութեամբ ամենախոնարհ ծառայք  
Միաբանք Արարատեան Պատրիարգական  
Աթոռոյ սրբոյ Էջմիածնի  
Արք եպիսկոպոս Հայոց Սիմէօն Բղնունեանց  
Գրիգոր Արք եպիսկոպոս  
Նիկողայոս Եպիսկոպոս տէր Մարուգեանց  
Յովհաննէս վարդապետ Ղրիմեցի  
Գէորգ վարդապետ տաթևացի  
Ստեփաննոս վարդապետ Արարատեանց  
Յովհաննէս վարդապետ Շահխաթունեանց  
Մարտիրոս վարդապետ Շահազիզեանց։»

Համար ՟ 1.  
'ի Նոյեմբերի 16. 1833.  
'ի սուրբ Էջմիածին։

Թէ այս և թէ նախընթաց գրութիւնների բնագիրներն են յառաջ բերւում. իրանց տեղերում կգնենք նաև երկու բնագիր. մէկը Յովհաննէս կաթողիկոսի կուսակալին գրած նամակն[24]), որով կամեցել է բողոքաւորներին ներկայացնել իբրև անձնական և կուսակցական միտումներից դրդուած գործողներ. միւսը Թիֆլիզի առաջնորդի, Ստեփաննոս եպիսկոպոսի նամակն, որով տեղեկութիւն է տալիս կաթողիկոսին, թէ կուսակալն ինչպէս աներգաբար է ընդունել Բղնունի Սիմէօն եպիսկոպոսին և ընկերակիցներին, որոնք Թիֆլիզ են տարուել վանքեր աքսորելու համար։ Որովհետև խնդրի հետաքրքրականութիւնը պահանջում է

փոքրիշատէ ամբողջացրած ներկայացնել նորան ընթերցողներին, իսկ մենք բացի վերյիշեալներից չունինք ուրիշ թղթեր, վասնորոյ օգտւում ենք պ. Աղ. Երիցեանցի գնահատելի աշխատութիւնից[25]։

Թէպէտև կաթողիկոսը չէր կամենում, որ միաբանների բողոքը կառավարութեանը հասնի․ և բողոքարկուների հետ բանակցութիւններ սկսելով անձամբ և գրով՝ ցանկանում էր ժամանակ վաստակել, մինչև որ իրան յայտնի կարգադրութիւնը հաստատւէր, այսու ամենայնիւ տէրութիւնն իմանում է և իրան պարտաւորութիւն համարում վախճան տալ խռովութեանը։ Երևանի նահանգապետ իշխ. Վասիլ Բէհբուդեանցը լսելով այդ վրդովմունքի մասին՝ 1833 թ. դեկտեմբերի 13-ին գրեց բարօն Ռոզէնին. «Իմ «Հայոց աշխարհից» բացակայ եղած ժամանակ, Էջմիածնի վանքում նոյեմբերի կէսին անկարգութիւններ են պատահել, որ և շարունակվում են մինչև հիմա և որոց մասին, քանի մի տեղեկութիւններ հաւաքելով, պարտք եմ համարում հաղորդել ձեզ։

Ցիշեալ վանքի եպիսկոպոսներից և վարդապետներից մի քանիսը, ուրեանց մէջ խորհրդակցելուց յետոյ, Յովհաննէս կաթողիկոսին մի նամակ են մատուցել, որ բովանդակում է եղել իւր մէջ ի թիւս այլոց, որքան ես կարողացայ իմանալ, նկատողութիւններ այն մասին, թէ կաթողիկոսը չէ կատարում վանքական հասարակաց կանոնները հայրապետական իշխանութեան պատկանեալ պարտաւորութեանց մասին, թէ նա ոչնչացրել է սինօ-

դական կառավարութեան իշխանութիւնը և այդ պատճառով, իբր թէ, ոչինչ հաշիւ չէ տալիս վանքական հասոյթների մասին. վերջապէս՝ թէ Յովհաննէսը յարգանք չէ մատուցանում ծերունի Եփրեմին, և այլն: Նոքա բոլոր վերոյգրեալ առարկների մասին պահանջել են կաթողիկոսից որ վճռաբար բաւականութիւն տայ և հեռանալով այդպիսի արարքներից, վարուի որպէս հարկն է: Նամակն ստորագրող վարդապետները պատասխան չստանալուց յետոյ, կրկնել են նոյնը, բայց սորանից յետոյ էլ ոչինչ բաւարարութիւն չստանալով, մտել են նորա (կաթողիկոսի) սենեակը և ստիպողական կերպիւ բաւականացուցիչ պատասխան պահանջելով, յայտնած են որ եթէ այնուհետև էլ չեն ստանալ նորա պատասխանը, նոքա ստիպուած կլինին զեկուցանել ձեզ և այլադաւան կրօնից նախարարին, որպէս զի հասցնուի բարձրագոյն ունկնդրութեան: Այդ դէպքի ժամանակ կաթողիկոսի սենեակում ժողովուած վարդապետները իւրեանց խօսակցութեան մէջ անպատկառանօք են եղել վարվում դէպի կաթողիկոսական աստիճանը, իսկ եպիսկոպոսներից մէկը, Սիմէօնը (Բդնունեանց), մինչև անգամ ներել է իւրեան յանդգնութիւններ անել կաթողիկոսի դէմ: Քանի մի օրուանից յետոյ Յովհաննէս կաթողիկոսը նոցա պատասխան է գրել, թէ նա ամեն ժամանակ պատրաստ է հաշիւ տալ վանքի եկամուտների մասին. իսկ ինչ որ վերաբերում է վանքական գործերի սինօդական կառավարութեանը, կաթողիկոսը առաջարկել է նոցա՝ որ կազմեն այդ

մասին մի կանոնադրութիւն և ներկայացնեն իւրեան, որպէս զի ապա առաջադրուի ուր հարկն է ի Բարձրագոյն հաստատութիւն: Այսուամենայնիւ Էջմիածնի վարդապետներից մի քանիսի մէջ շփոթը մինչև հիմա չէ հանդարտվում և այս ապստամբող կուսակցութեան պարագլուխ վարդապետները, կարծեմ թէ, մտադիր են մի յեղափոխութիւն անել Էջմիածնի գործերում, և առ այս դրդուած են իւրեանց գաղտնի խորհրդակիցներից:

Կաթողիկոսի և վարդապետների մէջ եղած այս բոլոր կռիւները կատարվում են պաշտօնական գրագրութեամբ, որ սակայն նոքա ամէն կերպ թաքցնում են, որովհետև, ինչպէս ասում են, կաթողիկոսին ուղղած գրութեանց մէջ վիրաւորեցուցիչ բառեր կան:

Էջմիածնի հոգևորականութեանը իւրեանց կաթողիկոսի դէմ ոտքի կանգնացնող գլխաւոր խռովարարներն են՝ Սիմէօն եպիսկոպոս Բղնունեանցը, որ երկու ամիս առաջ վերադարձել է Ռուսաստանից, և Ղրիմցի Յովհաննէս վարդապետը, որ այս հակառակ կուսակցութեան գրագրութիւններ անողն է և ջերմեռանդութեամբ մասնակցում է այդ խռովութեան գործում: Որովհետև այսպիսի մի դէպք, որ խանգարում է ընդհանուր կարգը և շփոթ է յարուցանում կաթողիկոսի և հոգևորականութեան մէջ, կարող է վատ հետևանքներ ունենալ, վասն որոյ ես պարտք եմ համարում հաղորդել ձեզ ի տեղեկութիւն և յարակցել իմ կողմից, թէ վարդապետների հակառակ կու-

սակցութիւնը, յափշտակուելով պարսից տիրապետութեան ժամանակներում իւրեանց ունեցած խռովարար հոգւով, երբ գահընկէց էին անում կաթողիկոսներին և բանտարկում սոցա, երազում է, կարծեմ, ներկայ տիրապետութեան միջոցին ես անկարգութիւններ մտցնել Էջմիածնի վանքում և վերականգնացնել Դաւիթ և Դանիէլ կաթողիկոսների ժամանակը:

Այս բոլոր հանգամանքների մէջ Յովհաննէս կաթողիկոսը խորին լռութիւն է պահում, իսկ հակառակ կուսակցութիւնը ամէն կերպ ծածկում է իւր արածները:

Մի կողմը թողնելով կաթողիկոսի արարքները, որոց դէմ գուցէ արդարացի են բողոքում վարդապետներից ոմանք, թողնելով և այն, թէ ո՞ր աստիճանի իրաւունք ունէին նոքա անպատուել իւրեանց եկեղեցւոյ պետին, որ նոցա վրայ բարձրագոյն հրամանաւն է կացուցուած,—ես այնուամենայնիւ օգտաւէտ եմ համարում, որ ձեր վստահութիւնը վայելող մի պաշտօնէի ձեռքով այս անցքի բոլոր հանգամանքներին ճշդութեամբ հաւաստիանալուց յետոյ, այնպիսի միջոցներ գործ դնուէին, որ տէրութիւնից ճանաչուած կաթողիկոսը, առանց իւր իշխանութիւնը նուաղեցնելու էլ, սահմանափակուած լինէր իւր գործողութեանց մէջ, իսկ հոգևորականութիւնը յարգանօք նայելով դէպի իւր կաթողիկոսը, չհամարձակուէր դուրս գալ հնազանդութիւնից, ապա թէ ոչ, հաւանական է կարծել, որ Էջմիածնի միաբանութեան և նոցա պատ-

րիարքի մէջ անմիաբանութեան և խառնակութեան հողին օրէցօր զարգանալով, վանքի գործերը բոլորովին կործանման կը հասցնէ և հոգևորականութիւնը, թաւալով իւր արմատացած տգիտութեան մէջ ու հետամուտ եղած փառասիրութեան և շահասիրութեան, երբէք չի հասնիլ լուսաւորութեան այն աստիճանին, որի վրայ է հիմնուած ամէն վարչութեանց մասերի բարեկարգութիւնը»։

«Ստանալով իշխ. Բէհբուդեանի այս գրութիւնը, բարոն Ռօզէնը 1834 թուի յունվարի 18-ին ծածկաբար նամակներ գրեց թէ Յովհաննէս կաթողիկոսին և թէ նախարար Բլուդովին, և իւր թիկնապահ սպայ ռուսազգի Եաղելկովին, որ լաւ գիտէր հայերէն լեզուն, շտապեց ուղարկել Էջմիածին տեղնուտեղը ծածկաբար իմանալու գործի բոլոր եղելութիւնը։ Նախարարին բարօնը գրեց. «Հայոց աշխարհի» կառավարչապետ իշխ. Բէհբուդովը իւր նամակով, որի պատճէնը ընդ սմին կից է, տեղեկացնում է ինձ Էջմիածնի վանքում պատահած անկարգութեանց մասին։ Ձեռնարկելով տակաւին պաշտօնական քննութեան՝ այդ անկարգութեանց աղբիւրները պարզելու համար թէ այն պատճառներով, որ անցեալ տարուայ սեպտեմբերին ես ձեզ բացատրած եմ, և թէ նորա համար, որ ինչպէս իշխ. Բէհբուդովը հաղորդում է, ինքը կաթողիկոսը և նորան հակառակող Էջմիածնի հոգևորականները շատ աշխատում են ծածկել իրենց մէջ անցկացածները,—ես աւելի լաւ համարեցի Էջմիածին ուղարկել իմ թիկնապահ գվարդիայ զօրաց

շտաբս-կապիտան Եպիսկոպովին, յանձնելով նորան տանելու 5000 ռուբլի ի հաշիւ Էջմիածնի վանքին Ամենողորմածաբար նշանակուած նպաստի, որպէս զի սորանով քողարկուի այնտեղի միաբաններից Եպիսկոպովի ուղարկուելու իսկական նպատակը։ Նոյն Եպիսկոպովի ձեռքով ուղարկում եմ կաթողիկոսին մի ծածկաբար նամակ, որի մէջ գրելով նորան յիշեալ վանքում պատահած հանգամանքների մասին, խնդրում եմ որ ամեն ինչ ինքն ինձ հաղորդէ։ Սորանով ես ուզում եմ ցոյց տալ կաթողիկոսին՝ մի կողմից վստահութիւն յատկապէս դէպի իւր անձը, իսկ միւս կողմից, որ տէրութիւնը պատրաստ է աջակցել նորան վերականգնացնելու նորա ստորադրեալ հոգևորականութեան մէջ կարգ և յարգանք դէպի նորա իշխանութիւնը։

«Կաթողիկոսին իմ ուղարկած տեղեկութեանց մէջ ես չպարզեցի թէ ովքեր են այդպիսի անդիրեկան անցքի մէջ մեղաւորները և գլխաւոր խռովարարները, որովհետև ուզեցայ իմանալ, թէ արդեօք նա ինքն էլ նո՞յն անձանց վրայ մատնացոյց կ՚անի, որոց մասին յիշում է իշխ. Բէհբուդովը, թէ ոչ։ Այն ինչ իմ թիկնապահ սպայ Եպիսկոպովին բերանացի պատուիրել եմ, որ Էջմիածնի վանքում եղած ժամանակ ծածկաբար և որքան կարելի է հանգամանքօրէն տեղեկանայ թէ այնտեղ ի՞նչ և ինչ է անցել, և վերադարձած միջոցին ինձ հաղորդի։ Իսկ իշխ. Բէհբուդովին ես հրամանագրեցի որ արթուն հսկողութիւն ունենայ Էջմիածնի բոլոր հոգևորականութեան վրայ, և եթէ յայտ-

նի կերպիւ շփոթմներ ծագեն ու կաթողիկոսը դիմէ նորան օգնութիւն խնդրելու, նա իսկոյն վարչական միջոցներ գործ դնի հոգեւորականութեան ինքնակամութիւնը զսպելու ու նոցա կարգի բերելու և կաթողիկոսին հպատակացնելու համար»։

«Բարօն Ռօզէնի Թիֆլիսապահ Նաղիկովը դրամ տանելու պատրուակաւ գնաց էջմիածին, ուր մի շաբաթից աւել մնալուց յետոյ կաթողիկոսի պատասխանագրով հանդերձ վերադարձաւ Թիֆլիզ և 1834 թուի փետրվարի 7ին հաղորդեց բարօնին հետեւեալը. «Համաձայն ձեր կամաց՝ ուղարկուած լինելով էջմիածին այն անկարգութեանց մանրամասն պատճառըն իմանալու, որ տեղի են ունեցել այնտեղ անցեալ տարուայ նոյեմբերի կէսին, ես պատիւ ունիմ ծանուցանել, որ Յովհաննէս կաթողիկոսը, բացի այն բոլորից, ինչ որ այժմ յայտնում է իւր պատասխանագրի մէջ առ ձեզ, յանձնեց ինձ նաև բերանացի հաղորդել ձեզ, որ վարդապետների մէջ պատահած անկարգութեանց պատճառը ոչ այլ ինչ է, եթէ ոչ անձնական կիրք և թշնամութիւն դէպի իւրեան՝ շնորհիւ Ներսէս արք եպիսկոպոսի խորամանկութեանց, և թէ նա,—կաթողիկոսը մտադիր է ի խրատ այլոց խիստ պատժի ենթարկել Սիմէօն եպիսկոպոսին և Մարտիրոս վարդապետին (Շահազիզեանց)։ Իսկ այն թուղթը ձեզ հասցնելու մասին, որ մատուցած են նորան անբաւականները, թէև ես խնդրեցի կաթողիկոսից ասելով՝ թէ դուք ցանկանում էք գիտենալ անցքի բոլոր մանրամասնութիւնները և յայտնեցի նաև որ դուք պատ-

րաստ էք ընկավարուիլ այս դէպքում Նորա խորհուրդներով, բայց կաթողիկոսը չյօժարեց տալ, երևի այն պատճառով, որ յիշեալ թղթի մէջ նորան շատ անպատուող բաներ կան։

«Իմ Էջմիածին եղած ժամանակ ես տեղեկացայ, որ յիշեալ թղթում ի թիւս այլոց ասուած է եղել, թէ վարդապետները այլևս զանց են առնում Նկարագրել թէ նա, Յովհաննէսը որպիսի եղանակաւ հասաւ կաթողիկոսական աստիճանին, այլ միայն դարձնում են Նորա ուշադրութիւնը այդ բանի վրայ և յիշեցնում են հետևեալ հանգամանքները՝ նախ այն կնոջ մասին, որին բերած է նա Թիֆլիզից և որը ապօրինաւոր յարաբերութեանց մէջ է գտնուել Աշտարակցի Գէորգ սարկաւագի հետ, որ կաթողիկոսի մերձակայ անձն է. ապա այն մասին, որ նա (Յովհաննէսը) յարգանքով չէ վարվում Ծերունի Եփրեմ կաթողիկոսի հետ և հաշիւ չէ տալիս Վրաստանի թեմը կառավարելու ժամանակամիջոցի վերաբերութեամբ. յետոյ Էջմիածնի Սինօդի իրաւունքների մասին, որից այժմ սա զրկուած է, նաև անկարգ վարուեցողութեան մասին Էջմիածնի վարժարանի և տպարանի վերաբերութեամբ և, վերջապէս, վարդապետներին վատ կերակրելու մասին։ Այդ թուղթն ստորագրած էին ութ հոգևորականք, այն է՝ Սինօդի երեք անդամներ՝ Գրիգոր եպիսկոպոսը, Արարատեան Ստեփան վարդապետը և Շահխաթունեան Յովհաննէս վարդապետը, և բացի նոցա՝ Սիմէօն եպիսկոպոսը, Նիկողայոս եպիսկոպոսը, և Ղրիմցի Յովհաննէս, Մար-

տիրոս և Գէորգ վարդապետները։ Յիշեալ Թուղթը շարադրած է Ղրիմցի Յովհաննէս վարդապետը։ Ասում են թէ բոլոր վերյիշեալ անձինքը երդուել են՝ չյետ կանգնել այս գործից, այլ իշխանութեան ձեռքով հասցնել ի տեղեկութիւն Թագաւոր Կայսեր։ Սակայն, պէտք է կարծել, որ նոքա հասկացան իմ Էջմիածին գնալուս նպատակը, որովհետև Սինօդի երեք անդամները՝ Գրիգոր եպիսկոպոսը և Ստեփան ու Յովհաննէս վարդապետները եկան կաթողիկոսի մօտ ներողութիւն խնդրելու իւրեանց արարքների մասին և կաթողիկոսը ներեց նոցա ու նոքա առաջուան պէս դարձեալ մասնակցեցին Սինօդում, որից ինքեանք էին կամովին հրաժարուել։

«Ղրիմցի վարդապետը պնդում է թէ նա այս բոլորը գործում է աշկարայ և իբր թէ իշխանութեան հրամանաւ, բայց չէ ուզում ասել թէ ո՛ր իշխանութիւնից է ստացած այդպիսի հրաման։ Իսկ որ Սիմէօն եպիսկոպոսը յայտնի կերպիւ չէ յարգում Յովհաննէս կաթողիկոսին—այդ ամենքին յայտնի է ոչ միայն վանքում, այլ և Երևանում։ Սորա ապացոյց կարող է համարուել և հետևեալ անցքը։ Սիմէօն եպիսկոպոսը, առանց կաթողիկոսի գիտութեան, մի վարդապետ է ուղարկել Բօրչալու՝ Սանահնի ձորը կամ Ուզունլար, որ այնտեղից սրբոց մասունքներ բերեն Ս. Գայիանէի եկեղեցին։ Կաթողիկոսն այս մասին ոչինչ տեղեկութիւն չունէր. մի քանի ժամանակից յետոյ երբ իմացաւ, իսկոյն անօրինեց, որ յիշեալ եկեղեցին փակուի և կնքուի։

«Սանփան վարդապետը յայտնեց ինձ, թէ ինքը և նոյնպէս միւսները, մեղաւոր են համարում իւրեանց միայն այն՝ բանում, որ նոքա նամակի մէջ յիշած են կաթողիկոսի ընտրութեան եղանակի մասին, իսկ մնացած բոլորը նա պարտաւոր է եղել բացատրել, որովհետև, իբր թէ, կաթողիկոսն ինքն էր յանձնել նորան վանքին վերաբերեալ բոլոր գործերը քննելու։ «Ի վերջոյ պատիւ ունիմ յարակցել, որ իմ էջմիածնից դուրս գալու միջոցին այնտեղ ամէն բան խաղաղ էր, և ես, համաձայն ձեր տուած բերանացի պատուէրին, հաղորդեցի Եփրեմ կաթողիկոսին ձեր խնդիրքը և ցանկութիւնը, որ նա վայելելով էջմիածնի հոգևորականութեան ընդհանուր յարգանքը, աշխատի իւր հովուապետական խրատներով վերջ տալ միաբանութեան մէջ եղած բոլոր շփոթներին ու այսուհետև էլ չթոյլ տալ այդ հոգևորականութեանը առ կաթողիկոսն ունենալիք պէտք եղած յարգանքը խանգարելու։ Եփրեմը խոստացաւ գործ դնել առ այդ իւր աջակցութիւնը, բայց նորա խօսակցութիւնից շատ պարզ երևում էր, որ նա ինքն էլ բաւական չէ Յովհաննէս կաթողիկոսից։

Յետ սորա պարտք եմ համարում հաղորդել ձեզ, որ թէ էջմիածնում և թէ նորա շրջակայքում ժողովրդի մէջ Թիֆլիզից հասած մի լուր է արծարծուել, թէ Ներսէս արքեպիսկոպոսը շուտով պիտի գայ էջմիածին, որին այդ պատճառով և սպասում են այնտեղ»։

կաթողիկոսի պատասխանագիրն, որի մասին յիշեցինք վերեւում, այս է. «Ձերդ բարձր գերագանցութիւն

· · · · · · · · · · ալեր (կաւալեր) [26]:

Զխորհրդաւոր գրութիւն ձեր ի 18. Յունուարի այսր ամի ստացեալ ի 26. սոյն ամսոյ, փութամք այսու պատաս..... բարձր գերագանցութեան ձերում թէ ամենայն տեղեկութիւնք գծագրեալք յառանձին ցուցակի ձերում որ ընդ յիշեալ... բարձր գերագանցութեան ձերոյ, ստոյգ են ըստ ամենայնի առանց ինչ զանազանութեան: Անձինք որք անկարգութեամբք իւրեանց ածին ի մոլորութիւն և զայլս ի միաբանութենէն մերմէ են այսոքիկ. 1. Սիմէօն Արք-եպիսկոպոսն Բղնունի, որ բարեկամ Արք-եպ..... Ներսէսի, և միանգամայն չկամ մեզ, ի գալն իւրում ի Նախիջեւանայ այսր, խոյն դասեալ ընդ չարախոհս, ինքն ևս սկսաւ որսալ զկամակիցս:

2. Արք-եպիսկոպոսն Գրիգոր Արթունինցի, մինն ի պատուելի անդամոց Սինհոդոսիս էջմիածնի, ժխտեալ ըստ ամենայնի երդմանն հաւատարմութեան, ի չարութիւն վարեալ զվարկ մեր առ նա, պատճառ եղև այսպիսի անկարգութեանց, ինքնագլուխ հրաժարեալ յանդամակցութենէ Սինոդհոսի առանց իրիք պատճառանաց, առ որ հրաւիրեաց և զայլ եղբարս:

3. Եպիսկոպոսն Նիկողայոս Տէր-Մարուքեան նոյնպէս Ներսեսեան և արեղայ Սիմէօն եպիսկոպոսին Բղնունեան, այնու առաւել վշտացոյց զմեզ հետեւամբն իւրով այլոց միաբանելոյն անկարգութեանց,

զի չէ ընդ երկար, զի մեք ձեռնադրեալ զնա եպիսկոպոս եղաք ի վերայ նորա և զերդումն ըստ մերում սովորութեան, չի ելանել ի սահմանաց իւրոցն հաւատարմութեանց:

4. Յոհաննէս վարդապետն Ղրիմցի մինն ի գլխաւոր անդամոցն անկարգութեանց—է գլխաւոր պատճառ այսոցիկ անկարգութեանց, առ որ առաջացան և.... զրդէր զմիաբանութիւն մեր հաւատեցուցանելով.... և Բարձր Գերազանցութիւն Ձեր տեղի (տուեալ) ձեռնատու լինիք գործողութեանց նորին.... յիմարութիւն իսկ է հաւատալ. որոյ.... բոյս բարուց քաջ գիտէ և բարձր.... ձեր. Մխեալ ի յառաջին ն.... արտաքսելոյ մեր զնա յանդամ.... իբրև զնեն.... որ....րեաց զհաւատարմութիւն ծերունի կաթուղիկոսին Եփրեմի գողանալով զատո- ագրութիւն նորին և զկնիքն հայրապետական. սակս որոյ մինչև ցարդ գտանի ընդ ապաշխարանօք:

5. Գէորգ վարդապետն Տաթևացի, որ է մի- ւմ յաւուր մոռացեալ զամենայն բարերարութիւնըս մեր որ առ նա.... վերջին անգամ առ չկատարելոյ զխնդիր նորա վասն ձեռնադրելոյ զնա եպիսկոպոս, նոյնպէս յարեցաւ ի.... անկարգ չարախոհայն, ըստ ամենայնի չհասկանալով թէ զի՞նչ խնդրեն նոքա և զի՞նչ ինքն:

6. Ստեփաննոս վարդապետն Արարատեան, մինն ի սինօթականաց մերոց, այր ինքնահաճ, և անձնապաշտ և միանգամայն դիւրահակ ի չարիս, որ մղեալ յինքնասէր սնապանձութենէ յայսմ երկրասարդութեան իւրում առանց ինչ ընտրութեան

իւրոցն արժանաւորութեանց, ձգտէր հասանել յաստիճան եպիսկոպոսութեան, որ տուեալ լինի միմիայն արժանաւոր անձանց. և ոչ կարացեալ գտանել զայն ըստ իւրոցն հաճոյից, իսկոյն ինքնակամ հրաժարեալ յանդամակցութենէ սինօթոսիս մերոյ, գնաց հեղինակեցաւ հասարակութեանն չարախօսից. առ որ ըստ կարծեաց իւրոց իբրև զրագէտ միաբանեալ ընդ Յոհաննէս վարդապետի ղրիմեցւոյ, սկսաւ թիւնաւորել զգրութիւնս հղեալս առ մեզ ի միաբանութենէ նոցին, աններելի իմն և ըստ ամենայնի վշտացուցիչ ոճովք ասութեանց։

7. Յոհաննէս վարդապետն Շահխաթունեանց, .... մինն յանդամոց սրբազան սինօթոսիս, աբեղայն (Գրիգոր).... եպիսկոպոսին. առանց իրիք պատճառանաց լքեալ զգործ իւրոց պաշտօնէից կուրօրէն հետևեցաւ կամաց նոցա։ Վերջին երկոքինքս այսքիկ այնու առաւել մեղաւոր համարիմք.... առաջինըն գոլով.... մակցութենէ սինօթոսիս.... սրբոյ Աթոռոյս. և միուսն կառավարիչ և կարգադրիչ տպարանի և գրքատան մերոյ. փոխանակ լաւացուցանելոյ զկարգաւորութիւն յանձնեալ նոցա գործոյն, սկսան թէ ըստ ծուլութեան իւրեանց. և թէ ըստ խորամանկ չկամութեան խանգարել և զկարգն այն, որ յառաջ քան զնոսա գտանիւր անդ. և ապա ինքնակամ հրաժարեալ ի պաշտամանց միաբանեցան չարախոհացն և սկսան զնորոգ կարգ պահանջել ի մէնջ։

8. Մարտիրոս վարդապետն աշտարակեցի բարեկամ և ազգական Ներսէսի և ըստ ամենայնի ան

հանգիստ բնութեան, որոյ գյատկութեանցն հոգոյն և բարուցն լիակատար տեղեկութիւնքն են ի կանցիլարայեն բարձր գերագանցութեան ձերոյ ի համապատասխանութեանց անտի ի մէջ մեր և պարոն Փրոմաշալ գրաֆ Պասքևիչեն Երևանու և իշխանին Վարշաւու որ ի մասին վարդապետին այսորիկ։

Ըստ նկատման մերում այսոցիկ վերայ յիշեալ պարագայից չեք ինչ նպատակ ցանկութեան այսոցիկ չարախօս ուխտ անցանց միաբանութեան մերոյ, եթէ ոչ միմիայն անկարգութիւն և անհնազանդութիւն ընդդէմ գլխոյ իւրեանց և իշխանութեանն կարգելոյ ի վերայ հրովարտագաւ Նորին Կայսերական Մեծութեան։

Մինչև այժմ լռութեան տայաք մեք. և ոչ ծանուցաք բարձր գերագանցութեան ձերում, սպասելով զի վերոյ յիշեալ անձինքն ստացեալ զիւրեանցըն ներկայութիւն խելաց, դարձին ի թիւր ճանապարհէ անտի ընդ որ ընթանանն. բայց այժմ որովհետև բարձր գերագանցութիւն ձեր յառաջագոյն ևս լուեալք էք զայսմ ամենայնէ, վասնորոյ մեք ի մերոյս կողմանէ զեղանակն ածելոյն գնոսա ի կատարեալ հնազանդութիւն թողումք ի կամս բարձր գերագանցութեան ձերոյ»։

յունվարի 28
1834 ամի։

Ստանալով կաթողիկոսի նամակը՝ կուսակալը հրամայում է նահանգապետ իշխ. Բէհբութեանցին

հսկել Էջմիածնի հոգևորականների գործողութիւնների վերայ և հարկաւոր դէպքում աջակցութիւն ցոյց տալ կաթողիկոսին. վերջինիցն էլ պահանջում է հաղորդել, թէ յանցաւոր համարուած միաբաններից որո՞նց և ի՞նչ տեսակ պատիժների կը կամենայ ենթարկել. յարակցելով ընդ նմին, որ իւր կարծիքով՝ գլխաւոր խառնակիչներին պէտք է բոլորովին հեռացնել Էջմիածնից: Այս ծածկագրով յայտնելով այս ամենի մասին նախարար Բլուդովին և հիմք առնելով այն՝ որ Յովհաննէս կաթողիկոսը Եպիսկոպոսին բերանացի ասած է եղել, թէ խառնակութիւնները յառաջ են գալիս Ներսէս արք-եպիսկոպոսի դրդմամբ՝ կուսակալը հարկաւոր է համարում բաւական երկար բացատրութիւն տալ այս մասին:

Կարծելով՝ որ եթէ ոչ ինքը Ներսէսն անձամբ՝ անկասկած նորա կուսակից հայերի նենգութիւններն և խորամանկութիւններն են խառնակութիւնների դրդիչ պատճառներ, ասում է «Ես դեռ անցեալ տարուայ սեպտեմբերի 23-ին գրել եմ ձեզ, որ Վրաստանում և Անդրկովկասեան մնացած գաւառներում Յովհաննէս կաթողիկոսից անբաւական եղող հայոց թիւը քիչ չէ: Թիֆլիզը, որ Վրաստանում նոցա գլխաւոր բնակատեղին լինելով, միևնոյն ժամանակ բովանդակում է իւր մէջ և ամենանշանաւոր հայ գերդաստանները՝ իշխանաց, ազնուականաց և քաղաքացոց, որոնք ըստ իւրեանց ունեւորութեան ազդեցութիւն ունին երկրիս ուրիշ տեղերում բնակուող հայոց գործերի վրայ: Եւ

ահա այստեղ, Թիֆլիզում հայք անձնուէր են Ներսէս արքեպիսկոպոսին. մեր երկու մայրաքաղաքների (Պետերբուրգի և Մոսկուայի) մէջ էլ նմանապէս հայոց մեծամասնութիւնը հաւատարիմ է նորան: Ներսէսի այդ կուսակիցներից է՝ որ յառաջ են գալիս զանազան հնարներ, որ համապատասխան են նորա փառասիրական ձգտումներին և ստորացնում են Յովհաննէս կաթողիկոսի արժանաւորութիւնը. որովհետև առաջուայ օրինակներից յայտնի է, որ Ներսէսին հէնց Բեսարաբիայ հեռացնելու ժամանակն էլ այստեղի հայք դարձեալ երազում էին, թէ նոցա զանազան ջանքերն առանց իւրեանց ցանկալի յաջողութեան չեն մնալ և թէ Յովհաննէսին կը փոխարինէ Ներսէսը, որին ամենքեանք թէ՛ այստեղ և թէ ամենուրեք անձնուէր են և հաւատարիմ իսկապէս այն պատճառով, որ նա կարողացել է թելադրել սոցա այն միտքը, թէ նորա ղեկավարութեամբ հայոց ազգը կարող է ոչ միայն ծաղկել, այլև բարձրանալ (վերականգնել): Այս միտքը, որ նորա կուսակիցները արծարծած են մինչև անգամ հասարակ ժողովրդի մէջ, կըստիպի հաւատալ Էջմիածնում նոցա ձեռքով, կարծում եմ, տարածած այն լուրին, թէ Ներսէսը շատ շուտով պիտի վերադառնայ Էջմիածին: Այս լուրը երևի թէ ճշմարիտ չէ . բայց այնուամենայնիւ ապացուցանում է, թէ ո՛ր աստիճանի հայոց խորամանկութիւնը օժանդակում է վառ պահել ժողովրդի մէջ այդ բարձրաստիճան հոգևորականի յիշատակը:

«Այնուհետև դառնալով յատկապէս Ներսէսին

և չշօշափելով նորա անձնական արժանաւորութիւնները ըստ իւր հոգևոր պաշտօնավարութեան, ես ինձ պարտք եմ համարում բացատրել, որ իմ նախորդ կոմս Պասկևիչի ժամանակուայ գործերից տեսնելով, թէ մինչև որ աստիճանին էին հասնում Ներսէսի փառասիրական ձգտումները և նմանապէս նորա բուռն ցանկութիւնները՝ խառնուիլ աշխարհական և մինչև անգամ քաղաքական գործերում, որպէս և նորա առանձին ճարպիկութիւնը՝ ըստ իւր հաճոյից ուղղութիւն տալ հայոց մտքերին,— ես կարծում եմ, որ հայոց ներկայ դրութեամբ, երբ նոքա դեռ յետ չեն սովորել իւրեանց կաթողիկոսին ընդհանուր հայոց ազգի գլուխ համարելը, հազիւ թէ տէրութեան համար օգտաւէտ լինի Ներսէս արքեպիսկոպոսին կաթողիկոսական աստիճանի մէջ հաստատելը, եթէ մինչև անգամ առայժմ բարեպատեհ առիթ ներկայանայ։

«Նմանապէս վնասակար եմ համարում, որ Ներսէսը Անդրկովկասում թեմակալ առաջնորդութիւն կամ որ և է ուրիշ հոգևոր պաշտօն ստանայ, որովհետև դորանով անպատճառ պիտի զօրանան Ցովհաննէսի դէմ լարուած խարդաւանութիւններն և խորամանկութիւնները։ Այն ինչ Ցովհաննէսը, չնայելով նորան վերապրուող պախարակող գործերին, որոնցից գլխաւորը, ինչպէս ես կարծում եմ, է շահասիրութիւնը,—իւր պարզութեամբ և մանաւանդ թէ արտաքուստ ցոյց տուած իւր պատրաստակամութեամբ՝ տէրութեան նպատակներին համապատասխան գործելու,—մեզ աւե-

լի օգտաւէտ կարող է լինել կաթողիկոսական աստիճանում, քան թէ լինէր այդ Ներսէս արքեպիսկոպոսը։ Այդ պատճառով, որպէս զի ընդ միշտ վերջ տալ հայոց այդ խարդաւանութեանց և, այսպէս ասած՝ արմատախիլ անել նոցա յոյսերը, ես հարկաւոր կրհամարէի սաստկապէս նոցա զգացնել թէ այն այնձը, որ մի անգամ Բարձրագոյն իշխանութեամբ հաստատուած է կաթողիկոսական աստիճանում, չէ կարող ենթարկուիլ ոչ հայոց խարդաւանութեանց և ոչ էջմիածնական հոգևորականութեան բռնաբարութեանը, ինչպէս որ այդ եղել է Պարսից տիրապետութեան ժամանակ, և ուրեմն այլ կերպ չէ կարող փոխանակուիլ նա, ուրիշ անձնաւորութեամբ, եթէ միայն իւր գործերով Թագաւոր Կայսեր ցասուցթին չարժանանայ, կամ եթէ որ և իցէ նըշանաւոր պատճառներ չլինին։ Այս բանը (ազդելը կամ զգացնելը հայ ժողովրդին), ըստ իմ կարծեաց, բարեպատեհ և յարմար է անել այժմ, երբ պիտի հրատարակուի և գործ դնուի հայոց եկեղեցւոյ կառավարութեան «Պօլօժէնիան», իսկ մինչև այդ՝ հարկ է ակնյայտնի կերպիւ պահպանել Յովհաննէսի իշխանութիւնը հայոց հոգևորականութեան վրայ, բայց գաղտնի կերպիւ սանձահարել սորա շահասիրութիւնը, թոյլ տալով սակայն, որ ծածուկ արծարծուի այն միտքը, թէ ոչինչ պաշտպանութիւն և ոչինչ խարդաւանութիւն չին կարող օգնել և հասցնել այն տեղը, որ մնափառ Ներսէսը երբ և իցէ կարող լինի վերադառնալ Անդրկովկասեան աշխարհը»։

Նախարարը նոյն 1834 թուի Մարտի 12-ին պատասխանելով բարօն Ռոզէնին՝ ասում է.... «Ես էլ կարծում եմ թէ ճշմարիտ որ յիշեալ խռովութիւնները կարող էին ծագիլ եթէ ոչ իսկ Ներսէս արքեպիսկոպոսից, գոնէ նորա կուսակից Հայոց կողմից: Նոցա տարածած լուրերը թէ Ներսէսը պիտի վերադառնայ էջմիածին և կաթողիկոսական գահը փոխանորդէ, որ սակայն ոչինչ հիմք չունին (անճիշդ են), անկասկած, կարող էին առիթ լինել էջմիածնի հոգևորականութեան անհանգստութեանց, որոց մեծամասնութիւնը, ինչպէս հաղորդում է ձեր թիկնապահը, շատ անբաւական է կաթողիկոսից: Բացի այդ, ես կարծում եմ թէ Յովհաննէսի արարմունքներն էլ նմանապէս տեղիք են տուել պատահած անկարգութեանցը: Երևի ինքն էլ համոզուած է այդ բանին և աւելի դորա համար, քան թէ իւրեան հասցրած վիրաւորանքը ծածկելու մտքով է, որ նա չէ յանձնել Եադիկովին Սինօդի անդամների ստորագրած թուղթը, որի մէջ, հաւանական է կարծել, մանրամասն նկարագրուած պիտի լինէին նորա անկանոն վարմունքները: Աւելորդ չի լինիլ, կարծում եմ, այս մասին իւրեան (Յովհաննէսին) զգացնել տալ, համոզելով նորան՝ որ առհասարակ աւելի կանոնաւոր և իւր ստանձնած վսեմ պաշտօնին վայել ընթանայ, հեռու կենայ շահասիրութիւնից և աշխատէ ձեռք բերել Եփրեմի սէրը—այս ծերունւոյ, որին այնքան յարգում են ամենայն հայք և որ, ինչպէս երևում է Եադիկովի զեկուցումից, նմանապէս անբաւական է

*Ցովհաննէսից։ Այսուամենայնիւ, ես ձեզ հետ բոլորովին համաձայն եմ, որ հարկ է հասկացնել Հայոց, թէ այն անձը, որ Բարձրագոյն իշխանութեամբ մի անգամ արդէն հաստատուած է կաթողիկոսական աստիճանում, այլ եւս չէ կարող փոխարինուել ուրիշ անձնաւորութեամբ, մինչև որ իւր արարքներով չենթարկուի Թագաւոր Կայսեր դայրդյթին»։*

*Հէնց այն միջոցում, երբ բարօն Ռօզէնն և Նախարարն իրանց բանակցութիւնների մէջ կարևոր էին գտնում պաշտպանել բարձրագոյն իշխանութեամբ հաստատուած կաթողիկոսին՝ Էջմիածնի բողոքաւոր միաբանների մի մասը[27]) նոր փորձ արեց։ Իմացած լինելով՝ որ կաթողիկոսն իրանց վերայ ծածուկ գանգատ է գրել կուսակալին, իսկ իրանց պահանջներն էլ ուշադրութեան չեն առնուում՝ 1834 թուի մարտի 20 ուղարկում են բարօն Ռօզէնին իրանց բողոքի պատճէնը մի գրութեան հետ, որով գանգատելով կաթողիկոսի վերայ՝ խնդրում էին թէ իրանց բողոքագրի պատճէնն ուղարկել օտար դաւանութիւնների նախարարին և թէ Էջմիածին ուղարկել յատուկ քննիչ մի հաւատարիմ մարդ և նորա հետ էլ երկու այնպիսի հայեր, որոնք թէ պետական լեզուին և օրէնքներին և թէ հայ եկեղեցու օրէնքներին և սովորութիւններին ու Աթոռի գործերին փոքրիշատէ տեղեակ լինեին։ «Աթոռի վիճակը, գրում էին նորանք, պահանջում է այս կարգադրութիւնը, մանաւանդ թէ կարօտում է Ն. Կ. Մեծութեան յատուկ մտա-*

*գրութեան»։ Մի ամիս սպասելով և պատասխան չստանալով՝ նորանք դարձեալ ուղղում են կուսակալին ապրիլի 26-ին մի գրութիւն, որով յայտնելով թէ՝ թէև կաթողիկոսն հաշտուել է իրանց հետ, բայց իրանք «յայտնի տեսնելով, թէ քանի որ Աթոռի կառավարութեան ու գործերի մէջ անկարգութիւններ են տիրում և նոցա վնասակար հետևանքներն օրէցօր աւելանում են ու չեն պակասում և չէ կարող ընդհանրապէս խաղաղութիւնը կատարելութեամբ արմատանալ ու անկարելի է վերացնել անկարգութիւնները առանց յարմարուելու կառավարութեան նպատակներին—վասն որոյ պարտաւորւում են ամենախոնարհաբար խնդրել», որ եթէ իրանց առաջին գրութիւնը դեռ չէ ուղարկուած նախարարութեան, կուսակալը բարեհաճի ուղարկել՝ իւր կողմից ևս միջնորդելով, որ Ն. Կ. Մեծութեան բարեհաճութեամբ «պարտուպատշաճ տնօրէնութիւններ լինին Էջմիածնի պատրիարգական Աթոռի և հարկաւոր օգտակար յառաջադիմութեան համար և ամեն վնասակար գործերի բարձման մասին»։ Իսկ «ամեն հանգամանքների մասին, գրում էին նորանք, լիուլի տեղեկութիւն ստանալու համար, եթէ հաճիք դուք, կարող էք նոյնպէս ուղարկել այստեղ մեր նախկին յայտարարութեան մէջ առաջարկած անձանց.... և կամ դէթ հրամայել մեզ, որ մեզանից մէկին ուղարկենք ձեզ մօտ ամեն հարկաւոր տեղեկութիւնները լիապէս հաղորդելու ձեզ, ինչպէս այս գործի, նոյնպէս և ուրիշ կարևոր առարկաների մասին, որոնց հան-*

դամանքների ու պարագաների հետ ձեզ ծանօթացնելը միապէս հարկաւոր և օգտաւէտ ենք համարում մենք»։

Պարզ է, որ կուսակալը չէր կարող այդ խնդիրներին ուրիշ ընթացք տալ, քան ինչ որ որոշուած էր. ուստի կարևոր յանձնարարութիւններով կրկին ուղարկելով Էջմիածին Եազըկովին և խնդրելով կաթողիկոսից ի միջի այլոց բացատրել Նոյեմբերի 16-ի գրութեան պարունակած մի քանի կէտերի իսկութիւնը, թէ այդ բացատրութիւնն և թէ միւս թղթերը նոյն թուի յունիսի 17-ին ուղարկում է նախարար Բլուդովին՝ ի տեսութիւն, իւր մի ընդարձակ գրութեան հետ, որից յառաջ ենք բերում միայն հետևեալը.

«Յիշեալ անձինք (չորս միաբանները)···· պաշտօնական քննութիւն են պահանջում, պատկերացնելով նորա (կաթողիկոսի) արարքները և Էջմիածնի մէջ բոլոր պատահածները որքան կարելի է տխուր կողմից, որպէս զի իւրեանց առ վանքի շահերն ունեցած սրտացաւութեան պատրուակաւ, բայց աւելի, ի հարկէ, իւրեանց շահերի և նպատակների համար, կարողանան հեռացնել տալ Յովհաննէսին ծայրագոյն պատրիարգի կոչումից։ Իմ այս եզրակացութիւնն այնու աւելի հաստատութիւն է գտնում, որ խռովարարների մէջ գըլխաւոր գործող անձն է Բզնունեանց արքեպիսկոպոսը, որ բոլորովին անձնատուր է եղած Ներսէս արքեպիսկոպոսին. սորա ձեռքով 1831 թուին հրաւիրուեցաւ նա Բեսարաբիա, որտեղից յետոյ

վերադարձաւ 1833 Թուին. և նորա էջմիածին գալուն էր, որ ծագեցան ներկայ անկարգութիւնները։ Չէ կարելի նմանապէս առանց ուշադրութեան Թողնել Սիմէօնի և նորա ընկերների յատուկ ցանկութիւնը, որ քննիչները լինին հայերէն լեզուն և ռուսական սովորութիւնները գիտացող անձինք, այսինքն—հայք, որովհետև, ինչպէս ես ձեզ արդէն հաղորդած եմ, Թիֆլիզում և մեր երկու մայրաքաղաքներում նշանաւոր հայոց մեծամասնութիւնն անբաւական է Յովհաննէսից ու կուսակից է Ներսէսի, որ վաղուց ի վեր նոցա իւր կողմն է գցել։... Այդ պատճառով ես հարկ համարեցի նորից ուղարկել էջմիածին իմ Թիկնապահ Եաղեկովլին, կամենալով ցոյց տալ Յովհաննէսին՝ Թէ տէրութիւնը պատրաստ է պաշտպանել նորա օրինաւոր իշխանութիւնը և հալածել շփոթների հեղինակներին։ Այս մտքով ես կրկին գրեցի կաթողիկոսին և պնդեցի որ Սիմէօն արքեպիսկոպոսն ու նորա երեք գլխաւոր ընկերները անպատճառ հեռացնուին էջմիածնից։.....

Նմանապէս պատուիրեցի Եաղեկովլին՝ որքան կարելի է քաղաքավարի կերպով յայտնել Յովհաննէս կաթողիկոսին, Թէ տէրութիւնը, պաշտպանելով նորա արժանաւորութիւնն ու իշխանութիւնը, միևնոյն ժամանակ պահանջում է, որ ըստ իւր պատրիարգական կոչման պարտաւորութեանց՝ վարուի նա ուղիղ և համապատշաճ այդ աստիճանին, որ էջմիածնի վանքի և հայոց եկեղեցեաց եկամուտները և գոյքը գործ դնուին ըստ իւրեանց

ուղիղ նշանակութեան և ենթարկուլին պարտու-
պատշաճ հաշուատուութեան:.....

Ես այստեղ կրկնում եմ իմ առաջուայ ասածս,
թէ Յովհաննէս կաթողիկոսին էլ ամենևին ազատ
չեմ համարում նորան վերագրեալ մեղադրանքնե-
րից, որոնցից գլխաւորը, ըստ իմ կարծեաց, է շա-
հասիրութիւնը, որ սակայն յատուկ է Հայոց բոլոր
հոգևորականութեանը. բայց և այնպէս նորից պըն-
դում եմ, թէ նա, Յովհաննէսը, կաթողիկոսական
աստիճանի մէջ աւելի կարող է մեզ պիտանի լի-
նել, քան թէ ուրիշ ոք: Այնուամենայնիւ ես չէի
կարող թոյլ տալ հասարակաց կարգը խանգարող-
ներին որ ազատաբար անպատուեն ի դէմս Յով-
հաննէս կաթողիկոսի նոյն իսկ տէրութեան, որ
նորան հաստատած է, որովհետև նոյեմբերին նո-
րան մատուցած թղթում յանդգնած էին մինչև
անգամ ակնարկել նորա ընտրութեան եղանակի
մասին և ապա խնդրում էին, որ համաձայն իւ-
րեանց ցանկութեան՝ նորա վրայ քննութիւն բա-
ցուի, որ նոյն իսկ քաղաքական պատճառներով
չպէտք է կատարուի: Գուցէ տէրութիւնը դեռ ևս
ուշադրութիւն դարձնէր վերոյիշեալ անձանց գրու-
թեան վրայ, եթէ դորա մէջ նոցա ղեկավարողը
լինէին անկողմնակալութիւնը և էջմիածնի վանքի
բուն շահերը. բայց նոցա բոլոր դաւադրութեանց
և արած անկարգութեանց նպատակը միայն այն է,
ինչպէս արդէն յիշեցի, թէ չի՞ն կարող արդեօք Յով-
հաննէսին իջեցնել պատրիարքական գահից, ինչպէս
երբեմն յաջողել է այդ էջմիածնի հոգևորականու-

*թեանը պարսից տիրապետութեան ժամանակու ընդհանուր շփոթների միջոյին, երբ պարսից տ րութիւնը, վանքից դրամ կորզելու առիթ փնտր լով, ինքն է պաշտպան հանդիսացել այդ շփոթ ներին, և որ, ի հարկէ, Ռուսաց տէրութիւնը չ կարող այժմ թոյլ տալ կրկնուելու: «Ըստ իմ կար ծեաց, ոչ թէ քննութիւն է հարկաւոր, որ կարող է բոլորովին ոչնչացնել էջմիածնական նախամեծա Աթոռի հոգևոր ազդեցութիւնը արտասահման Հայոց վրայ, այլ կարևոր է մի «պօլօժէնիէ» կա կանոնադրութիւն Հայոց եկեղեցւոյ կառավարու թեան մասին Անդրկովկասում, որ կարողանա օրինական պարտաւորութեանց սահմանների մ զսպած պահել որպէս կաթողիկոսին, նոյնպէս էջմիածնական հոգևորականութեան միւս դաս կարգերը»:*

*Այժմ անցնենք խնդրի վախճանին:*

*Կուսակալի պահանջման համաձայն* 1834 *թու մայիսի վերջում էջմիածնից Թիֆլիզ են ուղար կում Սիմէօն և Նիկողայոս եպիսկոպոսներն, Ղու մեցի Յովհաննէս և Շահազիզեանց Մարտիրոս վա դապետները: Կաթողիկոսը նշանակել էր այդ անձին ներին աքսորի տեղեր. Սիմէօն արքեպիսկոպոսի Շամախու թեմի Սաղիանի վանքը, Նիկողայոս եպի կոպոսին և Ղուիմեցի Յովհաննէս վարդապետի Սևանի վանքը. իսկ Շահազիզեան Մարտիրոս վարդ պետին՝ բանտարկութիւն էջմիածնում, բայց կուսա կալի պահանջմամբ նա ևս ուղարկուեց Բզնունու հե Սաղիանի վանքը: Երբ աքսորականները ժամանու*

ն Թիֆլիզ՝ բարոն Ռոզէնը նորանց և վիճակի կա-
ռավարիչ Ստեփաննոս եպիսկոպոս Արղութեանցին
ունչել է տալիս իւր մօտ: Այդ տեսնուելու միջո-
ւմ տեղի ունեցած խօսակցութիւնն Արղութեանց
պիսկոպոսը հաղորդել է կաթողիկոսին յետագայ
ամակով.

«Ձերդ Վեհափառութիւն
Ամենողորմած տէր

Պարոն կուսակալն առաքեալ էր զպօլկովնիկ
ն Կազասի կոչեցեալ առ Սիմէօն եպիսկոպոսն և
ռ կոլլեժսկի ասեսոր բաբաջանեանց իւր ընկերսն նորա, որ
ռացեալ յայտնեալ էր նոցա. թէ պարտին եկա-
ել ի վանօրայսն. զորս տէրութիւնդ նշանակեալն
վասն խուրաքանչիւրոց ի նոցանէ. և անտի վե-
րադարձեալ նոյն Կազասին կրկին հրամանաւ պա-
ն կուսակալին առ մեզ ի վանս, յայտնեաց և
ղ զայնմանէ: Ի 16 յունիս ամսոյս Եփրեմ Թարգ-
անն եկեալ առիս յայտնեաց ինձ զկամս Նորին
արձր գերազանցութեան, զի ես զՍիմոն եպիսկո-
ոսն ընկերակցօքն հանդերձ տարայց ընդ իս Ներ-
կայացուցանել բարձր գերազանցութեանն. զորս ի
ամենանս ներկայացուցի. ուրանօր յաթոռ Նորա-
ա Սիմոն եպիսկոպոսն. ես և այլք ըստ կարգին.
բերան բացեալ պարոն կուսակալն լի ջատագո-
ւթեամբք առ տէրութիւնդ խօսեցաւ ընդ նոսա
ապէս. զամենայն գրուածս ձեր լի սաստիկ ան-
ամութեամբք, յանդգնութեամբք և աններելի ա-
րաւութեամբք ընկալայ ես աստ, զորս և հասու-
առ նախարարն հոգևորական գործոց. և առ

ամենողորմած Թագաւոր կայսրն իմ. և թէ զի՛նչ ինչ յայսմ մասին տնօրինեցեն նոքա. չէ տակաւին յայտնի. և ի վերայ այսր ամենայնի կամք սրբազան Պատրիարգին ծայրագոյն գլխոյ հայաստանեայց եկեղեցւոյ այս են. զի դուք գնասջիք և ճնասջիք ի զանազան վանօրայս. զորս նորին Վեհափառութիւնն նշանակեալ է ձեզ առ ի բաւականութիւն յաղագս ձերոց յանցանաց. և զայսմ կարգադրութենէ իւրմէ գրեալ է ինձ և խնդրեալ ածել ի կատարումն. զոր և պարտ անձին համարիմ կատարել. վասն որոյ ահա յայտնելով զկամս նորին Վեհափառութեան պատուիրեմ ձեզ գնալ քեզ յայս ինչ վանք և ձեզ յայն ինչ։ Ընդ այս բան նորին բարձրր գերագանցութեան ասաց Սիմոնն. թէ զի՞նչ են յանցաւորթիւնք մեր. դի՛ք զայնոսիկ առաջի մեր և ապա առաքեցէք զմեզ ուր հարկն է. յաւել ևս ասել. թէ մի՞թէ իրաւունք և դատաստան չի՛ք ուրեք յաշխարհի. միթէ՞ չի՛ք աստուած ուրեք և այլն. իսկոյն պարոն կուսակալն ասաց, յոչինչ տէրութեան միջի չեն ոք արարեալ այնպիսի յանցաւորութիւն. զորս դուքդ յանդգնեցայք առնել ընդդէմ ձեր ամենապատուական գլխոյ. յանցանք ձեր են լրբութիւնք ձեր և լրբենի գործք ձեր, որք անտանելի են վասն տէրութեան և յոյժ աններելի. այլ սրբազան կաթողիկոսն ըստ բաւականին խնայելով ի ձեզ մարդասիրապէս ոչ հաճեցաւ մերկացուցանել զձեզ ի վարդապետութենէ այլ առաքէ ի վանս միայն. սակայն եթէ իմ աստիճանաւորք զայդպիսի լրբութիւն համարձակէին առ-

նել ինձ, ասէ, յայնժամ ես ոչ երբէք նայելով կամ սպասելով կայսեր կամացն ինքնին զձեզ պատուհասակած առնել տայի, այլ սրբազան կաթողիկոսն զայս ամենայն բաշխեաց ձեզ անյիշաչարութեամբ, յետ այսպիսի բանից պարոնին Թուլացեալ բանք Սիմոն եպիսկոպոսի, որ կրկին շարունակելով զխօսս իւր ասէ. ձերդ բարձր գերազանցութիւն, ես ծեր եմ սաստիկ. ինձ ճանապարհ չափել դժուարին է և մանաւանդ ես միայն ի վանսն կեալ զիա՞րդ կարիմ. գոնեայ ասէ՝ սոյն իմ ընկերք ես լիցին ընդ իս ինձ ի մխիթարութիւն ծերութեանս: Ընդ շարամանութիւն Թուլացուցեալ բանից նորա ետ զօրաւոր պատասխանի պարոնն և ասէ. ծերունի, ոչ ապաքէն դու ի գնալդ քո յէջմիածին խոստացար ինձ գնալ անդր միմիայն վասն զատանելոյ քեզ անդ զգերեզման ի շարս միաբանութեան Աթոռոյ. այլ այժմ դու ընդդէմ խոստմանդ կորուսեր զքոյդ գերեզման. և գերեզմանացի քեզ վանքն ի կաթուղիկոսէն նշանակեալ. իսկ ընկերք քո այսոքիկ ընդ քեզ ի միասին լինել ոչ կարեն. վասն զի չունիմ ես ասէ՝ ի սրբազնագոյն պատրիարգէ զայդպիսի կարգադրութիւն. և զնորին հրաման փոփոխել ես ոչ կարեմ: Ստիպեալ Սիմոն եպիսկոպոսն յայսպիսի զօրութեանց բանից նորա բուռն էհար զպատճառանաց և զհնարից և ասէ. ես չունիմ այժմ ի ձեռս իմ զգրամ ինչ վասն ծախուց իմոյ ճանապարհորդութեան. ես ունիմ աստ առևտուր. վասն որ ներեղէք ինձ Մնալ աստէն առ ժամանակ ինչ յաւարտ ածել զնա և զտուրս իմ. ասէ պա-

բոնն, այդ երբէք անկարելին է. միայն թէ դու կարես ասէ. կարգել քեզ վէքիլ զՍտեփաննոս եպիսկոպոսն Արղութեանց զկառավարիչ վիճակին վրաստանի. և յանձնել նմա զամենայն առ և տուրս քո. և գնալ ի նշանակեալ վանսն: Խօսի Սիմէնն զբանս ինչ յիմարական և ասէ. ես կերթամ ջուրն կընկնիմ. ես այսպէս ու այնպէս կուլինիմ. ասէ կուսակալն սաստելով նմա. մի՞թէ դու մարդասպան և անձնասպան ես. ո՞չ ապաքէն դու վարդապետ ես, գիտես զկամս Քրիստոսի. զինո՞րդ զանձդ ձգես ի ջուր: Յետ այնպիսի խօսակցութեանց յառաջ մատեաւ Նիկողայոս եպիսկոպոսն մատնելով զընկերս իւր՝ ասէ. ձերդ գերազանցութիւն ութն էաք. զինորդ մեք կրեմք զայսպիսի պատիժ և չորեքեանն ազատ մնան յայսմանէ: Նի բարկութեամբ եմ պատասխանի կուսակալն և ասէ. լո՛ւռ լեր, յիմա՛ր, լուռ լեր գլուխ դատարկ. ընկերքն քո զգալով զանիրաւութիւն իւրեանց անկան առ ոտս պատրիարգին, համբուրեցին զփոշի հողաթափից նորա. խնդրեցին զներողութիւն և ընկալան, զորոց չունիմ ես ի պատրիարգէն զնոր զանկատ. այլ եթէ և դուք զայն առնէիք. և դուք մնայիք անպատուհաս. սակայն դուք անզգայք ոչ երբէք կամեցայք ունիլ զխաղաղութիւն. ոչ երբէք հաճեցայք մեղայ գոչել վասն ձերոց յանցանաց. վասն որոյ նոքա անդր հանգիստ կան ի տեղւոջ իւրեանց և դուք այսպէս դեգերիք. բայց եթէ և դուք դառնալով ի մոլորութեանց ձերոց. հայցեսջիք զներումն. գիտեմ զի տացէ ձեզ զայն անյիշաչարութիւն պատրիարգին և ձեզ եղիցի ա-

ցեղութիւն։ Զդէմս իւրոյ խոստակցութեան փոխելով պարոնն առ Յովհաննէս վարդապետն զըխմեցի ասէ. դու, Յովհաննէս վարդապետ. ի մի՛տ բեր զամենայն զրութիւնս քո. զոր գրեալ էիր առիս ի 1832. և ի 1833 ամին լի դարշութեամբք. զորս ես առաքեալ եմ առ սրբազան պատրիարգն, սակայն դու այնոքիւք ոչ բաւականացեալ. վերստին զլրբութիւնդ ցուցեր ընդդէմ գլխոյդ. վասն որոյ գնացեալ ընդ Նիկողայոս եպիսկոպոսի ի Սեան կղզի անդ ապաշխարել, աղօթել առ տէր վասն կենաց կայսերն, կաթողիկոսին և այլն։ Իսկ Մարտիրոս արեղայն մնասցէ աստ տակաւին, մինչև կաթողիկոսն գրեսցէ ինձ զիւր կարգադրութիւն. և յայնժամ դիմս նա տացի այդպիսի բաւականութիւն ըստ իւրոց սաստիկ լրբութեանց։ Ասաց Յոհաննէս վարդապետն. ձերդ դերաղանցութիւն ես տկար եմ. եթէ հնար ինչ իցէ. բարեհաճեցէք թողուլ ինձ մնալ աստէն առ ժամանակ մի խնամարկել զանձինս տկարութիւն. և կամ գրեցէք. առ պատրիարգն թոյլ տալ ինձ մնալ յէջմիածին. ապա թէ ոչ ցաւ իմ զօրասցի և ես մեռանելոց եմ։ Ետ պատասխանի պարոն կուսակալն և ասէ այդ անկարելին է. դուք փութացէ՛ք անպատճառ կատարել ըղհրաման պատրիարգին։ Ասէ Սիմոն եպիսկոպոսն. ես ոչ կարեմ երթալ. ասէ կուսակալն. ես կամիմ զի դուք անձամբ անձին գնասջիք. ապա թէ ոչ. հրամայեցից ուր հարկն է. զձեզ հարկիւ ունիւն նստուցանել ի սայլ և այնպիսի վայելչու փառաւորութեամբ տանել ուր ոչն կամիք գնալ, վասն

որոյ առեմ գնացէք. և բարեաւ մնացէք, և այսպէս աւարտեցաւ խօսք բոլորեցունց: Յետ այսր ամենայնի խօսեցաւ ընդ իս պարոն կուսակալն և ասէ. ես զձեզ վասն այնր կոչեցի ընդ նոսա առ իս. զի դուք ըստ որում փոխանորդ էք առաջնորդի և կառավարիչ կողմանցս և մանաւանդ յատուկ մանրիմ և հարազատ սրբազան պատրիարգի. զայս ամենայն, զորս խօսեցայ ընդ նոսա. ինքնին տեսջիք և իմասջիք և գրեսջիք զամենայն մի ըստ միոջէ սրբազան Վեհին, զի միամիտ լիցի նա, թէ ես զամենայն կամս նորին Վեհափառութեան կատարեցի. վասն որոյ և ես զայս բոլոր հանգամանօք գրեմ ձերում մեծի տէրութեան»: Ի 19 յունիսի 1834 ամի ի Տփխիս:

Այդ անցքերի առթիվ Աստրախանի առաջնորդ Սերովբէ եպիսկոպոսը 1834 թ. յուլիսի 21-ին գրում էր Զաքարիա եպիսկոպոս Գիւլասպեանցին. «Հազիւ ուրեմն ընկալայ յամսեան ապրիլի անցելոյ, մինչդեռ էի ի Ս. Պ. Բուրգ, զհամբաւատու թուղթ ձեր և սփոփեցայ. ի ժամանակի, յորում պատուական եղբայրութիւն մեր խռովութիւնս յարուցեալ ի վերայ անզգաստ Սրբազնակատար Հայրապետի մերոյ ի ծայրագոյն խայտառակութիւն հասուցանեն զպատիւ սրբոյ Աթոռոյ մերոյ և մեզ ամենեցուն, գոհ եմ Սրբազան եղբայր, զբախտէ իմմէ, զի գէթ ես անմասն և հեռի գտանիմ յամենայնէ. բարեբանեմ միանգամայն զձեզ, և խնդակցիմ ընդ այն, զի նախիմաց զգաստութեամբ յանձն արարեալ Ձեզ զամենեսին հաճոյից կամաց իւրեանց՝ մեկնեցայք առ

ի նոցանէ, և ընտրելագոյն ձեզ վարկայք խնդրել կեանս խաղաղական և առանձնական, վասն զի զի՞նչ օգուտ լինել առ նոսա և ընդ նոսա, յորժամ փոխանակ շինութեան և պայծառութեան չիք անդ և առ նոքօք տեսանել բայց արհաւիրս և անարգանս։ Պաշտպանն սրբոյ ուխտի մերոյ՝ որ յերկինս, սրբեսցէ զմիտս և զսիրտ ամենեցուն, սիրել այսուհետև զբարին, և նմանիլ իսկական հովուի քաջի, զկեանս իւր ի վերայ ոչխարաց դնողի և ոչ ի գիշատումն գայլոց վտանգողի......» 28)։

Այդ տողերը կամեցանք ընթերցողի ուշադրութեանը ներկայացնել նորա համար, որ թէ Սերովբէն և թէ Զաքարիան յայտնի են իբրև Ներսէսի հակառակորդներ, հետևաբար և Կարբեցու կուսակիցներ. մանաւանդ որ յայտնի է Սերովբէի խաղացած դերը Յովհաննէսին կաթողիկոսացնելու գործում. և սակայն նա պախարակելով հանդերձ «Ներսէսի կուսակիցների» (ինչպէս անուանում էին բողոքաւորներին) յարուցած խռովութիւնն իբրև ս. Աթոռի պատուին նախանձաւոր մէկը՝ չէ քաշւում կաթողիկոսին էլ «անզգաստ» անուանել և մաղթել, որ «ամենքն էլ սրբուած մըտքով և սրտով սիրեն այսուհետև բարին և նմանեն իսկական քաջ հովուին, որ իւր կեանքն է դնում ոչխարների վերայ և ոչ թէ ոչխարներին գայլերի գիշատման վտանգի մէջ է դնում»։ Այդ նոյն նամակից երևում է, որ Զաքարիա եպիսկոպոսն էլ պախարակելով է խօսել երկու կողմի վարմունքների վերայ

ես և բացատրել է, որ ինքը գուշակելով լինելիք-ները՝ թողել հեռացել է Աթոռից։

## Դ.

Գրիգոր եպիսկոպոսի և Ստեփաննոս վարդապետի հետ միասին բողոքաւորների խմբից բաժանուելուց և կրկին Սինօդի անդամակցութեան մէջ մտնելուց յետոյ Շահխաթունեանցը շուտով նշանակւում է Երևանի վիճակի առաջնորդական փոխանորդ կամ յաջորդ, ուր մնում է 18 ամիս, 1834 և 35 թ. ընթացքում։

Հետևեալ 1836 թուի մարտի 11-ին հաստատուեց Ռուսաստանի Հայոց եկեղեցական գործերի համար կազմած օրէնսդրութիւնը—«Պօլօժենիէն», որի պահանջման համեմատ էջմիածնում բացւող Նոր Սինօդը պիտի ունենար ութը անդամներ։ Կաթողիկոսի առաջարկութիւնով և Բարձրագոյն հաստատութիւնով այդ պաշտօնում նշանակուեցին՝ Բարսեղ, Յովսէփ, Ղուկաս արքեպիսկոպոսներն և Ստեփաննոս եպիսկոպոսը, «Յովհաննէս վ. Ղախմյին, Սահակ վ. Սալուննեանն», Յովհաննէս վ. Վաղարշապատցին և Յովհաննէս վ. Շահխաթունեանցը։

Նոր Սինօդը հէնց բուն սկզբից նկատեց իւր առաջին մի մեծ դժուարութիւն։ Հոգևոր իշխանութիւնն իւր ձեռքում ունենալով հայ ժողովրդի կրօնական և ընտանեկան կեանքի բազմաթիւ և բարդ պահանջներին ընթացք տալու իրաւունքը՝ դարերի ընթացքում անուշադիր կամ անձեռնհաս է եղել պարզ, և ամենքի համար պարտադիր եկե-

դեցական կանոնագիրք ունենալու։ Ամեն մի հայրապետ և առաջնորդ իւր արձակած վճիռների և կարգադրութիւնների մէջ խօսել է յանուն եկեղեցու կանոնների, և սակայն եկեղեցին ոչ մի անգամ պաշտօնապէս չէ յայտարարել, թէ որո՞նք են իւր ընդունած պարտադիր կանոններն և որո՞նք եկամուտ և մասնաւոր մարդկանց կարծիքներ։ Պատճառն էլ այդ է, որ եկեղեցու վարչական և դատաստանական խնդիրների մէջ վաղուց ի վեր ապօրինութիւններին և զեղծումներին մեծ ճարակ են տուել սխալ հասկացողութիւնները, կամքը և անձնական զանազան դիտումները, և կասկած չկայ, թէ այդ բոլորից որքան շատ տուժել է և տուժում է ինքն եկեղեցին։ Երբ արդէն պարտադիր կանոնագրութեան փոխարէն իշխում է կամայականութիւնն, ի հարկէ «օրէնք ի ձեռս առաջնորդաց» կլինեն և ոչ թէ առաջնորդներն՝ օրէնքի հպատակ։ Ահա թէ որտեղից են ծագել այն բազմաթիւ անկարգութիւններն և չարիքներն, որոնք վաղուց ի վեր արմատացած են երևում թէ հայ եկեղեցականների և թէ ժողովրդի կեանքի մէջ, մանաւանդ վերջինիս ամուսնական—ընտանեկան խնդիրներում։ Քսանական Թուականներին Թիֆլիզի առաջնորդ Ներսէս արքեպիսկոպոսի ուշադրութեան առարկայ էր դարձել Գանձակի յաջորդութեան մէջ սովորական երևոյթ դարձած կնաթողութիւնը, կամ երկկնութիւնը,—կենդանի կնոջ հետ միասին մի երկրորդ կին բերել պահելը։ Այդ կողմից ոչ պակաս ցաւալի դրութեան էր հասել և նոյն իսկ

Մայր Աթոռի կողքին ապրող Երևանցի հայերի ընտանեկան կեանքը։ Լինելով տեղական յաջորդ՝ Շահխաթունեանցը հէնց պաշտօնի մանելու օրերից առիթներ էր ունեցել նկատելու այդ չարիքը. ուստի և 1834 թ. մայիսի 28-ին յայտարարում էր «Սրբազան Սինհոդոսի Արարատեան Մայր Աթոռոյ Կաթուղիկէ Էջմիածնի» հետևեալը. «Արդարև ողբալի է վիճակ հայազգի բնակչաց քաղաքիս ի մասին անհամաձայնութեան ընդ միմեանս պսակեալ արանց և կանանց, և հետ զհետէ այս հրդեհ, այս խոտորնակ ընթացք՝ որ ճարակեալ է յեկեղեցիս ի հաւատացեալ հայազգիս, ունի մեծամեծ վնաս գործել ազգի՝ այնքան, մինչև այնուհետև չգտանել դարման, եթէ այսօրինակ տևեսցէ ընդերկար առանց յատուկ խոհական տնօրէնութեամբ դիմակալելոյ այնմ՝ որով հոգացողութեամբ և լիցէ»։

Ընդհանրական գործադրութիւն և զօրութիւն ունեցող կանոնադրութեան պակասութիւնից ստիպուած՝ վիճակների առաջնորդ արքեպիսկոպոսներից ոմանք փորձել են իրանց թեմերում զանազան ժամանակ զգացուած պահանջի համեմատ սահմանել կանոններ կամ հրահանգներ, որոնք տևել են մինչև սահմանողի բացակայութիւնը թեմից, շատ անգամ էլ անգործադրելի են մնացել նոյն իսկ նորա օրով, չունենալով պարտաւորիչ նշանակութիւն։ Այստեղ աւելորդ չենք համարում կրկնել մի կանոնադրութիւն, որ տուած է, կամ՝ ինչպէս ասուած է թերթի ճակատին՝ «ի լոյս ընծայեցաւ 1829, յունվարի 1» ս. Թադէոսի վանքի առաջնորդի ձեռքով։ Հետա-

քրքրականը յառաջ բերածում այն է, որ ցոյց է տալիս նախ՝ ժամանակակից ժողովրդական կեանքի պահանջներն և սովորութիւններն. երկրորդ՝ թէ ի՞նչպէս կանոնների անունով գործադրութեան իրաւունք են ստանում մասնաւոր և անպատրաստ մարդկանց սխալ կարծիքներն և տգիտական նախապաշարմունքներն, օրինակ՝ 17 ստարամուտ յօդուածն, որի նմանները զանազան ժամանակ մուտք են գտել մեր կանոնագրքերի մէջ, և հնանալով՝ ստացել են մի տեսակ նշանակութիւն։

«Նախիջևան և Ագուլեաց գաւառաց գտանեցեալ հայկազնեայ ազգին մերոյ հոգևորական պատկանելի կարգադրութիւնքն համառօտին յատորև։ Ի Բարսեղ Արք եպիսկոպոսէ սրբազան Առաքելոյն Թադէոսի Վանաց և բոլոր Թեմի և վիճակաց նորա, և Ատրպատականի և բնականի ժողովրդոց հայոց[29]։

1. Նախապէս՝ վասն հայկազուն մանկանց մերոց հաստատել օրինաւոր վարժարանս ի տեղս պատկանեալ յորս լինիցի քաղաքամիջի։

2. Քահանայից չէ հրաման և վայելուչ եկեղեցի, խաչ, և պատկեր օծելոյ, երբ գտանին ի քաղաքս և ի վիճակս եպիսկոպոս կամ վարդապետք։

3. Ըստ լուսաւոր կանոնաց սրբոց Առաքելոց և հայրապետաց՝ վասն աղջիկ առնլոյ և տալոյ ժողովրդեանն մերոյ՝ մի՛ գտանիցի չհասութիւն, զի ողորմութեամբ Տեառն Աստուծոյ՝ հայոց ազգն մեր ի յերկիրս Նախիջևան և Ագուլեաց, ևս և՛ Դարալակեազ և Ազատէր գաւառսն վերաբնակեալ գտանին. յոյժ հարկաւոր է ձեռ գտանել հասն, և ո՛չ

չհաս աղջիկն։ Անհնազանդքն կրեն պատիժս նախատանօք մեծաւ։

4. Նոյնպէս ըստ լուսաւոր կանոնաց սրբոց հարցն մերոց՝ կոյսն ընդ կուսի։

5. Յորժամ աղջիկ խնդրիցեն վասն տղային, նախապէս քննեսցեն զգուշութեամբ հասն և չհասն աղջկան. յորժամ հաս է, պարտին գալ քահանայիւք երեցփոխանօք և մերձաւոր բարեկամօք առ մօտ Առաջնորդն երկրին՝ նորա գիտութեամբ և ծանօթութեամբ և վկայագրութեամբ նշանս դնիցեն. ծածուկ նշան դնել թարց գրութեան Առաջնորդի. չէ վայելուչ և վտանգ մեծ։

6. Այսպէս քահանայից պսակ առնելոյ ժամանակն՝ եկեսցեն առ երկրի Առաջնորդի մօտն, խնդրեսցեն հրամանագիր. և ապա պսակեսցեն։

7. Յորժամ տղայն նշանեցաւ ըստ կանոնի, չէ վայելուչ նախ քան զպսակիլն գնալ ի տեսութիւն զօքանչլին և աղջկանն, զի մեծ վտանգ գոյ ի միջի։

8. Չէ պատկանաւոր՝ նախ ծածուկ մեկ ամիս յառաջ զտղայն պսակել և զկնի միոյ ամսոյ հռչակաւ հարսանիս առնել։

9. Ի յաւուրն միաշաբաթի որ է կիւրակէ օրն, ի շուկայս գնալ առ և տուր առնել՝ բնաւ չէ հրաման, զի մեծ մեղք է։

10. Նորածին երեխայն՝ յաւուրն ութերորդի մկրտեսցի. եթէ հիւանդութիւն պատահեալ լինիցի՝ ի նոյն ծնեալ կէտն մկրտեսցի։

11. Ի մի տան եթէ պատահիցեն չորս և հինգ եղբարք, կարգեալք ըստ աշխարհի ամուսնու-

թեամբ, ամենայն եղբարց մէջ կնքահայր բաւական է, և կնքահայր մի՛ փոխիցեն:

12. Կնքահայրն՝ կատարեալ տղայ լինիցի, և ո՛չ հինգ տարեկան փոքր տղայի դիրկն երեխայ տալ՝ և կոչել զնա կնքահայր:

13. Քահանայն նախապէս խոստովանեսցի, նոյնպէս կնքահայրն խոստովանեսցի և անսուաղօրէն զխորհուրդ սուրբ մկրտութեան կատարեսցի:

14. Նոյնպէս խորհուրդ պսակին կատարելոյ՝ անսուաղօրէն լինիցի, մի՛ ուտելով և մի՛ ըմպելով պսակս արասցեն, զի մեղք է: Թէ քահանայն և թէ կնքահայրն առանց հաց ուտելոյ և գինի ըմպելոյ՝ կատարեսցեն զպսակն:

15. Սրբութիւն առնելոյ փափագող անձինքն՝ գոնեայ երկու շաբաթ յառաջ խոստովանեսցի զմեղս իւր քահանային, և ապա ի ձեռն արժանաւոր ապաշխարութեամբ Քրիստոսի Յիսուսի մարմին և արիւնն ընկալցի ի քաւութիւն և ի թողութիւն մեղաց. Թարց ապաշխարութեան՝ խոստովանութիւն ոչինչ ներգործէ վասն մեղաց:

16. Վասն մեռելոյ՝ կամ վասն քառասնցի, թաղման կամ մատաղի և այլ բարեպաշտեալ դիտաւորութեանցն յատկապէս պատարագ խնդրողքն պարտին երեք օր յառաջ ազդումն առնել քահանային՝ զի քահանայն միայն գոլոյն, թող ըզգուշութեամբ զիւր պատրաստութիւնս տեսցէ վասն պատարագին. յանկարծակի և անպատրաստ պատարագ առնել տալն քահանային դատապարտութիւն է:

17. Ըստ կանոնի սրբոց հարց՝ տղայաբեր կա-

նայքն՝ չունին հրաման մինչև ցլրանալ քառասուն աւուրց՝ ի տունն կերակուր եփել, ամանի մերձենալ, և տան մարդիկքն նորա հետն հաց ուտել. և զկնի լրանալոյ քառասուն աւուրց, ըստ խրատու մաշտոցին՝ գնալ յեկեղեցին, ի ձեռն քահանային ընկալնուլ օրհնութիւն և ապա՝ բանի ինչ մերձենալ։

18. Եթէ ուրումն տնանկ աղքատի ծնունդ ղաւակ պատահիցէ, վասն նորա աղքատութեան կընքահայր սեպհական ոչ լինիցի, հարկաւորի բարեպաշտ ումն ունող զկարողութիւնս՝ բառնալ երեխայն անտէր և լինիլ կընքահայր՝ զի ողորմութեան վարձս ունի ընկալնուլ ի յԱստուծոյ մերոյ Յիսուսէ։

19. Հիւանդացեալ մարդն՝ եթէ զգայցէ յօրէ յօր՝ զծանր հիւանդութիւն իւր, մանաւանդ ընտանիքն հարկաւորին զհիւանդն զգուշացուցանել՝ և կոչել զքահանայս՝ զհիւանդն խոստովանացուցանել զմեղս իւր՝ և առնել արժանաւոր յետին հոգևոր Թոշակի Քրիստոսի մարմնոյ և արեանն ի բաւութիւն և ի Թողութիւն մեղաց, և ապա՝ կտակս առնել տալ հիւանդին նախապէս իւր մարմնաւոր ժառանգացն. որդւոց և դստերացն և կենակցոյն, և զկնի՝ արժանաւոր կտակս հոգևորս պարտի առնել հիւանդն՝ նախապէս մեծագոյն սուրբ Աթոռոյ, վանօրէից, եկեղեցեաց՝ վարժարանց և աղքատաց. այսմ խոհեմութեանն իմաստուն քահանայից և բարեպաշտ ընտանեաց պատկանի առնել։

20. Ննջեցելոյ տէրն՝ ի վերայ մեռելոյն եկեալ մարդկանց ինքնին մի՛ բաժանեսցէ դրամս՝ ասելով. թէ գնացէք աջահամբոյր արկէք. չէ յարմար։

21. Յորժամ ննջեցելոյ թաղումն կատարի՝ նոյն օրն ի վերայ թաղմանն որ ի վերայ գերեզմանին՝ զոր ինչ պատկանաւոր ուտելիք և ըմպելիք լինիցին բաւականք են։ Ի նոյն օր վասն հացկերութի մի՛ գնասցեն ի տուն մեռելոյն, զի ի տունն այն՝ օր սգոյ և լալոյ է, և ոչ ուտելոյ և ըմպելոյ. զկնի քանի աւուրց՝ եթէ ունի կարողութիւն տէր մեռելոյն, ըստ կամացն իւր տացէ մեծարանս բարեկամաց և գրացեաց հացկերութիւ վասն այսմ իրի բազում անձինք խնդրեցին ի մէնջ տրտունջանօք, թէ բարձ այս թարմատար սովորութիւն, յորս աղքատացուցանելոյ են նշանք անկարից և այլն։

22. Յաւուր մատուցման սուրբ պատարագին՝ քահանայից չէ վայելուչ միս ճաշակել, և աւելի գինի և ցքի ըմպել՝ մանաւանդ ի խնջոյս գնալ։

23. Քահանայքն՝ վիճակաւ և սրայով պատարագս մատուցեն՝ և պատարագիչ քահանայն մնասցէ ի խուցն սուրբ եկեղեցւոյ. յորժամ նոյն քահանայն իւր սրայի սուրբ պատարագն լրացուցանէ և միւս քահանայն եկեսցէ նորա տեղն. և ինքն գնասցէ ի տունն, և միւս պատարագիչն զգուշութեամբ մնասցէ։

24. Յաւուր նշանադրութեան իբրև զհարսանիս՝ չէ վայելուչ հացկերոյթի և ըմպելոյ պատրաստութիւն ծանր տեսանել, այլ՝ քաղցրեղինօք և մրգեղինօք կատարել նշանադրութեան հանդէսն՝ պարկեշտ ըմպելեօք ըստ կարողութեան կամացն։

25. Վասն աղջիկ առնլոյ՝ պաշլըխ տացեալ խարջն՝ մի՛ լիցի հեթանոսաբար և նման քրդաց,

յորս աղջիկն իբր վաճառեն նման անասնոյ, այլ որքոյ Էջմիածնի բարձրագոյն հոգևոր կառավարութեան հրատարակեալ հրամանաւն որպէս լինիցի ի գաւառն Արարատեան, այս կողմունս ևս այնպէս լինիցի։

26. Աշխարհականքն հոգևորական գործոյ մի լինիցին ձեռնամուխ ըստ առաջին թարմատար սովորութեանցն ի ժամանակս իշխանութեան պարսից։

27. Եթէ այր ոք ամուսնացեալ կնոջ և որդւոց տէր գոլով՝ ըստ ծխի աշխարհի ապրուստի վասն վաճառականութեան գնասցէ ի յերկիր հեռաւոր, այս մարդս ի տունն իւր մինչև ցվեց տարի խարջի դրամ և սոսկ գիր ինչ վասն ողջութեան և կենդանութեան իւրոյ ոչ երբէք առաքեսցէ, և սորա կենդանութեան լուր ոչ եկեսցէ առ կինն և առ բարեկամս, այս կինս կարելի է այլում առն գնալ, զի կնոջ համբերութիւնն բաւական համարի վեց տարի միջոց. Թարց եկամուց ապրիլ. այսպիսեացն՝ եթէ թոյլ ոչ տացուք, յոյժ կարելին է վտանգ պոռնկութեան ծնանիլ, առանց առն, տէր լինիլ որդւոց և այլն։

28. Քահանայքն՝ մնասցեն աջալուրջ և արխացեալ ի քահանայագործութիւնս իւրեանց հոգևոր պաշտօնին. մանաւանդ դոնեայ շաբաթ և կիւրակէ ի Նախիջևանն սուրբ պատարագ մատուցանել պարտաւորք են. զի ըստ որում բաւական քահանայք գտանին ընկերացեալք. այլև՝ նշանաւոր աւուրքն ըստ ցուցանելոյ տետրակին՝ մեծ և կայսերական մօլէպինան անխափան կատարել՝ զի ըստ որում

քաղաք է և բազմութիւն աստիճանաւորաց ռուսաց անդ գտանին»։

Վերոյիշեալ դժուարութեան հանդիպած Սինոդը առաջին հոգսը անում է ունենալ մի կարգաւորուած կանոնագիրք։ Մի այդպիսի կանոնագրքով կամենում էր նա ղեկավարուել և բաւականութիւն տուած լինել պետական օրէնսդրութեան այն պահանջին, որ եկեղեցական—կրօնական գործերի կառավարութիւնն և վճիռները յանձնելով եկեղեցական վարչութեան՝ վերջինիս վերայ պարտաւորութիւն էր դրել վարուելու իւր եկեղեցու կարգերի և օրէնքների համաձայն։ Բայց ուստի՞ և ինչպէս էր կամենում Սինօդը գտնել իւր ցանկացածը։ Նա ընտրեց Ղրիմեցի և Շահխաթունեանց վարդապետներին և յանձնեց նորանց կարգի բերելու եկեղեցական կանոնագիրքը։ Թէ ի՞նչ էին հասկանում հոգևոր ատեանն և նորա նախագահ Հայրապետը կարգաւորուած կանոնագիրք ասելով, ցոյց է տալիս Սինօդի մի հրամանն, որ գրել է 1837 թ. Ղարաբաղի կոնսիստորիային, որ մի տարակուսի փարատումն էր խնդրել. «Որովհետև բազումք յօրինաց և ի կանոնաց հայաստանեայց եկեղեցւոյ անյայտացեալ են ձեռամբ բազմաւոր ժամանակաց, և յայտնիքն ևս չեն ըստ կանոնի դասաւորեալ, ուստի Սինհոդոսս օրագրական սահմանադրութեամբ իւրով ի 11 դեկտեմբերի 1836 ամի.... յանձնեալ է անդամոց իւրոց Յովհաննէս վարդապետացն Ղրիմեցւոյ և Շահխաթունեանց ի յայս ածել զայնոսիկ յերևելի և յարժանահաւատ հին կանոնական

մատենագրաց մերոց, առ ի վերածել զայնոսիկ ի կանոնաւոր դասաւորութիւն զիւրաքանչիւր օրէնս ըստ նիւթոյն առարկայից»:

Պէտք է ասել, սակայն, որ յանձնուած գործը Ղոխմցու և Շահխաթունեանցի ձեռնհասութիւնից վեր էր. և թէև տեսել ենք Մայր Աթոռի գրատան թղթերում մի տետրակ, որի մի քանի թերթերում Շահխաթունեանցի ձեռքով նշանակուած են իւրաքանչիւր խնդրի դիմաց նորան վերաբերեալ կանոնները, որքան յայտնի են կանոնագրքերից, բայց թերի թողած մի գործ է այդ, որ կարծել է տալիս, թէ ձեռնարկողն ինքն էլ շուտով եկել է այն համոզման, թէ իւր կարողութիւնից վեր գործ է յանձն առածն և թողել է:

Կասկած չկայ, որ եթէ յիշեալ երկու վարդապետներն այդ գործը մինչև անգամ վախճանի հասցրած էլ լինէին, դարձեալ այդ չէր կարող բառնալ զգացուող իսկական դժուարութիւնն. հետևաբար և ոչ մի արժէք չէր կարող ունենալ: Կաթողիկոս և Սինոդ չէին կարողանում հասկանալ, որ եթէ մեր եկեղեցու օրէնքներից և կանոններից շատերը կորել անյայտացել են և Մնացածներն էլ պէտք է «յայտ անել արժանահաւատ մատենագիրներից», այդ տեղ երկու վարդապետի աշխատութիւնը նշանակութիւն չունի եկեղեցու համար, և ոչ էլ մի կաթողիկոսի և մի Սինոդի իրաւունքն էր նորանից ժողոված և յայտ ածած կանոնները «կանոնաւոր դասաւորութեան» վերածել: Այդ տեղ ինքն եկեղեցին միայն կարող է իւր ազգային ժո-

ղովի ձեռքով «յայտ անել» կանոններ, եթէ կան, և սահմանել նորերը, եթէ հինը չկայ, կորել է։ Այդպէս հասկանում էր միայն Ներսէս Ե.։ Արդէն մի ուրիշ աշխատութեան մէջ[30]) առիթ ենք ունեցել ասելու, որ այդ Մեծ Հայրապետը զգալով պարզ և զտուած կանոնների կարևորութիւնը՝ վաղուց ի վեր մտադրութիւն է ունեցել, ինչպէս գրում էր Ղարաբաղի Բաղդասար մետրապօլիտին, մի ժողով կազմել Երուսաղէմի և Կ. Պօլսի պատրիարքների և վիճակների առաջնորդների ներկայութեամբ, գոնէ չհասական ամենօրեայ խնդիրների համար «վերանորոգել զնախնեացն տնօրէնութիւն»։ Հասկացողութիւնների տարբերութիւնը մեծ է և ակնյայտնի։ Մեծ Հայրապետը չի ասում, թէ կանոններից շատերը «բազմատար ժամանակի» ձեռքով անյայտացել են, վաղորդ և երկու կամ երեք անձերի յանձնել է յայտ անել մատենագիրներից ինչ որ մնացել են, այլ ուղղակի ասում է, թէ «այստեղ—այնտեղ գտնուող կանոնագրքերը դեռ վերաքննուած, սրբագրուած և արժանաւոր վճռադատութիւնով հրատարակուած չեն, եկեղեցական ծայրագոյն իշխանութեան անհոգութեան պատճառով». ուստի պէտք է ժողով կազմել քննելու և սրբագրելու համար, որը, տարաբաղդաբար, չիրագործուեց։

Կանոնների դասաւորութեան գործը Ղռիմցուն և Շահխաթունեանցին յանձնած լինելով՝ 1837 թ. մայիսի 19-ին կազմած օրագրի հիման վերայ Սինօդի անդամները գործավարական մասերն իրանց վերայ բաժանելու միջոցին, Դատաստանական մա-

սը յանձնեցին Ստեփաննոս եպիսկոպոսին և Շահխաթունեանցին. մի մասն, որ ամեն քայլում կարօտում է եկեղեցական կանոնագիտութեան:

Այսչափով սահմանափակելով իրանց հոգատարութիւնն եկեղեցական կանոնների նկատմամբ՝ Կարբեցին և Սինոդը շուտով, երևի, մոռացան այդպիսի խնդիրներ, քանի որ մեծագոյն մասը ժամանակակից վանականներից աւելի կարևորութիւն էին տալիս ուրիշ հրապուրիչ պահանջների: Ինքը Կարբեցին սնուած և տոգորուած ագահութեան և արծաթսիրութեան ախտերով՝ մի կողմից անձնատուր եղաւ սեպհական հարստութիւն դիզելու անարգ միջոցներին, միւս կողմից երես առած լինելով Կովկասի կուսակալի ցոյց տուած համակրութիւնից և պաշտպանութիւնից՝ մտածում էր ոչ թէ եկեղեցական բարեկարգութիւնների վերայ, որոնք նորա համար անհասկանալի խօսքեր էին, այլ իւր ազգականներին և սպասաւորներին բաղդաւորացնելու վերայ: Օգտուելով այն բարեհաճ ուշադրութիւնից, որ տէրութիւնը դարձրեց նորա միջնորդութիւններին՝ կատարելով նորա երկու խնդիրները—1833-ին 10,000 րուբլի փոխ տալով Հայոց Մայր Աթոռին և 1836-ին 3750 րուբլի գանձարանից յատկացնելով Էջմիածնի Սինոդի դիւանատան պահպանութեան համար—նա մտածում էր Էջմիածնի տաճարի նորոգութեան և վանքում մի հիւանդանոց պահելու ծախսերն էլ պետական գանձարանի վերայ ձգել: Այդպիսի բաղձանքների կարգում հաւանօրէն պիտի ունեցած լինէր և Սինոդի անդամնե-

րին նոյն գանձարանից ռոճիկ նշանակել տալու փափագ. և երևի թէ նորա հաճութիւնով և թելադրութիւնովն էր, որ 1838 թ. հոկտեմբերի 26-ին սինոդականները տալիս են նորան յետագայ խընդրագիրը.

«Վեհաստիճան Կաթուղիկոս
Ողորմած Հովուապետ

Չի՛ք ինչ հարկաւորութիւն բացատրելոյ ատանօր՝ թէ 'ի պատճառս հարուստ ինչ ժամանակաց հետէ՝ խցելոյ ամենայն նշանաւորագոյն աղբերականցն արդեանց էջմիածնի, սուրբ Աթոռս որքան նեղութիւնս կրէ՝ 'ի սննդոյ և այլոց մասին վասն բազմագումար միաբանութեան իւրոյ. բայց այսու ամենայնիւ ըստ այժմեան բարձրագոյն կարգադրութեան պարտաւորեալ զբազումս առնել 'ի բարեկարգութիւն եկեղեցեաց սրբոց և եկեղեցականացն ամենեցուն: Չի՛ք ինչ հարկաւորութիւն յայտնելոյ ատանօր և զայն, թէ 'ի մասինս այսմիկ յոր վիճակի կայութեան գտանին միաբանք մեր. և վերջապէս չի՛ք ինչ կարօտութիւն լուսաբանելոյ և զայն՝ թէ մեք ութն անձինքս կալով յանել պաշտօնատարութեան Անդամակցութեան Սինհոդոսիս, առաւել քան զամենեսին զուրկ եմք մինչև իսպառ յամենայն արտաքին որ տեսակ և իցէ արդեանց: Չի՛ք ինչ հարկաւորութիւն բացատրելոյ ասեմք, զի քաջածանօթ է վեհափառութեան Ձերում այս ամենայն: Ըստ այսմ տեսանելով մեր զպակասաւոր վիճակ այժմեան դրութեան Աթոռոյս մեծի, արդարև պատկառելի լինէր մեզ խնդրել 'ի

վեհափառ օծութենէ Ձերմէ, կամ մի և նոյն է՝ 'ի սըր-բոյ Աթոռոյս՝ ընդաստ օգնականութեան ապրուս-տի։ Այլ այսու ամենայնիւ չունելով ինչ ուստեքէ այլ յոյս ապաւինի, մեք զամենայն զյոյս մեր եդեալ եմք 'ի Շնորհս ամենառատ ողորմութեանց Օգոս-տափառ բարերար Կայսերն մերոյ՝ յորոյ յանհուն ադ-բերէ ամենառատ շնորհացն բարեգթութեան լիուլի լիանան միօրինակ ամենայն ազգք և ազինք՝ որք ընդ Նորին բարձրագոյն հովանաւորութեամբ, հայք և ռուսք, քրիստոնեայք և մահմետականք։ Ուստի այսու ամենախոնարհ խնդրանօք մատչիմք առ վե-հափառ օծութիւն Ձեր, որպէս զի Դուք, Ողոր-մած Ճովուապետ, 'ի դալ անառն կուսակալին Վրաս-տանի յայցելութիւն մեծի Աթոռոյս սրբոյ խընդ-րեսջի՛ք զմիջնորդութիւն Նորին առ Աթոռով Ն. Կ. Մ. յաղագս շնորհելոյ իւրաքանչիւրում 'ի մէնջ ըստ արժանաւորութեան պաշտօնի մերում զտարեկան սնունդ ապրուստի. որպէս զի մեք ան-հոգս լեալ զմերոց կարեաց, անվրդով վարեալ զծայ-րագոյն պաշտօն մեզ յանձն եղեալ 'ի Նորին Կ. Մեծութենէն յօգուտ և 'ի շահ սրբոյ Հայաստա-նեայց եկեղեցւոյ և բանաւոր հօտին Նորա, օրհնես-ցո՛ւք միշտ և հանապազ զփառաւոր անուն ամե-նաողորմած Կայսերն մերոյ և օգոստափառ տան Նորին, 'ի պարծանս մեծի անուան վեհափառ օծու-թեան Ձերոյ։

ամենախոնարհ ծառայք.

արքեպիսկոպոս Հայոց Բուրսեդ.
Վեհապետեան Յովսէփ արքեպիսկոպոս

Ղուկաս արքեպիսկոպոս.
արքեպիսկոպոս Ստեփաննոս Արարատեանց.
Յովհաննէս վարդապետ Ղրիմեցի.
Սահակ վարդապետ Սողոմոնեանց.
Յովհաննէս վարդապետ Վաղարշապատցի.
Յովհաննէս վարդապետ Ճահկաթունեանց»:

Զգիտենք թէ կաթողիկոսն այդ խնդրի առիթով ունեցա՞ւ գրագրութիւն Կովկասի կուսակալի հետ՝ թէ ոչ. միայն երկու տարուց յետոյ, 1840 թուի ապրիլի 10-ին գրում էր Խաչատուր աղա Լազարեանցին. «Յիսուսի Քրիստոսի ծառայ տէր Յովհաննէս և այլն: Յայտնի է արդէն Ձերումդ Գերազանցութեան, զի սկսեալ 'ի 1837 ամէ բազմիցս թղթակցեալ եմ ես ընդ զեներալ ադիւտանտ բարոն Ռոզենի և ընդ զեներալ Գոլովինի 'ի մասին դրամաւոր օգնականութեան վասն սրբոյ Աթոռոյս էջմիածնի և այլոց առարկայից, առ որ յամեանն անցելում ստացայ ես զպատասխանի յՇւզենի Ալէքսանդրովիչէ, թէ տ. կառավարողն Նախարարութեան ներքին գործոց անկարեւոր վարկաւ մատուցանել զայնմանէ զամենահպատակ զեկուցումն Թագաւոր Կայսերն, այլ յանձնէ ինձ, եթէ ցանկամ, խնդրել զայսմանէ ուղղակի Նորին Կայսերական Մեծութեննէ: Բայց յայսմանէ սիրելին մեր և ջերմեռանդ որդի Սուրբ եկեղեցւոյ մերոյ Պրոկուրորն Լուսաւորչեան Սինհոդոսի ծանոյց մեզ 'ի նամակաց Ձերդ Գերազանցութեան առ նա, նախ՝ զարժանագով դատողութիւն Ձեր 'ի մասին նախնթացաբար ծանուցանելոյ Ձեզ ըստ թղթակցութեանց և գործոց էջ-

միածնի առ Հասարակ։ Երկրորդ՝ 'ի մասին Հայաստանեայց Լուսաւորչեան դաւանութեան, որ ըստ կարծեաց վաղեմի հոգեւորականաց՝ այնքան անխրաւացի ենթարկի բամբասանաց և ընդդէմ որոյ արժան է ընկալնուլ զօրինաւոր միջոցս 'ի լռումն և 'ի յայտ ածել զճշմարտութիւն, և երրորդ՝ թէ տ. կառավարողն նախարարութեան ներքին գործոց ոչ այնքան յօժարամիտ է առ իս և առ Աթոռըս Էջմիածնի։ Այսուքիկ ամենայն բացասիրտ և մաքուր մտադրութիւնք Ձեր և նախազգուշացուցանելդ՝ ընկալեալ 'ի նշան յատկաւոր Ձերդ Գերազանցութեան բարեմտութեան առ Պատրիարգական ամենայն Հայոց Աթոռս և առ Հասարակ առ միաբանութիւնս բազմադարեան Էջմիածնի, նոյնպէս և անփոփոխելի ջերմեռանդութեան երեւելի տան Ձերոյ առ Հայրենի սուրբ Եկեղեցին Ձեր, Ես զաննահանջելի իմն պարտաւորութիւն համարիմ ինձ յայտնել Ձեզ զամենազգալի զիմ գոհունակութիւն. և ընդ նմին 'ի միասին խնդրել 'ի Ձէնջ խոնարհաբար հաղորդել ինձ զՁերդ դատողութիւն և զխորհուրդ. առաջին, որպիսի եղանակաւ սկիզբն առնել ձեռնարկութեանց համեմատ վերջին պատասխանւոյ տեառն նախարարին, յաղագս խնդրելոյ յառատութեննէ Թագաւոր կայսերն զօգնականութիւն ըստ առարկայիցս՝ դրամաւոր օժանդակութեամբ ի նորոգումն տաճարիս Էջմիածնի, 'ի շինութիւն յԷջմիածին յարքունուստ փոքրիկ հիւանդանոցի և 'ի նշանակումն անդամոց Լուսաւորչեան սինհոդոսի ռոճկի 'ի տէրութեննէ, ըստ օրինակի հոգեւոր Ատենից այլոց

օտարազգի դաւանութեանց: Երկրորդ, ո՞րպէսի ճանապարհաւ և ընդ ձեւն որո՞յ մատուցանել արժան է ինձ զբացատրութիւն իրաւանց մերոց 'ի բարեզննութիւն տէրութեան, ընդդէմ ոմանց նորաւուրց հեղինակաց անիրաւաբար ենթարկելոյ նոցա զեկեղեցին մեր կշտամբանաց և բամբասանաց, որք օտար են նմին և նորայն վարդապետութեան, և զո՞րպիսի այլ ես ընկալնուլ զօրինաւոր միջոցս 'ի պաշտպանութիւն դաւանութեան մերոյ յորամանց անուղիղ դատողութեանց զանազան հեղինակաց յայս մասին: Եւ երրորդ՝ չ'տեսանելով յիմոյս կողմանէ զպատճառանս ինչ, որք կարողասցին տեղի տալ անբարեմտութեան տ. կառավարողին ներքին գործոց Նախարարութեան առիս և առ Աթոռս Էջմիածին, թէպէտ կարի վշտալի է սրտիս այդպիսի եզրակացութիւն զմէնջ նորին պայծառափայլութեան, սակայն չգտանելով զայլ հնար՝ ուղղելոյ զնորայն դատողութիւն, խնդրեմ 'ի Գերազանցութենէ Ձերմէ զխրատական բանս, թէ ո՞րպիսի եղանակաւ կարացից գրաւել զմիտս տ. կառավարողին Նախարարութեան, և վասն հաստատելոյ զբարեկամական շաղկապս ընդ նմա՝ զո՞րպիսի միջոցս նախապուշակէք Դուք: Ընդ սմին յայտնելով զպատրաստութիւն իմ 'ի մասին նախապէս ծանուցանելոյ Ձեզ ըստ գործոց Էջմիածնի առ. հասարակ, ո՛չ դնիմ արարից այսուհետև զամենայնէ հաղորդել Ձերումդ Գերազանցութեան և խնդրել 'ի Ձէնջ զխորհուրդս և զգործակցութիւնս: Առ այս ամենայն վերադրեալսն ունիմ սպասել 'ի Գերա-

զանցութեննէ Ձերմէ բաւականացուցիչ պատասխանւոյ, և ընդ նմին 'ի միասին սրբազան պարտաւորութիւն ինձ վարկանիմ մաղթել առ Ամենաբարձեալն՝ յաղագս առաքելոյ ի Ձեզ զզօրութիւն և զկարողութիւն 'ի յարազուարճ քաջողջութեան և ի կատարեալ յաջողութեան առ հոգունակութիւն յօգուտ հայրենի եկեղեցւոյ և պատրիարգական ամենայն հայոց Աթոռոյս՝ հովանաւորելոյ ի Մեծէ Օծելոյն յԱստուծոյ Օգոստափառ Թագաւոր կայսերէ մերոյ» [31]։

## Է.

Նշանակուելով նորահաստատ Սինօդի անդամ՝ Յովհաննէս վ. Շահխաթունեանցը մնաց այդ պաշտօնի մէջ մինչև իւր մահը, կատարելով միևնոյն ժամանակ և ուրիշ պարտաւորութիւններ ու յանձնարարութիւններ թէ՛ մայր Աթոռում և թէ՛ Աթոռից դուրս։ 1837 թուին Սինօդի հրամանով նա կազմել է Ս. Էջմիածնի գրատան ցուցակը [32]։ Մի քանի խօսք ասենք այդ գրատան դրութեան մասին։ Երբ որ 1834 թ. նախարար կոմս Գօլիցինը խնդրել էր Թիֆլիզի առաջնորդ Ներսէս արքեպիսկոպոսից օրինակել տալ իւր համար Էջմիածնի գրատան պատմական ձեռնագիրները, Ներսէսը նոյն թուի դեկտեմբերի 27-ին գրում էր նորան.

«Պայծառափայլ գրաֆ Նիկոլայ Պետրովիչ
Ողորմած Տէր։

Ընդ դարս յաւիտենից աշխարհիս այսօրիկ իսկապէս գովեստից արժանաւոր հոգեշարժ իղձ ձե-

բումդ Պայծառափայլութեան ըստ Եպիսկոպականն Իշխեցողի Պաղոմեայ գրասիրի ի լեզուս բազմաց ներբողեալ վերահռչակի։ Բայց ապաբախտ եմք առաւելապէս մեք ամենայն հոգևորականք հայոց՝ ով Պայծառափայլ կնիազ ողորմած տէր, զի յաւուրս մեր բազմահարուստ գրատուն Արարատեան Աթոռոյ սրբոյ Կաթուղիկէ Էջմիածնի այնպէս կողոպտեալ ի յաւար մատնեցաւ, մինչև ինքն ահաւասիկ ամենապատիւ սրբազնագոյն Պատրիարգն այնմիկ Քրիստոսահիմն Աթոռոյն ամենայն հայոց՝ Եփրեմ, ամենաջերմեռանդ փութով բազում աշխատեալ ի լրումն ըղձից ձերումդ Պայծառափայլութեան, ցայս վայր ժամանակի հազիւ ուրեմն կարողացաւ երկուց պատմութեանց հայոց՝ Վարդանայ վարդապետի Բարձրբերդցւոյ և մատթէոսի երիցու Ուռհայեցւոյ առ ձեռն բերել զմի մի օրինակ միայն. յորոց առաջինն գրեցեալ յամի տեառն 1432. և երկրորդն յամի 1688։ Ահա ըստ հրամանի նորին բարձրագոյն սրբազնութեան յամի 1814 աստ ի Տփխիս քաղաքի օրինակել տուեալ զմի մի յերկաքանչիւրոցն ամենևիմբ համեմատ հեղինակին, մատուցանեմ ամենախոնարհաբար ի սպասու ձերում պայծառափայլութեան ի ձեռն ճառատարմին Արարատեան Աթոռոյ ամենայն հայոց՝ հայկազն վեհազնեայ Յովակիմայ Եղիազարեանց։

Այս արդարև երջանիկ բախտաւորութիւն իմն համարեալ լինի՝ եթէ գրատուն Արարատեան Աթոռոյն նախկին իւր հարստութեամբն լսէր զձեր այդպիսի քաղցր ձայն հրաւիրանաց ի կոչ հանդիսի

ձեռումդ բաղձացեալ ամենասիրելի գրատան․ բայց զի համատարած բռնութիւն աշխարհի յայսմիկ զա-րու տարաբաղդ արար և զաթոռ Հայկազնեայց ա-ռաւել ևս ի մասին յայսմիկ՝ աղաչեմ, զերկուս զայսոսիկ գրքոյկ փոքրիկ իբրև ընծայ, կամ մանա-ւանդ նշմարանք ջերմեռանդութեան կապտեալ գրատան Աթոռոյ Արարատեան՝ ընկալնուլ մար-դասիրաբար քեզ ի հանձս՝ Ողորմած տէր, և տալ տեղի ի կարգս մեծամեծ մատենիցն բազմութեանց նախադաս բազմել յասախձանս գրատան ձեռում Պայծառափայլութեան։ Եւ եթէ յաջողել ունիցի տէր՝ այսուհետև ևս որպէս նորին Սրբազնագոյն Քահանայապետութիւն՝ նոյնպէս և մեք ոչ անփոյթ լինիմք հետևիլ, յաղագս այլովքն ևս սպասաւորե-լոյ ձեռում գրատանն։

Ողջ լեր՝ և մեք խսկական ջերմեռանդութեամբ
հոգւոյ մերում եմք և մնամք
Ողորմած տէր
Ձերոյ Պայծառափայլութեան
ամենախոնարհ ծառայ և
մշանջենապէս աղօթարար
Նուաստ արքեպիսկոպոս Հայոց Վրաստանու
և այլոց Ներսէս Աշտարակեցի»։

Մսեր Մսերեանցը մի քանի տող նուիրում է այդ գրատան գրութեանն, ինչ որ ինքը տեսել է քանակեան Թուականների վերջում և այն փոքր ի շատէ կարգաւորութեանն, որ Ներսէսն է հրա-մայում անել 1828 Թուին, երբ ինքն Երևանումն

էր իբրև երկրի ժամանակաւոր վարչութեան անդամ. «Ի վերայ սեղանատան, ասում է ականատես Մսերը, է գրատունն, յորում գնի բազմութիւն տպագիր և գրչագիր մատենից նորոց և հնոց։ Այս գրատուն զուրկ գոլով ի յատուկ պաշտպանողէ և միանգամայն անկեալ ի ձեռս տղիտաց՝ կայր անխնամ. մինչև բազմաց յընտիր մատենից ի կորուստ վարիլ և կիսոցն փտիլ. և այն՝ մինչև ցամ տեառն 1828, յորում ժամանակի եկեալ Մանուէլ վարդապետ Կիւմիւշխանեցի ի Ղրիմոյ, և տեսեալ զգրատունն յայնպիսի վիճակի խանգարման՝ եմոյծ զայն ի նորոգ կարգ և ի վայելչութիւն աշխատակցութեամբ իմ և այլ երկուց վարդապետաց, ըստ հրամանի Ներսէս արքեպիսկոպոսի, որ ունէր յայնժամ ընդհանուր իշխանութիւն ի վերայ էջմիածնի» [33]։

Երևի կամ շատ աննշան է եղել այդ «կարգն ու վայելչութիւնն» ինչ որ արուել է Մանուէլ վարդապետի և աշխատակիցների ձեռքով, կամ շատ շուտով դարձեալ տիրել է «անկարգութիւնն ու անվայելչութիւնն». ըստ որում երբ Նիկողայոս կայսրը 1837-ին էջմիածին եկաւ, գրատունը նորան ցոյց չտուին. գրքերը խառն ի խուռն ածուած սնդուկների մէջ՝ պահւում էին հանդերձատանը [34]։ Շահխաթունեանցի կազմած ցուցակի մասին, ինչպէս կտեսնենք ներքևում, գովեստով է խօսում հայագէտ Բրոսսէն. բայց թէ աւարտե՞լ է նա այդ ցուցակն և որքան պէտք է եկել այն էջմիածնի ձեռագիրներն ուսումնասիրել ցանկացողներին, չգիտենք։ Այդ գրութիւնով անցնում

է գրատունը Ներսէսի իշխանութեան։ Պէտք էր իրաւունքով սպասել թէ այն մարդն, որ իբրև եպիսկոպոս դեռ 1828 թուին ուշադրութիւն էր դարձրել մատենադարանի վերայ, իւր կաթողիկոսութեան միջոցին նորան ամենաբարեկարգ դրութեան կհասցնի, սակայն մեզ համար անհասկանալի պատճառով Մեծ Հայրապետն անուշադիր թողեց Էջմիածնի մատենադարանը։

Կայսր Աղէքսանդր Բ. դեռ գահաժառանգ միջոցին 1850 թուին Էջմիածին այցելած լինելով՝ ուշադրութեան էր առել այդ գրատան դրութիւնն և կանոնաւոր ցուցակագրութեան կարևորութիւնն. և ահա այդ այցելութիւնից 10 տարի յետոյ, 1860 թուի սեպտեմբերի 9-ին՝ Կովկասի փոխարքայի գըլխաւոր կառավարութեան պետը, Կրուզենշտերնը գրում էր Մատթէոս կաթողիկոսին.

«Ձերդ Սրբութիւն
Ողորմած Հովուապետ

Թագաւոր կայսեր Էջմիածին արած Բարձրագոյն այցելութեան միջոցին Նորին Մեծութիւնը բարեհաճել է ուշ դարձնել նոյն վանքում պահուող գրքերի և ձեռագիրների ժողովածուի վերայ, որոնք կարգի բերուած չլինելով և սիստեմատիք ցուցակներ չունենալով մնում են անյայտութեան մէջ և ուսումնական աշխարհի համար անօգուտ. մինչդեռ կարելի է նորանցում կան գանձեր ոչ միայն հայկական, այլ և Արևելեան միւս ազգերի գրականութեան և պատմութեան համար։ Այս ի յայտ

ածելու համար այժմ Նորին Կ. Մեծութիւնը բարեհաճել է հրամայել, որ յանձնուի մասնագէտ ուսումնականներից մէկն ու մէկին որոշելու Էջմիածնի վանքի գրքերն և ձեռագիրները լեզուների և ուսումնական առարկաների համեմատ, կազմելու նորանց սիստեմատիք ցուցակները, նշանակելով նորանցում հնութիւնով և բովանդակութիւնով նշանաւորագոյն օրինակներն. և այդպիսի ցուցակներն ուղարկել Ժողովրդական կրթութեան Նախարարութեան։ Այս պատճառով և իշխան Ալէքսանդր Իվանովիչի յանձնարարութեամբ պատիւ ունիմ խոնարհաբար խնդրելու Ձեր Սրբութիւնից տեղեկացնել ինձ թէ ո՞րպիսի միջոցներ կան տեղումդ ցուցակները կազմելու համար»....

Այս գրութիւնը ստիպեց Մատթէոս կաթողիկոսին շտապել երեք վարդապետների յանձնել գրատան գրքերի դասաւորութիւնն ու ցուցակագրութիւնն և յայտնել ի գիտութիւն գլխաւոր կառավարութեան, որ բարօն Նիկոլայի միջոցով 1863 նոյեմբերի 12-ին գրեց կաթողիկոսին.

«Ձերդ Սրբութիւն
Ողորմած Հովուապետ

1860 թուի հոկտեմբերի 9-ին 500 համարով Ձեր սրբութիւնը բարեհաճել է յայտնել իմ նախորդին, թէ ի կատարումն Բարձրագոյն հրամանի դուք կարգադրել էք կարգի դնելու Էջմիածնի վանքի մատենադարանի գրքերն և ձեռագիրներն. և ընտրելով երեք վարդապետներ՝ յանձնել էք նո-

րանց կազմել սիստեմատիք ցուցակներ և որոշել գրքերը լեզուների և առարկաների, նշանակելով առանձնապէս օրինակների հնութիւնն և բովանդակութիւնը։ Պատիւ ունիմ խոնարհաբար խնդրելու Ձեզնից յայտնել ինձ, Մեծ իշխանին զեկուցանելու համար, թէ մատենադարանի կարգաւորութիւնն աւարտուա՞ծ է արդեօք. և եթէ ցուցակները կազմուած են, ուղարկել ինձ նորանց պատճէնները»....

Այդ ցուցակագրութիւնն է, որ կայ մինչև այսօր և կոչւում է Հրատարակողի անունով Կարինեանցի ցուցակ։ Թէ ցուցակագրութեան կոչուածների որքան հաւատարմութիւնով էին ծառայում այդ ազգային—եկեղեցական մատենադարանին, ապացուցանում է այն, որ նորանց գլխաւորը՝ Դանիէլ վարդապետը (յետոյ եպիսկոպոս), բաւական թուով ձեռագիրներ հատընտիր էր արել և վերցրել իւր համար և միայն նորա մահից յետոյ ձեռագիրները դարձեալ Ս. Էջմիածնի սեպհականութիւն եղան։ Այլ ևս չենք խօսում թէ որքան ուշադրութիւնով կազմած է յիշեալ ցուցակը. այդ նկատել և նկատում է ամէն մէկն, ով փոքրիշատէ նորանով առաջնորդուել է մատենադարանի ձեռագիրներն ուսումնասիրելիս։

Եթէ Յովհաննէս վ. Շահխաթունեանցն իւր կազմած ցուցակով Էջմիածնի մատենադարանի պակասութիւնը լրացնելու չափ յաջողութիւն չէր կարող ունենալ, գոնէ այդ մատենադարանը նորա ջանքերի և հոգատարութեան շնորհիւ շատ և շատ

ձեռագիրներով ճոխացել է. նոյն իսկ նորան ենք պարտական, որ այսօր մատենադարանն ունի այնպիսի մի թանգագին զարդ, ինչպէս է Մաղարթայի ս. Նախավկայ վանքից բերած նշանաւոր Աւետարանը: Նա իւր կեանքում չի ունեցել ոչ մի մասնաւոր կամ պաշտօնական շրջագայութիւն, երբ աշխատած լինի գրատան համար ձեռագիրներ ժողովել և բերել: Պօլօժենիայի հիման վերայ Շամախու թեմում վիճակային կոնսիստորիա կազմակերպելու համար Սինոդը 1838 թուին Շամախի է ուղարկում նորան. և ահա գործից օգտուելով՝ խնդրում է կաթողիկոսից իրան իրաւունք տալ, որ ճանապարհորդութեան միջոցում որտեղ վանքերում, եկեղեցիներում և կամ մասնաւոր մարդկանց մօտ տպագրութեան արժանի կամ առհասարակ նշանաւոր ձեռագիրներ տեսնի, բերի էջմիածին օրինակելու, եթէ չը համաձայնին թողնել Մայր Աթոռի սեպհականութիւն. և կաթողիկոսը նորա յայտագրի իմաստի համաձայն տալիս է նորան նոյն թուին հետևեալ կոնդակը. «Յիսուսի Քրիստոսի ծառայ տէր Յովհաննէս... բարձր արժանապատիւ Յովհաննու վարդապետի Շահխաթունեանց, սիրելի որդւոյ մերում... ի ճանապարհորդութեան Ձեր դէպ ի Շամախի ըստ կարգադրութեան և հրամանի Լուսաւորչական Հայոց Սինհոդոսի և ի վերադարձի ձեր անդրէն յԱթոռս՝ ուրև դէպ լիցի ձեզ լինել կամ հանդիպել. թէ ի վանորայս, թէ յեկեղեցիս մերազանց և թէ առ վարդապետս և առ քահանայս. և կամ առ աշխար-

հիկս, առ որս և լցէ՝ եթէ գտանիցին այնպիսի մատեանք ինչ՝ որք հարկաւոր գտեսցին մուծանելոյ ի տիպ, և կամ վասն հնութեանցն արժանաւորութեան առ համեմատութեան ընդ նոյնատեսակ մատեանս գրանոցի Աթոռոյս, հրամայեմք ձեզ և պատուէր տամք խոկ, զի զտեարս այնպիսի մատենից հաւատարմացուսջիք ի միամտութիւն վերստին անկորուստ ստանալոյ նոցա զեւրեանց զսեպհականութիւնն զայն. և ապա տուեալ դուք զձեռագիր արասջիք զայն մատեան, և բերեալ մատուսջիք յատեան լուսաւորչական հայոց սինհոդոսի ի տնօրէնութիւն նորա։ Եւ նոքին խսկ տեարք մատենիցն աներկմիտ լիցին ըստ ամենայնի, զի անկորուստ ստանալոցն են տուեալն զմատեան հանդերձ շնորհակալութեամբ»։

Սինոդի անդամութեան պաշտօնի հետ միասին Յովհաննէս վարդապետը զանազան ժամանակ վարել է և ուրիշ պաշտօններ—եղել է ս. Աթոռի տպարանի կառավարիչ, ժառանգաւորաց դպրոցի ուսուցիչ և յետոյ տեսուչ, վանական կառավարութեան անդամ և այլն։ Բայց այդ պարտաւորութիւնները չեն խանգարել նորան պարապելու և իւր սիրած գրաւոր աշխատութիւններով։ Նորա աշխատութիւններից մեր գրականութեան մէջ իրանց արժէքն ունին 1, Դաւիթ—Դանիէլեան անցքերի պատմութիւնն, որի մասին յիշատակել ենք իւր տեղում. 2, Ստորագրութիւն կաթուղիկէ էջմիածնի և հինգ գաւառացն Արարատայ. երկու հատոր, տպագրուած 1842 թ. «ի սուրբ կաթուղիկէ

Էջմիածին»․ մի աշխատութիւն, որ այսօր էլ դեռ ծառայում է իբրև օժանդակող աղբիւր Արարատեան նահանգի յիշատակարաններով հետաքրքրուող ուսումնականների համար։ «Ոչ փոքր օժանդակութիւն մատոյց, ասում է Հ. Ղ. Ալիշան, գրեթէ այդ հնացեալ՝ այլ արդիւնական Ստորագրութիւն Շահխաթունեան եպիսկոպոսին Էջմիածնի» 35)։ Իւր այդ աշխատութեան մի օրինակը ուղարկելով Ներսէս արքեպիսկոպոսին նուէր՝ գրում է նորան 1843 թ. մարտի 19-ին. «Դէպ եղև հաղիւ ուրեմն ինձ՝ Ողորմած Տէր, երբեմն յուսով ծանուցեալ ի Ձէնջ որդւոյ մատչիլ խոնարհութեամբ ի համբոյր հայրականդ սրբարար աջոյ. և ահա այսու ջերմեռանդութեամբ իմով նուիրեմ խոնարհ պատկառանօք զիմս վաստակ նախկին աշխատանաց, այն է՝ զտպագրեալն աստէն զերկհատոր Ստորագրութիւնն Կաթուղիկէ Էջմիածնի և հինգ գաւառացն Արարատայ՝ Ձերում բարձր սրբազնութեան, առ որ և լիայոյս եմ հանդիպիլ ներողամտութեան սակս ինչ ինչ թերութեանց յայտ երախայրիք իմոց աշխատանաց. և այնպէս վայելելով յորհնութիւն Ձեր, ողորմած տէր, առ ամենաբարձրեալն վասն իմ, կարող եղէց աշխատիլ և ես ըստ իմում պարտաւորութեանն առ հայրենիս»։ Մինչև Ներսէսը կստանար այդ նուէրն՝ արդէն հաստատուած էր կաթողիկոս ամենայն Հայոց և Պետերբուրգում էր, որտեղից հեղինակին կոնդակով շնորհակալութիւն է յայտնում ասելով.

«Ներսէս Ծառայ Քրիստոսի և այլն։ Սիրեցելոյ իմոյ որպէս սիրեցեալ հօր որդի և յուսալի ժա-

ռանդի Առաքելական Սուրբ եկեղեցւոյ Հայոց. սըրբազան Յովհաննէս եպիսկոպոսի Շահխաթունեանց, օն անդր մխիթարութեամբ խռով հոգւոյ նուիրեմ, զողջոյն Յիսուսաւանդ, ընդ նմին և զգերագոյն շնորհակալութիւն իմ լիուլի մխիթարութեամբ հոգւոյ իմոյ յաղագս նուիրանաց ձերոյ ինձ, զստորագրութիւնսն սրբոյ կաթուղիկէ Էջմիածնի, և հնգից գաւառացն Արարատայ: Փառք Աստուծոյ և փառք անսպառ ողորմութեանց նորա, որ արժանի արար զիս տեսանել զերկասիրութիւն վարդապետաց և եպիսկոպոսաց պատրիարգական Աթոռոյ ամենայն Հայոց, զոր համարիմ առհաւատչեայ այժմ, հետևեալ ծննդականութեանց անծնունդ միաբանութեանց սրբոյ մայր եկեղեցւոյ հայրենեաց, ըստ որոյ խնդրելն ձեր զներողամտութիւն սակս ինչ ինչ թերութեանց ի սոյն ձեր երախայրիս աշխատանաց հաւաստարմացուցանեմ զձեզ թէ թերութիւնք ի նոսին համարեալ լինին ինձ միապատառ անթերութիւնք. յայտնելով ձերում սրբազնութեան զհարստութիւն ուրախութեան իմոյ ի վերայ ձերոց երկասիրութեանց վերամատուցանեմ զաղերս ի բարձունս արժանացուցանել այնպիսի բարեշնորհութեանց իւրոց զամենայն զհոգևորականսն Աթոռոյ Էջմիածնի. և բոլոր ազգի Հայոց, և կամ և Մնամ օրհնաբան ձեզ և աղօթարար վասն ձեր և վասն կենդանեաց և ննջեցելոց բարեյիշատակ հօր ձերոյ»:

Եպիսկոպոսապետ կաթողիկոս և պատրիարգ
ամենայն Հայոց Ներսէս.

Համար 31
1843. նոյեմբեր 26
ի Պետերբուրգ:

Բացի այդ երկուսից նա, երևի, ունեցել է և ուրիշ մեծ կամ փոքր աշխատութիւններ, որոնք անհետացել են, կամ գոնէ մինչև այսօր յայտնուած չեն, ըստ որում նա սովորութիւն է ունեցել ամեն մի անցք իսկոյն գրի առնել, ամեն մի նշանաւոր դէպք նկարագրել[36]։

Իւր այդ աշխատութիւնն հրատարակելիս Շահխաթունեանցն արդէն եպիսկոպոս էր։ Նա ձեռնադրուել է 1841 թուի յունիսի 22-ին, իւր անուանակից Ղաիմեցի վարդապետի հետ միասին։ Այդ երկու վարդապետների այդքան ուշ եպիսկոպոս ձեռնադրուելու պատճառն ինքն ըստ ինքեան հասկանալի է, քանի որ ձեռնադրողը Կարբեցին էր. այլ թէ Շահխաթունեանցն իւր վայելած յարգանքով և համբաւով որքան վաղ արժանի համարուելու էր այդ աստիճանին, ցոյց է տալիս Ներսէս Աշտարակցու համարմունքը նորա վերայ և համակրութիւնը։ Կարբեցու մահից մի տարի անցած՝ 1843 թ. ապրելի 13-ին նշանակուած էր կաթողիկոսական ընտրութիւն։ Ներսէսը Քիշնևից նոյն թուի փետր. 18-ին Սինօդին գրած յայտարարութեամբ իբրև Բեսարաբիոյ առաջնորդ տալով իւր ձայնը արժանաւոր ընտրելիների մասին՝ նորանց թւում դնում է և երկու տարուայ եպիսկոպոսին։ Նա ընտրելի է համարում. «Առաջին... զԲրաղան Պօղոս արքեպ. որ երբեմն պատրիարք էր ի Կ. Պոլիս... երկրորդ՝ զԲր. Բարսեղ արքեպ. Նախապատիւ անդամն սինօդի Ս. Էջմիածնի. երրորդ՝ զԲր. Մատթէոս արք. Զմիւռնիոյ, զորոյ ի քանի ամաց

հետէ լսելի լինին ինչ ինչ հանդամանք արժանաւորութեանց. և չորրորդ՝ զորբ Յովհաննէս եպ. Շահխաթունեան» 37)։ Ս. Էջմիածնում գումարուած համազգային ժողովն ընտրեց իրան, Ներսէսին։ Յայտնի է թէ ինչ յոյսեր էին գրուած մեծանուն ընտրեալի վերայ։ Այն օրից, երբ ս. Էջմիածինը մտաւ Ռուսիոյ անսասան հովանաւորութեան ներքոյ, բոլոր հայերի ուշ ու միտքը դարձաւ դէպի նա. ամենքը սպասում էին, որ չարաղէտ վշտերից ու բարբարոսութիւններից ազատուած Մայր Աթոռն, իրանց հոգևոր-բարոյական կենդանութեան այդ խարիսխը շուտով պիտի թօթափի իրանից խաւարամած ազիտութեան փոշին և նուիրուի իւր հօտի կրթութեան և յառաջադիմութեան գործին. սակայն ի զուր. կաթողիկոսական գահը բարձրացաւ Յովհաննէս Կարբեցի, որ իսկական պատկերն և ներկայացուցիչն էր այն հոգևորականութեան, որի մասին դառնագին վշտով գրում էին իրան Եղիազարեանց եղբայրները Մոսկուայից 1832 Թ. փետրվարի 4-ին. «Նորապսակ Առաքելապաշտօն Սրբազնակատար Վեհապետ

Ողորմած Տէր և Հայր

Առաջին հայրապետական կոնդակ ձեր լի անդրանիկ օրհնութեամբ նորապսակ օծելոյդ ձեռամբ բարձր արժանապատիւ Տազմարդիւն Միքայէլ վարդապետին մերոյ հասեալ արար զմեզ բարեյոյս վըստահութեամբ այսպիսեայ բարեկարգութեանց ձեռամբ նոր Ճարտարապետիդ հնացեալ սրբոյ տանդ յօրինելեաց. այո, Տէ՛ր Սրբազնակատար՝ հնացեալ ցու-

ցաւ տունդ այդ Աստուածակերտ, որ երբեմն առ նախնեօք պարծանք էր ազգիս, զի 'ի նմա սրբութեամբ վարուց և մեծիմաստ գիտութեամբք պայծառացան հռչակաւոր աթոռակալք, Ներսէս, Իսահակ, Մեսրովպ, Գիւտ, Օձնեցի, և այլ անթիւք, իսկ յետ բազմամեայ խոպանութեան Աթոռոյդ՝ և վերստին լինութեան կամօք բարձրելոյն ի հնգետասան դարէն և այսր, արժանաւոր աթոռակալք Լուսաւորչին եղեն և ցուցին զինքեանս ոչ սակաւք, մանաւանդ Մովսէս Կաթողիկոսն տաթևացի, որ բաց 'ի նիւթական շինութեանց պայծառացոյց զԱթոռդ և զպրատամբ և ուսմամբք զանազան գիտութեանց. յաջորդ նորա Փիլիպպոս կաթողիկոս, որ ածեալ այլուստ զՍիմոն Ջուղայեցի և զայլ վարժապետս կրթեաց զմիաբանս Էջմիածնի ի բազում գիտութիւնս. Յակոբ կաթողիկոս Ջուղայեցի գրասէր, որ ընդ զանազան շինուածոց Աթոռոյդ՝ ծաղկեցոյց յոյժ զտպագրութիւն հայկական գրոց օգնութեամբ և դրամովք իւրովք 'ի ձեռն Ոսկան վարդապետի և ընկերաց նորա. Սիմոն կաթողիկոս բազմերախտ, որ բազում տառապանօք եբաց յէջմիածին զտպագրատուն և տպեաց զբազում մատեանս. իսկ յետ մահուան Ղուկաս կաթողիկոսի և այսր բարի ինչ ոչ լուաք զաթոռակալաց դորին, բաց 'ի զանազան անկարգութեանց և 'ի չփոթութեանց. բայց այժմ զի շնորհօք ամենակարողին տունդ այդ ազատեալ ի բռնաւորութեանց պարսից հանգեաւ ընդ քաղցր կառավարութեամբ տէրութեան Ռուսաց, և զի հաճութեամբ նոյն Ամենակալին հոգևոր

տէրդ օծաւ գլուխ ազգի և եկեղեցւոյ մերոյ, անհանգիստ ակնկալութեամբ սպասեմք մանաւանդ թէ հաւատամք տեսանել ձերդ ձեռամբ զառաջին բարեկարգութիւնն տեղւոյդ ըստ հոգևորին և ըստ մարմնաւորին, զի վերստին ծաղկեսցի առ ձեզ հոգևոր դպրատուն վասն վարդապետաց, պայծառասցի հայկական լեզու և դպրութիւն ըստ օրինակի վանացն Մխիթարեանց, պակասեսցին անուսումն և անկիրթ եկեղեցականք, բազմասցին զանազան լեզուագէտ և իմաստուն մշակք Աստուծոյ, արժանաւորք միայն ընտրեսցին 'ի պաշտօնն աստուածային և անարժանք մերժեսցին. 'ի բաց լիցին յաստուածակերտ գաւհէդ ամենայն անկարգութիւն, տգիտութիւն, անմիաբանութիւն, գայթագղութիւն, հոգի պարսկային և այլ ամենայ անվայելչականք, և վասն այսորիկ ի ներքս ածցին կատարեալ սրբութիւն եկեղեցական հովուաց, ուսումն իմաստութեանց լեզուաց և արուեստից, միաբան եղբայրասիրութիւն, և բարի օրինակաւ լինութիւն աշխարհականաց. զայսպիսիս և զառաւել քան զգօսին պտղաբերեսցէ մեզ ձերդ հոգևոր քահանայապետութիւն. զի այժմ աչք ամենեցուն առ ձեզ հային թէ զի՞նչ ունիցիք գործել և ո՞րպիսի օրինակաւ ունիք վարել զիշխանութիւնդ. բարեկամք ձեր սպասին լսել զբարեկարգութիւն ձեր և պարծենալով փառաւորել, թշնամիք և հակառակորդք ձեր՝ առանց որոց չկայ մարդ յաշխարհի, սրեալ զաչս և զականջս գուն գործեն արատ ինչ տեսանել կամ լսել զձէնջ, և ապա ծափ զծափի հարեալ պար բոլո-

րել ուրախանալ, քամբասել և վստահամբաւել զձեզ։ Ուրացեալքն յԱթոռոյդ լատինահայք սրեալ և գեղեալ զգրիչս՝ կան ի պատրաստի 'ի գիր անցուցանել զոր ինչ գործէքդ և տպագրութեամբ առ ամենեսեան տարածել . և ոչ դոքա միայն . այլ և օտարազգի եւրոպացիք , Գերմանացիք , Գաղղիացիք և Ռուսք իսկ զգոյն առնելոց են , զոր մի' կարծէք թէ կարծեօք առեմք ձեզ, այլ անտարակոյս ականատես ստուգութեամբ . վասն զի ցաւօք սրտի մերոյ տեսաք և ընթերցաք զնոր պատմութիւն մի զազգէս Հայոց, զոր գերմանացի ոմն Ծանօթ մեզ Շուպէրտ, անուն նստեալ 'ի Բեղրպուրկ դաստառ և կարգավար դպրոցի իւրեանց, գերմանացի լեզուաւ տպագրեալ է անդ իբր չորս ամիս յառաջ և տարածեալ յամենայն աշխարհ։ Երանի' թէ գիտէիք դուք զայդ լեզու, առաքէի և ընթեռնուիք զգիրսն զայն . ոչ կարէիք չարտասուել և առ ամօթոյ կորանալ . բարի ինչ ոչ խօսի վասն հոգևորականացդ . Աթոռն էջմիածնի, ասէ , թէպէտ գլուխ է ազգին Հայոց՝ բայց չունի և ոչ հասարակ դպրատուն մի վասն իւրոյն. աթոռայինք ամենայն վարդապետք և եպիսկոպոսք տգէտ են, ասէ. գբերականութիւն իսկ ոչ գիտեն, այլ միայն ուտեն և ըմպեն, յայգէգործութիւն պարապին, ոսկի և արծաթ հաւաքեն , փառաց և պատուոյ զհետ լինին, և այլն և այլն. Ճառէ ևս զվերջին կաթողիկոսաց և զանցեալ տարաձայնութեանց ի ժամանակս նոցա։ Ներբէս եպիսկոպոսն սխալ, ասէ, լուսաւորել զազգն, բայց վասն բազում երգելանաց ոչ ժա-

մանեաց 'ի կատար հասուցանել: Խօսի ևս ի վերայ հաւատոյ և դաւանութեան մերում և ի վերայ աշխարհականաց և այլ իրաց ։ Զայսպիսիս ընթեռնլով անչափ տրտմիմք մեք, տեսանելով մանաւանդ, թէ նոքա յոյժ գովարանեն զՄխիթարեան վարդապետսն վասն գիտութեան նոցա և վասն տպագրութեամբ օգտակար գրոց լուսաւորելոյն զազգն մեր. և փափագիմք զի և այդ սուրբ Աթոռըդ նոյնպէս գովելի և բարեհամբաւ լինիցի զոնէ այժմ յետ ազատելոյն 'ի բռնաւորութենէ պարսից. առ այդ վախճան և բարեյիշատակ նախնիք տանս մերոյ կանգնեցին աստ զՃեմարանս, և մեք այժմ երեք եղբարքս անդադար աշխատիմք վասն առաւել պայծառացուցանելոյ զայն և զմանկունս ազգիս. նովին հոգւով աղաչեմք զսրբազնակատար վեհապետութիւնդ զի հոգ և խնամ տարջիք հոգևոր շինութեան և բարեկարգութեան Աթոռոյդ և միաբանիցդ. մարմնական ինչ օգուտ և շահ ոչ կարօտիմք ի ձէնջ՝ Տէր Սրբազան, այլ միայն զհոգևոր գիտնական պայծառութիւն ձեր խնդրեմք, զի պարծանք լիջիք ազգի և եկեղեցւոյ մերում, զոր դիւրաւ կարող էք կատարել հաւաքելով առ. ձեզ զազգաշահ և զիմաստուն մշակս, յորոց միջի այժմ երևելի է, որպէս դուք իսկ վկայէք, աշխատաւոր Ներսէս Արքեպիսկոպոսն վիճակիս, վասն որոյ պատշաճ համարիմք զի ձերդ առաջարկութեամբ առ մինիստրն դարձեալ կարգեսջիք զնա յառաջին թեմն իւր, որ այժմ պարապ է, ի վիճակն վրաստանի, զի մօտ և գործակից լինիցի ձեզ յամենայն բարի գոր-

ծրս, ըստ որում առաջին և բազմաշխատ անձն է. և ժողովուրդք տեղւոյն սիրեն զնա և կամին ըզլինելն նորա անդ. և ցանկամք զի դուք առաւել ևս սրտայօժար կապակցութիւն ունիցիք ընդ նմա, ունելով 'ի նպատակ զօգուտ և զբարեկարգութիւն ժողովրդեան մերում. նմանապէս և լսեմք թէ Կարապետ եպիսկոպոսն Ախսխայու ծառայութիւն արարեալ է տէրութեան և ազգի մերում, զոր կարէք կարգել ի վիճակն Ներսէս եպիսկոպոսի՝ եթէ զսա տանիք ի Վրաստան:

Բարձր պատւոյ արժանաւոր Միքայէլ վարդապետն մեր այս տասներրորդ ամ ջերմեռանդն ծառայէ մեզ և ճեմարանիս և լուսաւորութեան ազգիս, որ և տպագրեաց զհարկաւոր մատեանս ի ջատագովութիւն հաւատոյ և ուղղափառութեան մերս սուրբ եկեղեցւոյ. նա խնդրէ ի մէնջ արձակել աստի և դալ ծառայել Ձեզ, որ թէ ոչ խափանեսցի յանկարծ ինչ արգելանաց՝ կատարեսցուք զխնդիր նորա յայսմ ամառան զի մերս աղաչանօք ամբարձջիք զնա ի բարձր աստիճան որում արժանի է:

Ամենայն ընտանիք մեր, քորք և փեսայք համբուր սիրոյ մատուցանեն Քրիստոսակիր աջոյ Ձերում, ես և վաստակաբեկ ծերունափայլ Եփրեմ սրբազնակատար հայրապետին, որում վասն չոալոյ դժանդրութիւն ոչ կամեցաք յատուկ գիր գրել:

Ցանձն արարեալ զմեզ երկնառաք աղօթից և
օրհնութեանց Ձերոց
Մնամք բազում վերապատուութեամբ
ամենախոնարհ ծառայք
Յովհաննէս և Խաչատուր Լազարեանք.

Սակայն ինչ էլ գրէին և որքան էլ գրէին, Յովհաննէս կաթողիկոսի համար ուրիշ դրութիւն, ուրիշ կարգ ու կանոն և ուղղութիւն անհասկանալի էին միանգամայն, թող թէ անիրագործելի. և նա անշեղ հետևելով իւր տեսածին և սովորածին՝ իւր մահից յետոյ թողեց մի միաբանութիւն, որի տխուր հաշւակը մինչև անգամ Բարձրագոյն անբաւականութեան առիթ տուեց, ինչպէս տեսնում ենք յետագայ նամակից, որ գրուած է «Առանձինն» 1843 թուի դեկտ. 30-ին Պետերբուրգից (ուր գտնւում էր այդ միջոցին Ներսէս Կաթողիկոսը) տեղապահ Բարսեղ արքեպիսկոպոսին։

Ձերդ Բարձր Սրբազնութիւն
Ամենաողորմած հոգևոր ծնող իմ։

«Յառաւելութենէ բազմապատիկ մինչև ցայսօր բանաւոր պատճառաց անագանեալ իմ ի գրաւոր բանախօսութիւն Վեհապատիւ սրբազան ծնողիդ իմ. նո՛ր ահա՛ եկաւորիմ առ այն.... ի սկզբան այսոցիկ ամենայնի աղաչեմ ես զսրբազան ծնողդ իմ, զի որպէս բնաւորութիւն է միշտ խորագիտագունից քան զձեզ, և դուք նոյնպէս միայն խելամուտ լինելով ի ձերում գրոյ շարամանութեանցն բանից խորհուրդ պնդագոյն ի ձեզ կալեալ՝ մի ումեք յայտնեսջիք զայսցանէ, զի ցայսօր որպէս յայտնի իսկ է ներհակ առաքելական պաշտելի շնորհաբանութեանց, հաւատացեալ ձեր ամենայն հոգւոյ և զամենեսին բարեացակամ հարազատ ձեզ կար-

ծնալ, անտեղեակ որոց ի ներքոյ շրթանց նոցին թուենից՝ միշտ կրեալ էք զանակնկալ վնաս ընդդէմ անուան և զգուշալի համբաւոյ ձեր սրբազնութեան։ Ցայսօր որպէս ի գրութեանցն սորին գերազանցութեան աղայ Խաչատրոյ Յովակիմեան Լազարեանց, նոյնպէս ի սորին վեհափառութենէ բազմօք յայտնի լեալ են ձեզ լուր սատակազին հիւանդութեան նորին սրբազնասուրբ անձին. և իբաւի՝ ի քնքուշ ծերութեան սորին հասակի՝ որպէս նորօրինակ իմն էր այն տկարութիւն նորին. այնքան և անհամեմատ շնորհ աստուածեան սքանչացոյց ի նա զիւր մարդասիրութիւն։ Յայնմ անյուսալի գրութեան վեհափառութեան սորին, ցոյցք զանազան անձնազոհ մարդասիրեալ սատարութեանց սորին բարերար վեհազնեայ գերազանցութեանց անօրինակ հանդիսացան ի պատիւ և ի շնորհուկս ազգականութեան մերում. վասն զի վեցեկլին ամենահմուտ բժիշկք տեսեալ՝ թէ ոչ ազդեն ի կողմն բարելաւութեան անձին նոցին կըրթականութիւնք, հրաժարեալ էին միախորհուրդ բացարութեամբք. յորմէ և մեր ամենեցուն հանդերձ այլ ամենայն հարազատութեամբք մերազնեայ ժողովրդովք, թացեալ աչօք ի ջուր արտասուաց՝ շուրջ զանկողնով նորին մնայաք ի սպառումն վերջին շնչոյ նորին իսպառ անյուսութեամբ։ Ապա յայնմ վայրի եկեալ ի միտս սորին բարերար վեհազնութեանց [illegible] կամելոյ զերծ ունիլ զինքեանս ի խղճահարութենէ, յուսակտուր իմն՝ ձեռս արկին մինչև ցնոյն [illegible]էտ անհաւատալեացն բազմաց.

և յօգնականութիւն անդգայացեալ հիւանդիս հրաւիրեցին զոմն նորօրինակ բժիշկ զԷնարալ Անդրէյ Իվանիչ Պաշկով կոչեցեալ և նորին յառաջարկութեամբ զպառաւ կին ոմն, զուստր գրաֆի, որ բնակէր 190 վերստ բացակայ ի Ս. Պ. Բուրգայ, Կատերինայ Ալէքսանդրովնայ Վիսկավատով կոչեցեալ և նոյն Ղէնարալ Պաշկովն արուեստիւ համակրութեան որ ի նոսա ասի սիմբաթեչեսկըյ, յայնմ օրէ սկսեալ մագնիզերավայթ առնել զօրին քահանայապետութիւն յանկողնի իւրում, և 'ի շաբաթոջ միանգամ զայն պառաւ կին Վիսկավաթով արհեստիւ ննջեցուցեալ նորա ի քուն արթնական թըմրութեան՝ հարցանէր ցոյն կին, թէ զի՞նչ իցէ տկարութիւն սորին Վեհափառութեան, և թէ՝ զի՞նչ դեղ առողջութեան նորին. յորմէ այսօրինակ ընկալեալ զպատգամ, նոքօք այն Պաշկով ձեռս էարկ բժշկել զհիւանդութիւն վեհապետիս, որով ի միջոցի երից շաբաթուց աստուածահրաշ իմն ներգործութեամբ յարուցեալ ի մահահրաւէր յանկողնոյն՝ ետ կոխիլ զգետին, և նստոյց յաթոռ. և ահա զերկուս ամիսս աւելի են, զի սորին բարձրեալ վեհափառութիւն գտանի թեւակոխեալ յառողջութիւն ի դագաղաց յարուցեալ. իսպառ չունելով զնշան հիւանդութեան ; թէպէտ՝ այսպէս ողջանդամ է նա ի միջոցիս, բայց տակաւին գտանի ընդ կառավարութեամբ այնր Պաշկով Ղէնարալի: Ըստ այնմ հաւաստի լիցի ձերդ սրբազան հայրութիւն ևս, զի աներկբայելի է առողջութիւն սրբազնագոյն քահանայապետութեան սորին, որ

ըստ առաջին դրութեանցն նստե ի Հանդլիսի և պարապի յիւրապատկան խորհրդածութիւնս:

Ծանի՛ր սրբազան ծնող իմ. նախ քան զգումարումն ժողովոյդ այդրէն յԱթոռդ, կարի վայելչագոյնս հնչէին համբաւք տեսակաւորք կառավարութեանց սրբազնագոյն Սինհոդոսի, նոյնպէս և իւրաքանչիւր անդամոց նորին արժանաւորութիւնք բարեվայելչութեանց, նա մանաւանդ սրբազան ծնողիդ իմոյ գերարժանաւորութիւնք յամենայն համազգական պատշաճելի կառավարութիւնս՝ յոյժ պանծալի համբաւեալ էր ի լսելիս մեծի և փոքու ազգականութեան մերում. որք յայսոսիկ կողմունս. որովք և սոցին բարեբաղծ վեհազնութիւնք այնքան հարեալ էին ի սիրելութիւն ձեր սրբազնութեան, և այնքան ջատագովէին զձեզ ի Հանդլիսի գերարդւոյ մեծանձնութեանց մինչև ամենեցուն նոցա փառաւորիլ ի սիրտ և ի միտս և բարեբախտ համարել ձեօք զտեղիդ սրբութեան, և զազգ մեր զլխովին:

Բայց յաւարտ այնց ամենայնի խորհրդածութեանց ՚ի վերադարձի անդրէն նոցուն արժանանձնութեանց Ժօլթուխինի և պարոն Ցակովբայ Եսայեան Հայրապետեանց, կարեմ ասել, թէ ի հարիւրաւորէն մինչև ցերեսնաւորն ի վայր խոնարհեցան սկսեալ ի մեծագունիցն մինչև ցամենափոքր Աթոռոյդ համբաւք վայելուչ բարեմարդութեանց: և յայսմ՚իսիս՝ առաւել յոյժ արժանաւորութիւնք ձեր սրբազնութեան կեղտեալ և յանիրաւի մրծրտեալ հռչակիւր, ցաւելի ինձ յականջս ամեցուն.

բայց անուն և համբաւ տեառն Յովսեփայ և Արարատեան Ստեփաննոսի խապառ եղծեալ ի թուոյ հոգևորականութեանց ազգիս, մինչև հալածելի համարեալ զնոսա։

Նոյն մեծաստիճան ծոր(լ)թուխին ի ճըշմարտութիւն այսոցիկ ամենայնի տեղեկութեանց իւրոց, ի գալն իւր աստէն, գրաւոր բանիւ իւրով տուեալ է ի ծանօթութիւն մինիստրի ներքնային գործոց՝ ըստ որում էր օրէն . յետ որոյ եկեալ ի տես սրբազնագոյն քահանայապետի՛ս ի ներկայութեան վեհազնեայ տեարց, ամենայն հանգամանօք ևս եհեղ ի լսելիս նոցին զամենայն անպակաս. ապա՝ յետ սակաւուց մինիստրութիւնն ևս յիւրում պարտուպատշաճ ծանօթութեան գրաւոր բանիւ և համարօք, յայտնեալ էր ի լսելիս ամենաողորմած Կայսեր, և նորին Կայսերութիւնն ընթերցանութեամբ հասու եղեալ ամենայնի տեղեկութեանցն այնոցիկ՝ ստորագրեալ էր ի նմին գրչաւ իւրով այսպէս. ընթերցայ և տեղեկացայ յոյժ անբաւականութեամբ։ ի տեղեկանալ սորին Վեհափառ քահանայապետութեան այնոցիկ ամենայնի թէ բանիւ ծոլթուխինի և գրով մինիստրի հասեալ են առ թագաւոր կայսրն այնպիսի կեղտանունութիւնք Աթոռոյն և Աթոռայնոցդ, այնպէս զգծեցաւ ի սիրտ և ի միտս մինչև հարկաւորիւր երթևեկաց որոց և իցէ մխիթարել զնոսա, իբրև ի վերայ յանկարծական մեծագոյն արկածից. նոյնպէս և սոցին վեհազնութիւնք ի խոր խոցեալ չկարէին բերան բանալ ի խօսս հասարակաց զաւուրս ինչ։ Յայսոցիկ ծանօ

թութիւնս նորին ծօլթուխինի, գովէին անուանք միայն Յովհաննէս սրբազան արհւոյն Նահխաթունեանց, և տեառն Ղուկասու արհւոյն, և ուրումն վարդապետի անդէն Եսայի կոչեցելոյ, որ նորոգ իջէ յառաջացեալ ուսմամբ: Յայսպիսի դէպքս հարկ անձին համարեալ՝ սորին բարձու վեհափառութիւն զկնի չորից աւուրց ծանօթութեանց այնոցիկ առ Թագաւոր Կայսրն, գնաց առ նորին մինիստրութիւն, և յայնմ վայրի ևս լուեալ էր նա ի նմանէ ոչ սակաւ սրտառուչ վատանութիւնս առ հասարակ ի վերայ անուան մեծի և փոքու միաբանութեանցն Աթոռոյն. որ և հաստատուն հարկիւ յառաջարկեալ էր վեհափառութեան սորին, զիւրաքանչիւր անդամն սինօթոսի Աթոռոյն առաքել մի մի յաքսորս ի շրջակայ վանորայս. և նոր ի նորոյ խնդրել անդամս ի նուաստագունից, չհայեցեալ յանձն իւրաքանչիւրոց, այլ մի միայն ի նոյին արժանաւորութիւն:

Զկնի այսպիսի անարժան հռչակաց դառն էին քան զլեղի զանկատագրութիւնք բարեմորդ պրոկուրորի սրբազան սինհոդոսի Աթոռոյն, պարոն Մատինովի, որ զառաջինն գրեալ մինիստրութեան ներքնային գործոց զԿարապետ արք Եպիսկոպոսէն Տփխիզայ հայոց, յետ որոյ գրեալ էր ևս զանթամոցն սինհօթոսական կառավարութեանց, ուրոյն ուրոյն զանլսելի բազմարանութիւնս. և մինչ կամէր տեղեկանալ այնց վեհափառութիւն սորին, ահա առաքեալ էր նովին օրինակաւ և նմա. նոյնպէս ևս ռուսերէն թարգմանութեամբ և սոցին

վեհագնութեանց աղայ Յովհաննիսի և աղայ Խաչատրոյ, և թէ զի՞նչ ինչ աղտեղութիւնք և անխնայ վատաբանութիւնք գային ի նոսին, զսակաւսն ի բազմաց նշանակեցից ի սոյն: Զառաջինն՝ թէ ընաւին անկառավար իցէք սրբազնութիւն ձեր, և անման յազգու ներգործութենէ խոհական բարեմասնութեանց, յորոց՝ և վնաս բազում հասեալ է կառավարութեան սինոդին: Կարգադրեալ է Սինոդըն յառաջարկութեամբ նորին պօրօկուրորի տալ շինել մարմարնեայ պահարան ինչ ի պահեստ կաթսային սրբալոյս միւռոնի. և ի լսել ձեր զհիւանդութիւն սորին վեհափառութեան, բացասացեալ էք արուեստաւորաց պատճառեալ զցրտութիւն եղանակին, առ այն թէ՝ անպատճառ այսու տկարութեամբն մեռանելոց է վեհապետս, ըստ այնըմ մի ի զուր ծախս արասցէ Աթոռն յայն շինուած: Անկառավարութեամբ ձերով և կամ նոյնպէս սպասելով մահուան վեհապետիս, ընդ ստանալ սինհոդոսիդ զօրինակ Դրամաթին կայսեր և զտեղեկութիւն ի սորին գերապանցութենէ ի հաստատութիւն նորին ի կաթուղիկոսութիւն ազգիս. (որ ուրոյն ես գրեալ էր ձեր սրբազնութեան.) չէ՛ք կարգադրեալ ի յիշատակելոյ զանուն նորա 'ի պատարագի և յայլ եկեղեցական մաղթանս: որպէս ի գանկատագրութիւնս Ծօլթուխին՝ նոյնպէս ես գրէր նա ի նոյն գրի իւրում, թէ սրբազնութիւն ձեր զայսքան ամս անհաւատարիմ իցէք 'ի պաշտօնի աւագ լուսարարութեան, որով զմարգարիտս և զակունս զգեստուց հանեալ՝ վաճառեալ էք յան-

վայել տեղւս և յանձինս որպէս յինչս զարդուց· Նոյնպէս եւ լեալ էք միշտ անհաւատարիմ նաև արդեանց յառաջացելոց ի յուխտաւորաց, համբուրիւ մասանց· պարոն Թամամշօֆն յուխտի իւրում արկեալ է 'ի Թապախի երեք պաճուճելու ոսկիս, և ձեր սրբազնութիւն երդմամբ ցուցեալ իցէք մի ոսկի և եթ։ և այլք բազումք յոյժ, որք ապականեն զլսելիս պարզամտաց, և յաւելուն զկսկիծ սրտից հարազատից ճշմարտութեան, քրիստոնէական հոգւոյ սրբազան հովւոր ծնողիդ իմոյ։ բաց յայսց գրաւոր գանկատանաց պարոն Ժօլթոուխինի և բրոքորորի Աթոռոյդ որ զսինօդական կառավարութենէ և զիւրաքանչիւր անդամոց նորին ուրոյն ուրոյն, բանիւ վատաբարոյից եւ թքանելի քսութիւնք յոյժ յոյժ, որք ի դիր արձանացեալ աստէն վիրաւորեն զսիրտս վեհիդ և նուաստից· իբր թէ անդամք սինօդին միշտ արեանարբու թշնամի են միմեանց, որք և միաբանեալ՝ զամենայն զզգեստս և ըղձմածաղին անօթս ոսկեայ և արծաթեայ վաճառեալ են և ծախեալ յումպէտս, յորմէ և Աթոռդ այնքան թափեալ է ի գոյից մինչև չգտանել գոնէ մի կարգ փառաւոր զգեստուց, և որոց ըստ պիտելոյն՝ խորհեալ էք տալ բերել յԱստրախանայ, խնդրելով ի նորին վիճակաւորէն։

'Ի կուտակութեանց այսքան ատելի հռչակայ ի միջոցիս սոյին վեհազնութիւնք կարե յոյժ թուլացեալ են յիւրեանց ջերմեռանդութեանց և խպառ ապայոյս վարանին ի խորհուրդս առ հնար խափանելոյ այնոցիկ ամենայնի, և ծերունածաղիկ

սրբազնագոյն քահանայապետս անհանգիստ մտատանջութեամբ երկնէ ի խորհուրդս ուղղել զամենայն որքան հնար իցէ ի բարւոք կոյս, բայց տակաւին համբերատար լինի մինչև ինքնին կարողասցի ըստ մասնեայ ճշմարտել, այսպէս ևս յուսացուցանէ զհարազատս բարեկարգութեան, ի մերայնեայս և յօտարաղանց·

Ապացուցութիւնք ի հաւատարմութեան այնպիսի հաչակաց, յառաջ և այժմ սակաւուք յայտնի լինելով աստէն իմոյս նուաստութեան բացածանուցանիմ սրբազան ծնողիդ իմոյ յապագայական զգուշութիւն: Բարեհոգի Ցովսէփ սրբազան արհին, խորհրդաբար խօսեալ ընդ պարոն Ժօլթոուխինի և Ցակովբայ Եսայեան, յայտնեալ է նոցա զձէնջ զայնպիսի փառահամբաւութիւնս և 'ի վերջոյ ասացեալ է նոցա, թէ մինչև ոչ հանցեն զձեզ ի միջոյ և չհրաժարեսջիք դուք ի գործոյ կառավարութեան սիւնհոդոսի, Աթոռն և սինոդն չունի գտանել զիւր լուսաւորեալ կարգ: սոյնպէս և պարոն սեկրետարն Սինոդին Քարտաշով կոչեցեալ ազգասեաց բաջաղանօք անխնայ կեղեքեալ է զանուն և զհամբաւ իւրաքանչիւր անդամոցդ, առ որ գոյ ապացուցութիւն ի տարևոր ժամանակաց հետէ· վասն զի մի անգամ առաքեալ Սիւնհոդոսիդ զնա ընդ ուրումն եպիսկոպոսի Աթոռոյդ գործով ինչ վերաքննութեան 'ի Շամախի... անդէն ծանօթացեալ նորա ընդ ժանտարնի աթիւթանտ հայազգի օֆիցերի ուրումն, Թէոդորոս խալաճով կոչելոյ, թէ զի՞նչ ինչ քսութիւնս արարեալ է նա և զի՞նչ կեղտա-

նուն գաղտնիս յայտնեալ էր նմա զսրբազան սիւնհոդոսէ Աթոռոյդ չէ յայտ, բայց միայն կարի յոյժ վատաբարոյութեամբ… Նաւագոյն ծանիր տէր իմ, մինչև ցյետին անպատուութիւն սրբազնութեանցըն սիւնհոդոսից, նոյն չարաշուք Քարտաշոմն է պատճառ, որ և ձեզ գոլով առանձին մեղրամած թշնամի, այժմ ներգործէ բանիւ այլոց, և սերմանէ զալօճս դառնութեան զձէնջ, կարի անխնայ վատութեամբ. և թէ՝ դէպ լինի նմա՝ յիւրում ժամանակի ևս, յորժամ կամիցիք գրգռել զվատութիւնս նորին, ինքնին ունի ի հանդէս մտանել ընդ ձեզ: ի սորին ոսկի է անդէն այժմ նորոգ չորանալի ծաղկեալ դառնասեան ծաղիկ, Միքայէլն Պատկանեանց, որ շատ է վասն Աթոռոյդ միաբանից, զի ըստ տուչութեանց չարին նոցին սերնդոց՝ բաւականք են նոքա միով ձկոյթ մատամբ զովկիանոս պղտորել, և զուցէ նա իցէ գրիչ և օգնական հայրենասէր պրոկուրորին որպէս ճանաչէ աստէն իսկ զնորին ջախջախ գրիչ Թադդէոս բարձր արժանապատիւ վարդապետ սիրական եղբայրն իմ և վկայէ իսկ նորին այնպիսի չարագրգիռ բարուց, որպէս և ինձ ի վաղ անտի յայտնի լեալ է ճըշմարտիւ….:

Ցայսքան անցս անախորժ վատահամբաւութեանց իրաւի՝ սորին զերամբարձ Վեհափառութիւնն խորհէր 'ի սրտի ըստ յորդորանաց մինիստրութեան նորին զիւրաքանչիւրսդ անպատճառ մեկուսացուցանել յԱթոռոյն յառանձին վանորայս, առ որ Ես սոյին վեհափառութիւնք իրա-

ւայի ինձ հարկեցուցանէին զնա. սակայն՝ յայսմ գովելի է յոյժ շրջահայոց խոհական խորհրդածութիւն սորին վեհափառութեան զի շուտափոյթ ինձ ոչ կամեցաւ ձեռնարկ լինիլ ի կատար խորհրդոյն, սակայն ի վերայ այսոցիկ ամենայնի տակաւին չեն բոլորովին ազատք անդամք սինհոդոսից, վասն զի փոքր մի ևս, որբազան Յովսէփ արհին և Ստեփաննոս Արարատեան արհին մեկնեցին այսի, մին ի խորվիրապի վանս և միւս 'ի սուրբ Գեղարդ, ըստորում բաց յականջալիր այժմու հաչակաց զնոցանէ՝ և սորին Վեհափառութիւն ևս ինքնին վկայէ լինիլ նոցին որբազնութեանց անբարի ի բնաւորութիւնս և ի հոգեկան կիրս. վաղագոյն ինձ անզսպութեամբ. առ այս դէպ նոցին կարելի է ասել անբամբաս մօք, թէ զուբն զոր փորեաց և պեղեաց ի նոյն անկցի և այլն. որբազան արհին Յովսէփ զձեզ ջանայր հեռացուցանել ի պաշտամանց սինոդականութեան և յԱթոռոյն իսկ. և ահա նա ինքն հեռացի. և բաւական է նմա այն կեղտանու նութիւն։

Սրբազնագոյն վեհապետս զՁեր սրբազնութիւն ի վաղ անտի ճանաչելով զրչասէր, և արխաջան, յորժամ սորին առաջարկութեամբ բարեեղանակ զկահս և զկարասիս վանացն սրբազան Սուաքելոյն Թադդէի ըստ զանազան տեսակաց փոխադրեցիք յէջմիածին, տակաւին անփոփխ ի նոյն լուսաւոր ճանաչումն իւր, ոչ հաւատայ լինել հաւատարիմ այնպիսի և այնքան անարժան հաւակաց զՁէնջ, վասն որոյ՝ ի պնդել ոմանց հարազատ սրտացա-

ւաց, որոց և իցէ 'ի մերազանց առ. այնպիսի հրաչակս անարժանութեանց, սորին Վեհափառ տէրութիւնն ի նոյին հանգիսի իսկ հակառակ էր նոյին բազմաբանութեանց ասելով. Ճշմարիտ են փորձառութիւնք և բանք Ծոլթոուխինի վասն որոց և իցէ կառավարութեանց Աթոռոյս, և վասն իւրաքանչիւր սինօդական անդամոց անլուսաւոր կառավարութեանցն, սակայն՝ վասն Բարսեղ եպիսկոպոսի ոչ հաւատամ թէ իցէ նա այնպէս թոյլ և անհող. այս հաչակ զնմանէ յանհաւատարմաց և ի թշնամեաց նորա են, ես անձամբ փորձառու եմ, և գիտեմ զնորին արիական կառավարչութիւնս եգրիչ: Ի վերջոյ այսու կնքէր զբանս իւր. ո՞ գիտէ, գուցէ փոփոխեալ է նա ի բնաւորութեանցն. ըստ որում հնութիւնք ամաց, զօտարոտի բարս ազգեն ի բնութիւն մարդոյս: Ասէր ևս. ափսո՜ս, ափսո՜ս նմա. եթէ փոփոխեալ է նա և չէ այնպէս, որպէս ճանաչեալ եմ զնա, կարևորէ ինձ ընդերկար փորձել զնա...

Ցանցեալըն ընդ երկար մանրամասն պարագայիւք գրեալ էր սորին Վեհափառութիւնն զնամակ սրբազան սինհոդոսի Աթոռոյդ, թէ որպէ՞ս 'ի 28 նոյեմբերի և ի 4 և ի 5 դեկտեմբերի ներկայացաւ նա ի տեսութիւն սորին կայսերական Մեծութեան, նաև Կայսրուհւոյն, և մեծ կնեազ Միխայիլ Պաւլովիչի. այն իսկ է իսկութիւն պատմութեանցն. միայն յաւելում առ այն և զայսոսիկ. Վեհափառ տէրութիւնս մեր անդաանօր խնդրեալ էր ի կայսերէն յանկապէս նորոգել զշնորհ իւր առ

մեր ազգականութիւնս խնդրեալ էր և՝ տալ ինքեան զբուռն զօրութիւն առ կարողանալոյ ներգործել ըստ անդւոյն ի հոգևորականութիւնս մեր զեւր օգտակար համարեալ կամս. խնդրեալ էր և՝ ամենամեծ գումար դրամոց յարքունի գանձուց առկանգնելոյ յԱթոռդ զգերահռչակ սեմինարեայ։ Ըստ այսց օրինակաց և ի բանից սորին յայտնի իսկ է, թէ աշխոյժ է յոյժ մերում համազգականութեան և առաջին փոյթ սորա այս իսկ է լինելոց, զի լուսաւորեսցէ զանազան գիտութեամբք զհոգևորականութիւնս Աթոռոյդ, ուստի՝ ի կամիլ սորա սկիզբն առնել խորհրդոցն (որպէս և իսկ առէ ինքնին) բազմաց ունի բացանել և արձակել և՝ մտանել ի կարգ աշխարհի։

Խոհական բրոքորորն Աթոռոյդ, որպէս զանգամոյն սիւնհոդոսի, նոյնպէս և զԿարապետ սրբազան վիճակաւորէն Վրաստանու գրեալ էր առ մինիստրութիւնն ներքնային գործոց, և առ վեհափառ տէրութիւնս մեր զամբաստանութիւնս անվայելուչ յոյժ, 46. պարբերութեամբք, որովք այն կատաղի անձն անխնայ ես զգիտնեալ էր զհամօրէն զասս հոգևորականութեանց ազգիս յորմէ և վեհափառութիւն սորին՝ կարեվէր խոցեալ է ի սիրտ և ի միտս, և երկնէ հաստատ յիւր խորհուրդըս անպատճառ հրաժարեցուցանել զայն բարեհոգի բրոքորորն ի գործոյն։ Գրէր նա սորին վեհապետութեան հրաժարեցուցանել զԲարտաշոփն ի սեկրեթարութենէ և 'ի տեղի նորա հաստատել զՊատկանոփն որ անդ առ իւր. բայց առ այն ընկալաւ

նա զարժանաւոր պատասխանի ի նանրութիւն իւրոյն խորհրդոց։

Բայց ի բրոքորորէ և համայն առաջաւորք ի Տփխիս քաղաքի ես բաղմօք գանկատաւորք են զԿարապետ սրբազան արհւոյն։ Վասն որոյ եթէ ոչ հաւատայ Վեհափառս բանիցն բրոքորորի, հաւատայ նա այնց քաղաքացւոց, վասն նոցին ամենահաւատարիմ հարազատութեանցն առ նա և վասն յաճախ սիրոյ սորին վեհափառութեան առ նոսին ժողովրդականութիւնս. ուստի՝ կարծելի է թէ գուցէ վտանգեսցի սրբազնութիւն նորին յիշխանութենէ վրաստանեայց, միայն ի վերայ բնիկ գաղթելոցն յՕսմանեանց ունելով զառաջնորդութիւն. և գուցէ վեհափառութիւն սորին ինքնին ունիցի հովուել զվրաստանեայս. և այս յայսմանէ յայտնի է, զի ըստ որում օդ և եղանակ Ս.Թոռոյդ է անկարեխառն և վնասակար, եղեալ է ի մոլի վեհապետս զմեծ մասն տարւոյն անցուցանել ի Տըփխիս. և ի ձմեռան լինել միայն յէջմիածին. և այս են խորհուրդ վեհազնէից և համայն տփխիզեցւոց առ վեհափառութիւն սորին. և ի լինել այսմ այսպէս, բարձր սրբազնութիւն ձեր ունիք զանեղի կալնուլ տեղապահութեան պատուոյ, յիւրմէ կողմանէ ընդհանուր կառավարչութեամբ անդէն։

Միքայէլ եպիսկոպոսն Սալլանդեան ցայսօր կարի տաղտկացուցեալ իւր գարշելի յարատրտունջ բարուք զսոցին վեհազնութիւնս, ոչ յետ բաղում միջոցաց յառաջարկութեամբ վեհափառ քահանայապետիս ընկալնու զբասապորտ ի մինիստրութենէ

ներսնային գործոց՝ անպատճառ գնայ ի Կոստանդինուպոլիս, խապառ մենելով ի սահմանացն Ռուսաստանի. և ի տեղի նորա բերել ունին 'ի գարնան ի վարժապետութիւն ուսումնարանի իւրեանց ղաւրացու շնորհալից Մասւրն, որ այժմ 'ի Քիշնև:

Լուեալ իցէք ցայսօր զվախճան յասուի կենաց Մանուէլ ծերունազարդ վարդապետի, որ ի սուրբ խաչ վանսն վանահայր որ յէսկի Ղրիմ. առ որ ասեալ զլուր՝ սորին վեհափառութիւն տխրեցաւ ոչ սակաւ. վասն յիանամեայ բարեկամութեանց իւրեանց ընդ միմեանս...

Սրբազնագոյն քահանայապետութիւն սորին աւելի ծառայ ոչ զոք ունի աստէն ընդ ինքեան, բայց միայն զմի աշխարհական բարեբարոյ հարազատ փոքրաւոր պատանեակ 20 ամեայ. և զԹադդէոս բարձր արժանապատիւ վարդապետն, յաջորդ նահանգին Ղրիմայ. և սոքա են որք ունին գալ անդ ի սուրբ Աթոռդ ընդ բարձու վեհափառութեան սորին»:

Ամենախոնարհ ծառայ
Եփրեմ վարդապետ Ալթնեանց Հայոց
Ս. Պ. Բուրգայ:

Վերոգրեալ պատճառով հասկանալի է թէ ո՞րպիսի ոգևորութիւնով հայ ազգը կընարէր Ներսէս արքեպիսկոպոսին և որպիսի անհամբերութիւնով կսպասէր նորա գալստեանը:

Ներսէսն եկաւ. այդ մեծ մարդն իսկապէս և մեծ հայրապետ եղաւ. սակայն մի խոշոր պակա-

սութիւն, որ երևում է նորա կաթողիկոսութեան պատմութեան մէջ, այդ ս. Էջմիածնի միաբանութեան պատշաճաւոր կրթութիւն տալու անձեռնհասութիւնն է։ Թէ ինչպէս ի՞նչն եղաւ պատճառը՝ դժուար է հաստատապէս ասել, բայց հաւանօրէն այն պիտի լինի, որ Ներսէսը բոլոր ժամանակը միայնակ իւր ձեռքում կրելով մայր Աթոռի, ազգի և վիճակների կառավարութեան և կարգաւորութեան բազմակնճիռ և բազմազբաղ գործերը՝ չկարողացաւ ոչ միայն վերոյիշեալ պակասը լրացնել, Էջմիածնում ուսումն և կրթութիւնը բարձրացնել ժամանակակից պիտոյքի և պահանջման համեմատ, այլև իւր սկսած զանազան նշանաւոր ձեռնարկութիւններն և բարեկարգութիւնները հաստատուն հիմքերի վերայ դնել։ Քանի որ Էջմիածնի վանքում կշարունակուի իշխել վարչական այն հնացած և փթած եղանակն, որ ազգի հայրապետն ազգային — եկեղեցական բազմաթիւ ծանր և փափուկ խնդիրների հետ միասին իւր անմիջական տեսչութեան և հրամանատարութեան ներքոյ պիտի ամփոփի և՛ գոմանոցի, և՛ շտեմարանի, և՛ փռատան, և՛ հիւրատան, և՛ սեղանատան, և՛ մառանատան վերաբերեալ կարգադրութիւններն և հաշիւները, քանի որ չկայ միաբանութեան գործունէութեան և հողատարութեան պատշաճ՝ իսկ կաթողիկոսի միջամտութեան անպատշաճ առարկաների և գործերի միաբանութեանն իրան յանձնելու կարևորութեան ըմբռնումն, զարմանք չէ, որ Ներսէսի նման մեծ հանճար ունեցող կաթողիկոսն էլ մանր

զբաղմունքներով ծանրաբեռնուած՝ անկարող գըտնուեց թէ հոգալ ամենն, ինչ որ իրանից սպասելի էր, և թէ հաստատուն դրութեան վերածել այն ամենն, ինչ որ արել էր։ Այդպիսի մի կառավարութեան հետևանք էր, որ նորա մահից յետոյ շատ շուտով խանգարուեցին նորա կարգադրութիւնները, քայքայուեցին, խափանուեցին նորա մեծագործութիւնները։ «Մարդ չունիմ», տխրութեամբ ասելու սովորութիւն ունէր Մեծ Հայրապետը. բայց մոռանում էր, որ մարդկանց պէտք է պատրաստել։ Եւ այդ նա պիտի անէր, ըստ որում կարողութիւն ունէր հասկանալու այդպիսի դրութեան ծանր հետևանքները. նա ինքը շատ լաւ ճանաչում էր Էջմիածնի ժամանակակից միաբանութիւնը. միշտ լսում էր համազգիների և օտարազգիների բանաւոր և գրաւոր դատապարտութիւններն այդ միաբանութեան հասցէին։ Յառաջ բերուած նամակից տեսանք, թէ Էջմիածնի դրութեան այդ տխուր նկարագիրն ամօթի որպիսի անհնարին կսկիծ էր պատճառել նորան. տեսանք, որ նա մեծ գումար է խնդրած եղել Էջմիածնում «դերահռչակ սեմինարիա» կանգնելու համար. և սակայն 15 տարուայ կաթողիկոսութեան միջոցում այդպիսի սեմինարիա ունենալու միտքը մնաց անիրագործելի, թէև նորա ձեռքով մեծմեծ գումարներ էլ անցան և ծախսուեցին։

Որովհետև միևնոյն նամակի մէջ տեղապահ Բարսեղ արքեպիսկոպոսի վերայ բարդուած մեղադրանքների թւում գրուած է և նորահաստատ կաթողիկոսի անունն եկեղեցիներում յիշատակել

տալու խնդիրը, չենք կարող մի փոքր կանգ չառնել նորա վերայ, որպէս զի ընթերցողին ծանօթացնենք եկեղեցու այդ սովորութեան և կարգի մասին, որի պահպանութեան վերայ սաստիկ պնդեց Թէև ժամանակակից Սինօդը, բայց Ներսէս կաթողիկոսի ապօրինի հրամանը մի անգամ առ միշտ ջնջեց սովորութիւնը։ Հայ եկեղեցու սահմանած հինօրեայ կարգի համաձայն՝ եկեղեցու օրինաւոր ընտրութեամբ ի հայրապետութիւն կոչուած անձը մինչև ս. օծումն չընդունէր՝ ոչ իւր անունը կարող էր եկեղեցիներում յիշատակել տալ, ոչ իւր անունով փորագրուած հայրապետական կնիք գործ ածել և ոչ կաթողիկոս տիտղոսը։ Ճամախեցի Յակոբ կաթողիկոսը թողել է մի «Թուղթ կանոնական առ ամենայն ազգս հայոց» [38]), որի վերջերորդ յօդուածն յիշեցնում է թէ՛ այդ և թէ՛ ուրիշ մի քանի սովորութիւնների անխախտ պահպանելու պարտաւորութիւնը. «Վեցերորդ... Յետ վախճանման Հայրապետին մերոյ, յորժամ Աթոռայնոցս և Սպահանեցւոցն և այլոց Արևելականաց, և Կոստանդնուպօլսեցւոցն և այլոց Արևմտականացն Հայկասեր ազգաց ի Քրիստոս հաւատացելոց լուսաւորչակրօնից և միաբանադաւանաց համայնից համաւանութեամբքն ընտրեսցի ոմն արքեպիսկոպոս, որ ուրեք լինիցի, ի Հայրապետութիւն ամենայն Հայոց և սրբոյ Աթոռոյն Էջմիածնի, նա պարտ է զկանոնս զայսոսիկ պահել։ Նախ՝ զանուն իւր ոչ յիշեցուցանել Հայրապետական անուամբ յեկեղեցական աղօթսն նախ քան զօծանիլ իւր 'ի Հայրապետ.

երկրորդ՝ նախ քան զօծանիլն իւր ի սկզբան Թըղթոցն իւրոց, զորս գրէ առ ազգս մեր, այսու ոճիւ գրեսցէ. Յիսուսի Քրիստոսի ծառայ (Փլան Արք) եպիսկոպոս և կաթողիկոսացու. և կամ՝ Յիսուսի Քրիստոսի ծառայ կոչմամբ և ո՛չ օծմամբ կաթողիկոս ամենայն Հայոց և մեծի Աթոռոյն Ս. Էջմիածնի որ ի Վաղարշապատ մայրաքաղաքի։ Երրորդ՝ յառաջ քան զօծանիլն ի Հայրապետ զգիրս կնքոյն իւրոյ հայրապետական անուամբ մի՛ գրեցուսցէ զոր և կարմրագեղով ի գործ ոչ ածիցէ. այլև զախպն և զյարգն միածնաէջ և սրբոյ Տեղւոյն Թարց իւրոյ անուանագրութեանն ի տեղի կնքոյն իւրոյ ի գործ ածիցէ, որով զճակատ Թղթոյն կնքեսցեն կարմրագեղով և ի վերայ յատուկ կնքոյն իւրոյ եպիսկոպոս գրել տացէ. և նմաւ ի լուսանցակոյս կողմն Թղթոյն ի մէջ ծաղկագիր յիւյն կնքեսցէ սեւագեղով։ Զորրորդ՝ եթէ կարելի լինիցի ի մայր Աթոռն Ս. Էջմիածին գնալն, արտաքոյ Սրբոյ Աթոռոյն յայլ ուրեք կաթողիկոսացուն մի՛ ձեռնադրեսցի և մի՛ օծանիցի ի Հայրապետութիւն։ Հինգերրորդ՝ Հայրապետին որքան կարելի և հնար լինիցի ջանասցէ զեպիսկոպոսացուն ի ս. Աթոռոջն ձեռնադրել ի յեպիսկոպոսութիւն և ոչ արտաքոյ Աթոռոյն սրբոյ. եթէ իցէ զի երբեմն ինքն Հայրապետն ի յարտաքս գտցէ սակս պատճառի իրիք և պատահիցի եպիսկոպոսացու ոմն, զայն առեալ տարցէ ի ս. Աթոռն և անդ ձեռնադրեսցէ։ Վեցերորդ՝ Հայրապետն առանց վանից և վիճակաց և Թարց վկայականի Թղթոյ նոցա զոք ամենեւին մի ձեռ-

նադրեսցէ յեպիսկոպոս, բայց յեպիսկոպոսաց սրբոյ Աթոռոյն։ Եօթներորդ՝ Թարց խնդրանաց վկայականի թղթոյ վանաց և նորին վճակի ժողովրդոց զոք ի յԱռաջնորդութիւն նոցա մի առաքեսցէ։ Ութերորդ՝ Հայրապետն և կամ Արք եպիսկոպոսք զգուշասցին՝ որք ոչ իցեն լեալք եպիսկոպոսք, անպիսեայն գծայրագոյն վարդապետական իշխանութեան գաւազանն, որ Արքարար է, մի տայցեն. այլ որք եպիսկոպոսք լեալք են նախապէս և արժանիք են արհւոյ եպիսկոպոսութեան, և ոչ ունին, այնպիսեացն տայցեն, զի այս է յարմարն և պատկանն, որք իրաւամբք անուանիցին Արքեպիսկոպոսք. Եւ ամենայն եպիսկոպոս եղելոց ևս ոչ է պարտ տալ, այլ արժանաւորաց միայն»։

Վերոգրեալ յօդուածն իւր ամբողջութիւնով և բառ առ բառ կրկնել է և Ղուկաս կաթողիկոսն իւր «Կանոնական թղթի» մէջ, որ գրել է 1786 թուին, «՛ի Հաստատութիւն նախնեացն սահմանաց վասն որպիսաբար ընտրելոյ և կացուցանելոյ զկաթուղիկոս ի Ս. Աթոռս Էջմիածնի»[39]։

Որքան մեզ է յայտնի՝ այդ նախնաւանդ սովորութիւնն առաջին անգամ խախտել է փառասէր Յովսէփ արքեպ. Արղութեանցը։ Չգիտենք իւր կաթողիկոս. Հաստատութեան Հրովարտակն ստանալուց յետոյ Ռուսաստանի Հայ եկեղեցիներում յիշատակել տուե՞լ է նա իւր անունը՝ թէ ոչ, միայն թէ Հաստատութիւնից անմիջապէս յետոյ կարմրադեղ կնքով և վերնագրով կոնդակներ է գրել ամեն տեղ և ստորագրել «կաթողիկոս ամենայն Հայոց»։

Եփրեմ ընտրուած և հաստատուած լինելով ի կաթողիկոսութիւն՝ դարձեալ պահպանել է հնաւանդ սովորութիւնն և մինչև իւր օծումն ստորագրել է «ընտրեալ ի կաթողիկոսութիւն Եփրեմ արք եպիսկոպոս»: Յովհաննէս Կարբեցին ևս, ինչպէս նկատւում է Սինօդի մի օրագրից, որ ներքևում պիտի դրուի, նոյնպէս պահել է սովորութիւնը. միայն Ներսէս Աշտարակեցին է, որ ոչ փառասիրութեամբ, որի նշոյլն անգամ չկար նորանում և չէր կարող լինել, այլ ըստ որում հնաւանդ եկեղեցական սովորութիւնների և կարգերի հմտութիւնով այնքան էլ պարծենալ չէր կարող, պատճառ է լինում սովորութեան խափան վերանալուն: Պօլօժենիայի հաստատութիւնից յետոյ առաջին ընտրուած կաթողիկոսն ինքը Ներսէսն է: Որովհետև նորա անունն իբրև առաջնորդի յիշատակւում էր իւր թեմի բոլոր եկեղեցիներում, ուստի ընտրութիւնից և Կայսեր հաստատութիւնից յետոյ յիշատակւում է իբրև կաթողիկոս: Էջմիածնի Սինօդի Պրոկուրօրն ի նկատի առնելով այդ, Սինօդից պահանջում է, որ յայսկոյս Կովկասի հայ եկեղեցիներում ևս յիշատակուի Բարձրագոյն հաստատուած կաթողիկոսի անունը: Սինօդը 1843 թ. նոյեմ. 12-ին այդ պահանջը մերժում է հետևեալ օրագրով. «Ըստ հրամանի ՆՈՐԻՆ ԿԱՅՍԵՐԱԿԱՆ ՄԵԾՈՒԹԵԱՆ ԻՆՔՆԱԿԱԼԻՆ ԱՄԵՆԱՅՆ ՌՈՒՍԱՑ ի Լուսաւորչական Հայոց Սինհոդոսի Էջմիածնի լուան գիրկուս առաջադրութիւն տեառն պաշտօնակատարի պրօկուրօրի Սինհոդոսի ի 29, հոկտեմբերի և 18 նոյեմբերի այսր ամի

համարաւ 141 և 158. յորոց յառաջնում գրի, թէ նախկին վիճակաւոր առաջնորդն Նախիջևանու և Բեսարաբիոյ Արքեպիսկոպոսն Ներսէս, որպէս յայտնի է արդէն սինհոդոսին Էջմիածնի, հաստատեալ է ի պատրիարգութիւն և ի կաթողիկոսութիւն ամենայն հայոց, և յայս սամիճան ԹԱԳԱՒՈՐ ԿԱՅՍՐՆ ԲԱՐՁՐԱԳՈՅՆ բարեհաճեալ է արժանացուցանել զնորին սրբազնակատարութիւն հրովարտակի: Այսու օրինակաւ ի կատարումն ԲԱՐՁՐԱԳՈՅՆ կամաց, 'ի ներկայ ժամանակիս ճանաչի Պատրիարգ և կաթողիկոս ամենայն հայոց նախկին Արքեպիսկոպոսն Ներսէս: Անուն նորա արտասանի յամենայն եկեղեցիս հայոց ի վիճակս , արտաքոյ յայսկոյս կողմանց Կովկասու: համարելով, թէ և յեկեղեցիս յայս կոյս Կովկասու կողմանց անշուշտ կարևոր է արտասանել զանուն սրբազնակատար Պատրիարգին Ներսիսի, առանց դժուարանալոյ յայնմ, թէ եկեղեցական ծէսն, այն է օծութիւն, դեռ չէ կատարեալ, և ոչ գտանելով առ այն զօրինաւոր արգելառիթս, խոնարհաբար խնդրէ 'ի սինհոդոսէս առնել զպայմանէ զպարտուպատշաճն տնօրէնութիւն: և յերկրորդում թէ՝ չտեսանելով նորա զտնօրէնութիւն ինչ ըստ յիշեալ առաջադրութեան նորա ի 29 անցեալ հոկտեմբերի համար 141. 'ի մասին յիշատակելոյ յեկեղեցիս հայոց զներկայ Պատրիարգ կաթողիկոսն Ներսէս, խնդրէ ի սինհոդոսէս փութացուցանել զվճիռ իւր և յայսմ հետէ ևս յաղագս այնպիսի տնօրէնութեանց, որք պահանջեն զանյապաղ կատարումն: Եւ զտեղեկու-

թիւնս ի գործոյ . յորոյ երևի թէ՝ տէր գլխաւոր կառավարիչն Վրաստանի առաքեալ է ընդ գրութեան յ31 օգոստոսի համար 2560. զպատճէն ԲԱՐՁՐԱԳՈՅՆ հրովարտակի ԿԱՅՍԵՐՆ յաղագս հաստատութեան Ներսիսի ի կաթողիկոսութիւն ազգիս Հայոց, ի հետևումն որոյ սինհոդոսս համաձայն օրագրութեան իւրում՝ ի 10 սեպտեմբերի զպատճէնս այնորիկ առաքեաց յամենայն ստորագրեալ սմին կոնսիստորիայս ընդ հանրական հրամանագրութեանց վասն հրատարակելոյ . սակայն յաղագս յիշատակելոյ զնա յեկեղեցիս Հայոց տակաւին չէ արարեալ տնօրէնութիւն ինչ: Ի լսելն զայս տեարք անդամք Սինհոդոսիս հաճեցան յայտնել յԱտենի սորին 1, թէ ըստ վաղեմի ծիսից հայաստանեայց եկեղեցւոյ կաթողիկոսն ամենայն Հայոց զկնի հաստատելոյն ի տէրութենէն յայնմ կոչման նախ քան զօծումն իւր յեկեղեցւոջ ոչ բազմի յաթոռ պատրիարքական, այլ կանգնի ի պատուաւորագոյն տեղւոջ ի տաճարին Էջմիածնի. զկնի ընկալնլոյ զօծումն կաթուղիկոսական ի պատարագին յիշէ նա զանունս նախորդաց իւրոց, իսկ յետոյ դպիրքն սեղանոյ յիշատակեն զանուն նորոգ օծելոյն այսու եղանակաւ, զկնի արժանանալոյ նորա խնկական շնորհաց հոգւոյն սրբոյ ի ձեռն երկոտասան արքեպիսկոպոսաց, ի ժամ երեկոյեան ժամերգութեան արքեպիսկոպոսունք և եպիսկոպոսունք Աթոռոյս եկեալ առ նորին Վեհափառութիւն հանդիսիւ տանեն զնա ի տաճարն Էջմիածնի, ուրանօր նորին Վեհափառութիւնն զկնի մատուցանելոյն զերկրպագութիւն ա-

ռաջի սրբոյ սեղանոյն իջման Որդւոյն Միածնի, հրաւիրի ի պատուաւորագոյն անդամոյն սիւնհոդոսիս ընդունել զիւր տեղի յԱթոռին կաթուղիկոսական: Սովին սահմանադրութեամբ ընկալան զայս կարգ և նախնի բարեյիշատակ կաթուղիկոսունքն ամենայն Հայոց. (ես և) Եփրեմ և Յովհաննէս ի ժամանակս մեր, որպէս քաջայայտ է և բարձր սրբազան Արքեպիսկոպոսին Ներսիսի ԲԱՐՁՐԱԳՈՅՆ կամօք հաստատելոյն ի կաթուղիկոսութիւն ամենայն Հայոց: Երկրորդ՝ թէ ի վերադառնալ պաշտօնակատարի պրօկուրօրի սիւնհոդոսիս ի Տփխիսայ դեռ յամսեանն յուլիսի ի բիւրական ընդ երկար խօսեցաւ ընդ նմա զառարկայէս զայսմանէ, բացատրութեամբ նմա վերոյգրեալ ծխիցն, ընդ որ հաճեալ և նորա, ասաց նոցա, թէ պարտ է միշտ պնդութեամբ պահպանել յայսպիսի դէպս զվաղեմի ծէսս Հայաստանեայց եկեղեցւոյ. որպէս և գրեալ էր զայսմանէ ի Թիփլիզոյ առ Տեղակալն Ատենապետի Սիւնհոդոսիս, 7 յուլիսի, խնդրելով յայս նուազ վարել ըստ վաղեմի ծխից Աթոռոյս և յայնմ գրութեան իւրում յիշատակէ յանուանէ թէ՛ մի՛ գուցէ օտար սահմանի Հայք տրտնջասցին թէ «տակաւին օծեալ չգոլով՝ տան յիշատակել մեզ, թէ և հաստատեալ իսկ է յայնմ աստիճանի յԱմենողորմ Կայսերէն Ռուսաց»: Այլ թէ այժմ զի՞նչ դրդումն ունի այս առաջադրութիւն անհամաձայն առաջին դատողութեան իւրում, անյայտ է նոցա:

Սահմանեցին: Տալով ի գործս տեառն պաշտօնակատարի պրօկուրօրի Սիւնհոդոսիս զքաղուած

յայսմ յօդուածոյ օրագրութեանս՝ ծանուցանել նմա, թէ ըստ յառաջաբերեալ ի վերանդր յարգելի պատճառանացն, հիմնեցելոց ի վերայ հաստատուն հիմանց վաղեմի ծիսից հայաստանեայց եկեղեցւոյ, սիւնհոդոսս ո՛չ կարէ բաւարարել զարդեան պահանջ նորա։ Ընդ որ խնդրել ի նմանէ ծանուցանել սիւնհոդոսին թէ՝ մի՛ գուցէ ստացեալ իցէ ի ծայրագոյն իշխանութենէն զպահանջ ինչ, որ սոպեաց զնա առ այս առաջադրութիւն նորա անհամաձայն առաջին կարծեաց նորա, յետ ծանօթ լինելոյն նորա վերոյգրեալ հանգամանացն ամենեցուն դեռ յամսեանն յուլիսի այսր ամի։ Զայսմանէ հասուցեալ ի ծանօթութիւն տեառն գլխաւոր կառավարչին յայս կոյս Կովկասու կողմանց, առաջի առնել ի բարեխօսութիւն բարձր գերազանցութեան նորա թէ՛ սիւնհոդոսս առ արդեան տնօրէնութիւն իւր բաց ի վերոյգրեալ ծիսիցն հայաստանեայց եկեղեցւոյ, սխալի և յերկիւղէ անտի, զի այս պահանջ տեառն պաշտօնակատարի պրօկուրօրի սիւնհոդոսիս, որ թոյլատրէ զբացառումն վաղեմի ծիսից հայաստանեայց եկեղեցւոյ, մի՛ յարուսցէ զվնասակար ներգործութիւն 'ի միտս հայոցն Տաճկաստանի, որք ոչ հայեցեալ 'ի բազմադիմի ճգանս օրհնեալ տէրութեան Ռուսաց, զանազան պատճառանօք ընդ մէջ բերեալ հրաժարէքն 'ի յիշատակմանէ յեկեղեցիս զանուն նս և օծեալ կաթուղիկոսացն իսկ Եփրեմայ և Յովհաննու, զոր մարթէ նկատել 'ի գրագրութենէ անտի դիւանատան նորին բարձր գերազանցութեան 'ի մասին յարուցանելոյ զնախ-

կին հաղորդակցութիւնս Հայոց Տաճկաստանի ընդ
կաթուղիկոսական ամենայն Հայոց Աթոռոյս Էջ-
միածնի։ Իսկ այժմ որովհետև գործս այս յորում
նոյն ինքն տէրութիւն մեր կալնու զայնքան մեծ
մասնակցութիւն, հոգունակութեամբ նորա հասեալ-
է ցայն կէտ բարեյաջող գրութեան զի Հայքն Տաճ-
կաստանի և հոգևորականութիւն մեր տեղւոյն միշտ
դրդեալք յՕսմանեան Դրանէ յետս կալցին յուղղա-
կի հաղորդակցութեանց անտի ընդ Աթոռոյս Էջ-
միածնի, վերջապէս հաճեցան մասնակից դառնիլ
յընտրութեան կաթուղիկոսի ամենայն Հայոց, վասն
որոյ և առ այս նուազ առաւելապէս պէտս ունի
սիւնհոդոսս նախատես զգուշութեան, զի մի խակ
տնօրէնութեամբ իւիք, որ գուցէ ոչ հաճոյ թուես-
ցի և նոյնինքն բարձր սրբազան Արքեպիսկոպոսին
Ներսիսի, ԲԱՐՁՐԱԳՈՅՆ կամօք հաստատելոյն 'ի
կաթողիկոսութեան, որում կարի քաջ յայտնի են
վերոյգրեալ ծէսքն Հայաստանեայց եկեղեցւոյ, խան-
գարել միանգամայն զայնոսիկ բաւարար նախա-
գրութիւնս տէրութեան, որք կարգեալ են արդէն
հանճարեղ տնօրէնութեամբք նորին, յայսմ այսքան
ծանր գործիս վասն Աթոռոյս Էջմիածնի։ Մանա
ւանդ զի ըստ վերոյգրեալ սահմանադրութեանցն
Հայաստանեայց եկեղեցւոյ կաթուղիկոսն ամենայն
Հայոց զկնի օծմանն պարտի առաքել ընդհանրական
ծանուցական կոնդակս օրհնութեան իւրոյ առ բոլոր
հայազգիս Հայոց 'ի Տաճկաստան, 'ի Պարսկաստան 'ի
Հնդկաստան և 'ի Ռուսաստան, և զկնի ընթեռնլոյն
հանդիսիւ զայնոսիկ կոնդակս յեկեղեցիսն յիշա-

տակեն ազա զանուն Նորին Վեհափառութեան»։

Սինօդի և պրոկուրօրի գրագրութիւններն հասնում են ներքին գործերի նախարարին. և սա հարցնում է Պետերբուրգում գտնուող Ներսէսից իրանից, թէ կա՞յ արդարև Հայ եկեղեցու մէջ այդպիսի կանոն, որ քանի կաթողիկոսը չէ օծուել, նորա անունը պիտի չյիշուի եկեղեցում։ Ներսէսը չի կարողանում հաստատուն պատասխան տալ. բայց և այնպէս մի խիստ կոնդակ է գրում տեղապահ Բարսեղ արքեպիսկոպոսին, որի մէջ պահանջելով մի կողմից՝ որ սինօդի անդամները բացատրեն, թէ ո՞ր կանոնի հիման վերայ մերժել են իւր անուան յիշատակութիւնը, միւս կողմից՝ նորանց բացատրութեանը նշանակութիւն չտալով՝ իրան Բարսեղին հրամայում է, որ թէ անձամբ մայր Աթոռում պատարագելով՝ հաստատուած կաթողիկոսի անուան յիշատակութեան սկիզբը դնի և թէ նոյնը հրամայի անել թեմերի հոգևոր կառավարութիւններին իւր կողմից, իբրև սինօդից անկախ տեղապահ։ Եւ նա 1844 թուի մարտի 23-ին տալիս է սինօդին այս առաջադրութիւնը. «Վեհափառ կաթուղիկոսն ամենայն Հայոց տէր Ներսէս յառաջադրութեան իւրում յանուն իմ ի 21 յունվարի սոյն ամի համարաւ 22. 'ի մէջ այլոց գծագրէ, թէ ընդ ժամանելն տարաձայնութեանց առ Մինիստրն և առ Կայսրն ի մասին յիշատակման անուան Նորին Վեհափառութեան յեկեղեցիս Հայոց, հարցեալ է վերջէ դիրեկտորին դեպարտամենտի հոգևորական գործոց օտար ազանց, թէ գո՞յ

այնպիսի կանոն ոչ յիշատակելոյ զանուն կաթուղիկոսի հաստատեցելոյ ի կայսերութենէ յառաջ քան զօծանելն նորա։ Նորին Վեհափառութիւնն չունելով զտեղեկութիւն՝ յայտնեալ է զանգիտութիւն իւր այնպիսի օրինաց բաւականապէս զգացմամբ իւրով յաղագս ցայն վայր անկշռադատ բերմանց անդամոց սինօդի, ուստի յանձն առնէ ինձ նորին վեհաստիճանութիւնն հարկադրել զսինօդն, զի ստորագրութեամբ ամենայն անդամոց իւրոց գրեսցէ նորին սրբազնակատար հայրապետութեան զտեղի այնպիսի կանոնաց նախնականաց յաղագս ոչ յիշատակելոյ զանուն կաթուղիկոսի նախ քան զօծումն. և ի վերայ այսր ամենայնի առաջարկէ ինձ յընկալնուլն զայս նորին կոնդակ, եթէ տակաւին չիցէ յիշատակեալ անուն նորին Վեհափառութեան ի տաճարի սրբոյ Էջմիածնի կամ յամենայն եկեղեցիս պատրիարքական վիճակի Արարատեան գաւառի, զի ես ինքնին յառաջնումն կիւրակէի պատարագեալ յիշատակեցից զանուն նորին վեհափառութեան և որպէս տեղակալ հրաման գրել կոնսիստորիային պատրիարքական վիճակի և ամենայն հոգևոր կառավարութեանց, զի իւրաքանչիւրքն ի նոցունց հրաման գրեսցեն ամենայն եկեղեցեաց յիշատակել զանուն նորին Վեհափառութեան, քանզի այս նիւթ համաձայն նորոգ կարգադրութեան տէրութեան յամի 1836. մարտի 11. գոլով պարզ հոգևորական՝ ոչ ենթարկի սինօդական վերաքննութեանց։

Արարեալ իմ յիմոյ կողմանէ վասն յիշատակութեան անուան վեհափառ կաթուղիկոսի ամե-

նոյն Հայոց, որպէս ի տաճարին Էջմիածնի, նոյնպէս և յայլ ամենայն տեղիս զարժանաւորն անօրէնութիւն, պարտ անձինս վարկանիմ առաջադրել Լուսաւորչական Հայոց սինհոդոսին Էջմիածնի ի կատարումն կամաց Նորին վեհափառութեան ի գլուխ տանել զարգեան պահանջողութիւնն յանդամոց սինհոդոսիս ըստ պատշաճին, և զքաղուած ի յօդուածոյ օրագրութեան որ ունի կայանալ ըստ այսմիկ տալ ի գործս իմ»։

Սինոդը լսելով այդ առաջադրութիւնը՝ նոյն թուի մայիսի 1-ին կազմած օրագրով՝ իբրև կատարումն իրան ուղղած պահանջման կրկնում է վերոգրեալն ամբողջապէս՝ աւելցնելով հետևեալը. «Կատարումն այսր եզրակացութեան գրեցաւ տէր գլխաւոր կառավարչին ի 18 նոյեմբերի 1843 ամի համարաւ 2115, իսկ քաղուածն տուաւ ի գործս պրօկուրօրական համարն 2264, ի պատասխանի որոյ տէր կառավարիչն քաղաքական կառավարութեան յայս կոյս Կովկասու գրութեամբ ի 30 նոյեմբերի համարաւ 13746, ծանուցանէ սինհոդոսիս, թէ Նորին Բարձր Գերազանցութիւնն տ. գլխաւոր կառավարիչն յայսկոյս Կովկասու ի մասին յիշատակութեան անուան Բարձրագոյն կամօք հաստատեալ կաթուղիկոսի ամենայն Հայոց Ներսիսի, մտեալ է ի թղթակցութիւն ընդ տ. Նախարարին Ներքին գործոց, և մինչ ցաջողումն ի նմանէ զպատասխանի՝ տնօրէնութեան սինհոդոսի պարտ է մնալ յիւրում զօրութեան։ Հրամայեցին։ Առաքմամբ պատճէնի օրագրական սահմանադրու-

թեան սինհոդոսի կայացելոյ ի 12 նոյեմբերի անցեալ 1843 ամի վասն առարկային յիշատակութեան անուան կաթուղիկոսի ամենայն Հայոց տ. Ներսիսի նախ քան զընկալնուլն սրբազան օծման, առ Նորին Վեհափառութիւնն ի բարենկատողութիւն՝ խոնարհաբար յայտ առնել, թէ անդամք սինհոդոսի բաց ի յընկալեալ սովորական կարգէն, որպէս բացայայտի ի յիշատակեալ օրագրութեան և հանգամանացն պարունակելոյ ի նմին, չեն ունեցեալ զայլ կանոնական բանս նախնեաց առ այն, ուստի և խնդրել զներողամտութիւն հայրապետական ի Նորին Վեհափառութենէ»:

## Գ.

1843 թուին Յովհաննէս եպիսկոպոս Ճահկաթունեանցը նշանակւում է Վրաստանի Հայոց թեմի նուիրակ և գալիս է Թիֆլիզ: Այս պաշտօնը նորա ուսումնասէր բնաւորութեան ընդդէմ է եղել, որպէս գրում է ինքը տեղապահ Բարսեղ արքեպիսկոպոսին և սինոդականներին, բայց յանձն է առել որ կարողանայ օգտուել Թիֆլիզի հանքային ջրերից, ջերմախտից ստացած տկարութիւնից ազատուելու կամ թեթևանալու համար, որպիսի նպատակով նոյն թուի ամառը գնացած է լինում Աբասթումանի ջերմուկները: Մի տարուց յետոյ էջմիածին է վերադառնում բժիշկների խորհրդով և այստեղ [illegible]ան ամիս անկողնի մէջ պարկած է մնում, ինչպէս գրում է ինքը 1845 թուին Աղէքսանդրիա իւր ընկերակից Արիստակէս Ալթունձեանցին (Զմիւռ-

նիայում սովորածին). «Այն ինչ նորոգ զերծեալ գրեթէ յեռամեայ ծանր տկարութեանց անձինս ընդ ճարտար պաշտպանութեամբ քաջ բժշկաց՝ ուղևորէի յայսկոյս յերկիր ծննդեան իմոյ ի Տփխիս քաղաքէ Վրաստանի, ըստ խրատու բժշկացն, յառաւել կազդուրումն անձինս ի վերջին յանզօրութենէ.... յորէ անտի և այսր իբր ի 10 ամսեայ միջոցի հազիւ ուրեմն կարող եղէ ելանել յոտին և շրջել վստահօրէն, և կամ այժմ խնամօք պաշտպանողին հանուրց բաւականաչափ կազդուրեալ անձամբ»։

Հազիւ այդ ծանր տկարութիւնից փոքրիշատէ առողջացած՝ դարձեալ ձեռնամուխ է լինում իւր գրաւոր աշխատասիրութեան. նոյն 1845 թուին տպագրում է Պետրոս եպիսկոպոս Բերթումեանի գրած մի գրքոյկը,—«Երգարան ի պէտս վաճառականաց և ճանապարհորդաց», որի մի օրինակը «ամենախոնարհաբար նուիրում է ի բարեսիրութիւն վեհափառ տէրութեան» Ներսէս կաթողիկոսի, «մնալով ամենաջերմեռանդ ակնկալու վայելելոյ ոչ անագան ըղձամբաղձ ներկայութիւն սրբազնասուրբ հովուապետութեան» նորա,

Ներսէսը Թիֆլիզ ժամանելուն պէս, 1845 թ. դեկտ. ի վերջում ստիպուած է լինում ուշադրութեան առնել մի կողմից Էջմիածնի Սինօդի և պրոկուրորի միմեանց վերայ տուած գանգատները, միւս կողմից՝ Վրաստանի թեմի առաջնորդ Կարապետ եպիսկոպոսի վերայ բարդուած մեղադրանքները։ Նա այդ բոլորը քննել տալու համար կազմում է մի Յանձնաժողով, որի անդամներ նշանակում է Սա-

հակ եպիսկոպոսին, Յովհ. եպ. Շահխաթունեանցին, Պետրոս վարդապետին, չորս անձերի Թիֆլիզի հայերից և մի ստորիճանաւորի էլ փոխարքայ իշխան Վորոնցովի կողմից: Այդ մասին ինքը Ներսէսը 1846 թ. մարտի 31-ին Թիֆլիզից Յովհաննէս աղա Լազարեանցին գրած կոնդակում ի միջի այլոց ասում է. «Հզօրացեալ է.... ամենայն վերի բերմունք սինօդական անդամոց Էջմիածնի՝ զարգացելոց հարուստ գիտութեամբ և անկիրթ գործադրութեամբ ազգի ազգի բազմամքնաս հրովարտակագրութեամբք, և գերազանցեալ է զնոքօք յանդուգն և զուրկ յամենայն խոհեմութեանց բերմունք պրոկուրորացն, որոց չարաբանութեանց չարիք ոչ դիւրաբար անհետանան ի կարճ ժամանակի : Այլ զի յայտնեսցին որքան հնար է իրաւունք կամ անիրաւութիւնք զըպարտելոց զմիմեանս սինոդի Էջմիածնի և պրոկուրորաց նորին և վիճակաւորի Վրաստանու և կոնսիստորի նորա, հարկաւորագոյն դատեալ կարգեցաք դատաքննիչ զՍահակ եպիսկոպոս և զՅովհաննէս եպիսկոպոս Շահխաթունեանց և զպատգամաւորն հայոց Օսմանեան տէրութեան վասն ընտրութեան կաթողիկոսի զՊետրոս վարդապետն, առաջնորդ Նիկոպօլոյ վիճակին, զորս կոչեցաք առ մեզ ի Ս. Էջմիածնայ».... [40])

Որպէս յայտնի է, Ներսէս կաթողիկոսը մի քանի անգամ Տփխիս է գնացել և ամեն անգամ բաւական երկար մնացել: Թէ՛ Էջմիածնում եղած միջոցին և թէ բացակայութիւնների ժամանակ նա անպայման վստահութիւնով Շահխաթունեանցին

էր յանձնարարում այն բոլոր գործերն և հոգսերը, որոնք հասկացողութեան հետ միասին պահանջում են եռանդ և բարեխղճութիւն: Ժամանակը մեզ չի թողել այն բոլոր կաթողիկոսական կոնդակներն և նամակներն, որոնք կարող էին անպակաս տեղեկութիւն տալ այդպիսի յանձնարարութիւնների և նորանից հետևած ծառայութիւնների մասին. այդ թղթերի (որպէս և առհասարակ պատմական շատ թանգագին նիւթերի) մի աննշան մասը, որ ազատուել է կրակից, փթելուց, մկների բերանից և մնացել ս. Աթոռի մատենադարանում ու արխիւում, հնարաւորութիւն է տալիս միայն հետևեալներն արձանագրելու:

1846 թ. դեկտ. 4-ին կաթողիկոսը գրում է Յովհաննէս եպիսկոպոսին, որ Աթոռի ժառանգաւորաց դպրոցի վերատեսուչն էր. «Յաւուր եկանելոյ մերոյ ի սրբոյ Աթոռոյն լուայ ես թէ ըստ հնոյն գուեհկական կառավարութեանց երկարեն և այժմ Փալախայ և ծեծ փայտի յուսումնարանի սրբոյ էջմիածնի, որոյ լուրն զամենայն եւրոպայիս ունի հրաւիրել ի ծիծաղ ի վերայ այնպիսի տգեղ կրթականութեանց յարատևելոյ նա և յայսպիսում խոհեմութեամբ և հանճարով առաւելեալ ժամանակի, յորում և բարբարոսք մոռացեալ զամենայն զբարբարոսականսն ջանադիր են ջատագովել կառավարութեանց բարեկարգեալ ազգաց: Յաղագս որոյ գրեմ Ձերում սրբազնութեան զփալախայսն և զվարոցսն դնել ի վառարան յուսումնարանի և պատուիրել վարժապետաց հարկանել ոչ զմարմին

աշակերտաց փայտիւ, այլ զմիտս և զկամս նոցա ուսուցմամբ ամօթխածութեանց և երկիւղի Աստուծոյ և մարդկան գեղեցիկ համեստութեանց և ցանկութեանց բարւոյն մարմնոյ իւրեանց և հոգւոյ»։

1847 թ. ապրիլի 19-ին գրած կոնդակով կաթողիկոսը յանձնարարում է յիշեալ եպիսկոպոսին գործակից լինել Էջմիածնի անտառը տնկող երկու անձերի։ «Ազգասէր Արարատեան» լրագրի 1851 թուի նոյեմբերի 30-ի համարում տպուած է Ներսէսի մի կոնդակն, որ գրել է 1850 թ. դեկտեմբերի 31-ին Հնդկաստանի հայերին, ուր ի միջի այլոց և իւր այդ նորատունկ անտառի մասին ասում է. «Մերձ շինուածոյն վասն անասնոց ի հարաւակողմն վանից սրբոյն Գայիանեայ խորհրդածութեամբ և աշխատասիրութեամբ Յովհաննէս եպիսկոպոսի Շահխաթունեան հանդուցելոյ և պատուարժան բժիշկ Կարապետի Յովսէփեան Վասակեանց անտառ ամենատեսակ ծառոց հարստութեամբ տնկեալ ի չորից ամաց հետէ մինչ 1850. իբրև երկու հարիւր հազար, մտադրութեամբ բազմացուցանելոյ մինչ հինգ հարիւր հազար, երկնակի հարկաւորագոյն դիտմամբ.. մի՝ զի լինիցի ընդդէմ օդւոյս սաստկութեանց յամարան բարեխառնութիւն. և միւս՝ զի դաշտն Արարատեան ունելով զկարօտութիւն փայտի վառելեաց՝ այն կարօտութիւն Աթոռոյ Էջմիածնի և այլոց վանօրէից նորա և ամենայն միաբանութեանց նորուն և ժողովրդեան լցցի առ յապայն ամենառատ ձրի պարգևօք Աստուծոյ»։

Նոյն 1847 թուի կոնդակի հետ կաթողիկոսն ուղարկում է Ճահխաթունեանցին Թիֆլիզի գրավաճառների մօտ գտնուած ձեռագիրների ցուցակ, որպէս զի Աթոռի գրատան համար հարկաւոր համարուածները նշանակի, որ գնուեն։ Վերջինը սպասած մեծ բարիքին հասած մարդու բուռն ուրախութիւնով գրում է կաթողիկոսին նոյն ապրիլի 25-ին. «...Ոն անդր՝ Վեհափառ Տէր, աշխոյժք մտաց և զգալի զգացմունք նորոգեցան յիս յանձին իմում այն ինչ առ նմին ընկալայ և ընթերցայ զցուցակն մատենից երկուց եղբարց գրավաճառացն քաղաքիդ՝ զոր առաքեալն էր Վեհափառ օծութիւն Ձեր առ ի ընտրել զհարկաւորն և զպիտանին գրանոցի Աթոռոյս։ Ընթերցայ լիովին և հասու եղէ ամենայն հեղինակութեանց յիշատակելոց ի նոյն ցուցակի, զոր գտի մեծ մասամբ այն, որք յանցեալ ամ այդր հրամանաւ Վեհափառութեան Ձերոյ զննեցան յինէն։ Ի գոյին են ինչ ինչ մատեանք՝ որք արդէն մուծեալ են ի տիպ, և են՝ որոց քանի մի օրինակք գտանին ի գրանոցի Աթոռոյս, այլ որ հարկաւորքն ճանաչին ըստ իմում նկատման՝ որպէս և յանցեալ ամ. են յօտարև յիշատակեալքս։

Նախ մեկնութիւն խորհրդոց սրբոյ պատարագին ի Ներսիսէ Լամբրոնացւոյ ընդ որում են հարց և պատասխանիքն հռոմոց ի հայոց և անդրադարձաբար, և մեկնութիւնն առ ընթեր ի նոյն հեղինակէ, նոյնպէս և երեքին ճառքն նորին սրբոյ յաղագս ոչ ժառանգեցուցանելոյ զվիճակ եկեղեցական ընդ մարմնական առհմականութեամբ. թէպէտ

այսոքիկ գործք սրբոյն բաց ի գլխակարգութեանցն Հարց և պատասխանեաց տպագրեցան յԵրուսաղէմ քաղաքի ի նորումն, և գտանին ևս ձեռագիրք ի գրանոցի Աթոռոյս, այլ վասն համեմատութեան հարկաւոր դատին, զի տպագրեալն չէ՛ ազատ ի բազում վրիպանաց բառից և այլն ։ Ի համարն 7։

Երկրորդ՝ Մեկնութիւն եօթն խորհրդոց եկեղեցւոյ ի Յակովբայ Պատրիարգէ Կոստանդնուպօլսոյ՝ որոյ գլխակատարն չունի տակաւին գրանոցն Աթոռոյս ։ Ի համարն 9։

Երրորդ՝ բժշկարանն կոչեցեալ յանուն Մարխասայ Ջուղայեցւոյ՝ գրեալ ի մագաղաթի, յորմէ չունի գրանոցն Աթոռոյս ։ Ի համարն 11։

Չորրորդ, վաստակք Պետրոս եպիսկոպոսի Աղամալեանց, այն են՝ Բան յաղագս արդեանց և շնորհաց մարդեղութեան բանին, Տրամաբանութիւն և Թարգմանեալ ասածք։ Որպէս աշխատութիւն հեղինակութեանց նոյնպէս և գրիչն են նոյն արդիւնաւոր եպիսկոպոսի, միաբանի Հայրապետական Աթոռոյս սրբոյ, ժողովեալ ի մի կազմ, յորոց չունի ամենևին գրանոց մեր։ Ի համարն 17։

Հինգերորդ, գիրքն՝ յորում նախ հարց ու պատասխանիք ի տնօրէնութիւնսն Քրիստոսի, և բա՛ն հաւատոյ ի Դաւթայ փիլիսոփայէ և այլն, ի համարն 40։

Որդիական համարձակութեամբ ստիպիմ առաջի առնել Ձերում Վեհափառութեան և զայնց մատենից՝ զորոց և յանցեալ ամ աստէն եղև յիշատակութիւն ի ներկայութեան սուրբ Հօրդ Հա-

սարակաց. այն է՝ շնորհ կալջիք հոգալ այդր ընդ փոխարքային յաղագս մատենադարանին վանաց սրբոյն Սանփամնոսի Նախավկայի՝ որ ի ձորին Երասխայ ի հարաւոյ կողմանէ նորա մերձ առ հինն Ջուղայ ի սահմանին հին Նախիջևանայ, որպէս զի կարելի լիցի անցուցանել զհին մատեանն այնր մատենադարանի ուղղակի յայսկոյս Երասխայ առանց զննութեան և յամեցուցման ի կառավարչէն սահմանեզեր այնմ կողման. քանզի և չեն ինչ այնք այնպիսիք՝ կարօտք այժմեան արգելման օրինաց և վերազննութեան աշխարհական իշխանաց՝ գոլով պահեստ ի հին աւուրց և վերաբերեալք բովանդակն առ եկեղեցական պաշտամունս Հայաստանեայց և առ հոգևոր ուսմունս քրիստոնէութեան. և կասկած իմ այն է յաղագս շտապելոյս վերածելոյ զայնս յայսկոյս Երասխայ ի գրանոց Աթոռոյս, մի գուցէ յաւուր միում, որպէս այլոց մենաստանաց Հայաստանի մատենադարանք, յափշտակեսցին յաւազակաց և գնասցեն յանգիւտ կորուստ ի ձեռս եկեղեցւոյ:...

Վեհափառ Տէր, որպէս գիտէք, և արդէն լսեմ եւ եթէ Վեհափառութիւն Ձեր ունի առաքել զյիշեալ (Մատթէոս) արքեպիսկոպոսն նախ ի յԱստրախան յաղագս ինչ ինչ հարկաւոր գործոց եկեղեցեաց հայոց այնր քաղաքի. ոչ աւելորդ համարիմ խնդրել խոնարհաբար, յանձնել յատկապէս նմին արքեպիսկոպոսին Մատթէոսի և զայն, զի ի ձեռն նորա անդր հասու լիցի դրատան եկեղեցւոյն սուրբ Աստուածածնի անդ յԱստրախան, և զամենայն առեալ

ի տումար ըստ ամբողջութեան մատենիցն և ըստ հատուածոց հեղինակութեանց պարունակելոց ի նոսին, յորս, որպէս լսիմ, գտանի և պատմութիւնն ի Զաքարիայէ Ծործորեցւոյ, որ անգիւտ է ամենևին ցարդ։ Ցայս գրանոց գտանին ըստ հաւաստի տեղեկութեան իմոյ և ընտրանօք առեալ մատեանքն ի գրանոցէ վերոյիշեալ վանաց սրբոյն Ստեփաննոսի Նախավկայի՝ իբր յիսուն ամօք յառաջ հոգունակութեամբ անուանեալ կաթողիկոսին Ցովսեփայ Արղութեանց. հաստ լիցի և գրատանց միւս եկեղեցեաց որ անդր՝ թէ գոյին։ Լուեալ է իմ թէ՝ անդ յԱստրախան գտանի անուանեալն խօսրով պատմագիրք առ տեղւոյն բնակիչ Գրիգոր Ամիրաղոմ՝ մնացեալ առ ինքն ի հօրեղբօրէ իւրմէ յԱբրահամէ։ Սոյն Գրիգոր վախճանեալ գոլով արդէն՝ կայ որդի նորին Աբրահամ անուն՝ փեսայ տան Ճամխարեանց, և ունի զդուստր դստեր Դանիէլի Ճամխարեանց։ Հաստ լիցի յատկապէս և այսմ, որ կարծի գիւտ թանկագին, զի անուն և եթ լսի ի կարգի անգիւտ հեղինակաց ի մեզ, և անծանօթ է ամենևին ցարդ յազգէ մերմէ և յայլոց»։

Վերոգրեալ նամակից ընթերցողը տեսնում է, թէ հնասէր և ուսումնասէր վանականը դեռ մի տարի յառաջ Ներսէսի ուշադրութիւնը հրաւիրած է եղել Մաղարթայի վանքի գրադարանի ձեռագիրների վերայ. և այժմ աղաչում է շտապեցնել հարկաւոր կարգադրութիւնն, որպէս զի օր յառաջ բերուած լինելով Էջմիածին, ազատուեն յափշտակութիւնից և կորստից։ Ներսէս կաթողի-

կոսն, որ ձեռագիրների ոչ պակաս գնահատող էր, ստանալով այդ նամակը Թիֆլիզում՝ շտապում է խնդրել փոխարքայից, որ կարգադրուի ուղարկուող մարդկանց անցագիր և այլ հրամաններ տալու համար. և ստանալով խոստումն՝ մայիսի 3-ին կոնդակով յայտնում է խնդրող եպիսկոպոսին: Վերջինս ցնծութեամբ լցուած սրտով նոյն մայիսի 10-ին գրում է հայրապետին. «Կոնդակ Վեհափառ օծութեան Ձերոյ.... առ իմ նուաստութիւն հանդերձ հայրական զուարթարար օրհնութեամբ սփոփեաց զիս, զուսուցիչս և զուսանողս յուսումնարանի Աթոռոյս, խրախուսեաց ի լաւ անդր յառաջատուութիւն քաջալերական՝ ստացմամբ հորկաւորեալ մատենիցն ի բարեծնունդ վարժապետ Առաքելէ Արարատեանց ըստ հրամանի Օծելոյդ մեծի.... մխիթարեաց և զիս աւետեօք ապագայ հարստութեան գրանոցի Աթոռոյս հնապահեստ մատենիւք դարանին Վանաց Մաղարթայ լերին խոստացեալ ձեռնտուութեամբն Նորին Պայծառափայլութեան Կաւկասեան Փոխարքայի. որում և սպասեմք անձկանօք հոգւոյ. քաղցրացոյց և զոգիս հայրանասէր ժառանգաւորաց Աթոռոյս և յուսով ստանալի մատենիցն թէ գնեցելոցն այդր և թէ յանձնեցելոցն յԱսպրախան: Ցայսպիսի խնդութեան սրտի և հոգւոյ վերառաքելով զմաղթանս առ Ամենաբարձրեալն վասն հարստութեան կենաց գլխոյդ եկեղեցւոյ Տայաստանեայց՝ հայցեմք, կեցցէ՛ Տայր մեր, կեցցէ՛ հարստութիւն հայրենեաց մերոց, և կեցուսցէ զժառանգաւորս սրբոյ եկեղեցւոյ մերոյ հարս-

տութեամբ աւանդից նախնի սրբոց Հարցն մերոց։ Օրէ յօր կանաչացեղ զարդարի անտառն Նորատունկ նորոգ արկեալ պէսպէս տնկովք, ուռելի արմատովք, հարկաւոր դալարովք և զովարար պտղաւոր Թփովք»։

Մինչ բոլոր հոգացողութիւնները կլինէին՝ վրայ է հասնում ձմեռը։ Հետևեալ 1848 Թուին մարտի 13-ին Յովհաննէս եպիսկոպոսը գրում է Ներսէս կաթողիկոսին.

«Վեհափառ Հովուապետ
Ողորմած Տէր

Վաղ ուրեմն ընկալեալ իմ զկոնդակ շնորհազարդ տէրութեան Ձերոյ՝ որ վասն գրանց մատենադարանի մենաստանին Նախավկայի առ եղերբ Երասխայ՝ մերձ ի հինն Ջուղա. և ի խորհրդակցելն իմ ընդ անդամոց Սիւնհոդոսի՝ հարկաւորեցաւ տալ զայն կոնդակ յայտարարութեամբ իմով յատեան նորին և այնպէս ստանալ զխորհրդակցութիւն նոցուն ատենակալացն, և ահա առ այն Թուղթ Սիւնհոդոսի յանուն Վեհափառութեան Ձերոյ արկանի ի փօշտայն Երևանայ։

Վեհափառ Տէր. Թէպէտ յամեցաւ վասն այսր խոնարհ յայտարարութիւն իմ առ տէրութիւն Ձեր, այլ ճանապարհորդութիւնն նախ քան զայս ես դժուանայր վասն հոգևորական գնացողի անդր ի պատճառս սաստկասառոյց ցրտութեան միջոցին և անցմանն ընդ Երասխ։ Այժմ ի Թուղթ սիւնհոդոսի որ առ Վեհափառ Օծութիւն Ձեր նշանակեալ է անուն գնացողի Մակար վ. տէր Պետ-

րոսեանց՝ անդամ սինօդի, և անուն վանահօր մենաստանին՝ Յովհաննէս վ. տէր Գալստեան. առ այսոսիկ երկոսին անձինս որինչ պատուէր հրամանի լինելոց են ի տէրութենէ Ձերմէ՝ առ վանահայրն յաղագս անխարդախ յանձնելոյն զամենայն զձեռագիր մատեանսն, և առ Մակար վարդապետն յաղագս զգուշաւոր պահպանութեան մինչև ցածելն զայնս այսր՝ լաւապէս քաջայայտ են Ձեզ, Ողորմած Տէ՛ր, որպէս և վասն անցագրի յանուն գնացողի և յատուկ յանձնարարական թղթոյ 'ի փոխարքայէ առ մաքսային կառավարիչն այնր կողման յաղագս թոյլ տալոյն անցուցանելոյ յայսկոյս զմատեանսն անարգել թողլոյն առ ի ածել ուղղակի յԱթոռ այսր՝ վասն զոլոյ այնց մեծ մասամբ եկեղեցական մատեանք և զարաւոր ժամանակօք յառաջագոյն գծագրեալք։ Մնայ մի միայն խմուռ նուաստութեան խնդրել 'ի Վեհափառութենէ Ձերմէ, զի ի կոնդակին առ վանահայրն հրամայել յատկապէս, զի որքան ձեռագիր մատեանք գտանիցին անդէն ի մենաստանին՝ թէ յերկոսին փակեալ զարանսն ի վերայ երկուց փոքրիկ մատրանցն յարեմտակողմանն բաժնի տաճարին, յորս մուտք ի յատակէ վերնատուն անուանեալ կայարանի աղօթաւորաց, և թէ արտաքոյ առ ինքեանս առանց ինչ խարդախելոյ յանձնել ցուցակաւ յիշեալ վարդապետին, եթէ հնար ինչ իցէ՝ զամենայն. քանզի յետ անպիտան մնալոյն այնց յայնպիսի տեղիս, և երբեմն եւս յանգիւտ կորուստ գնալոյ որպիսի և է միջոցօք, չէ՛ կարելի թէ չհարկաւորեսցին ըստ իմիք յԱթոռ

այսր՝ թէ ըստ բազդատութեան, թէ ըստ հատուածական ծանօթարար գրուածոցն ի նոսին և թէ ըստ պատմական յիշատակարանաց գրչութեանց: Այլ զի այսու խմով մատբերեալ խնդրանօք առ վեհափառութիւն Ձեր, անխրաւիմ առ յիշեալ մենաստանն և ի նմին եղեալ բնակիչսն յաղագս խապաղըկելոյ զտեղին ի ձեռագիր մատենից, բաց յորոց և գուցէ տպագրեալք ևս սակաւ գտանիցին, որոյ վասն կրկին խնդրանօք և դիմեմ առ Ողորմած Տէրդ՝ զի յուսացուցեալ զվանահայր յիշեալ մենաստանին, հրամայել խմուլ նուաստութեան յատուկ կոնդակաւ, զի փոխանակ այնց ձեռագիր մատենից վասն հարկաւորութեան տաճարի և բնակչաց մենաստանին ըստ զգուշաւոր տեղեկութեան և յայտարարութեան Մակար վարդապետի տէր պետրոսեանց՝ հանել 'ի դրանոցէ աթոռոյս զինչ ինչ մատեանս մուծեալս ի տեղ և առաքել անդր ի պէտս նոցա, որովք լիցի ինձ անդատապարտ մնալ որպէս վասն զգուշաւոր պահպանութեան և հարկաւորութեան ձեռագիր մատենիցն յԱթոռ այսր, նոյնպէս և վասն հոգալոյ ըստ իրաւանցն զհարկաւորսն յիշեալ մենաստանին ի մասին տպագրեալ մատենից, շնորհօք Վեհափառ Օծութեան Ձերոյ»:

Կաթողիկոսը նոյն թուի ապրիլի 17-ի կոնդակի հետ ուղարկում է գնացողի անցագիրն և այլ հրամանագրեր, որով և նշանակուած վարդապետը գնում և բերում է յիշեալ վանքի ձեռագիրներն, որոնց թւում և վերևում յիշուած նշանաւոր Աւետարանը:

Պէտք է ասել, սակայն, որ մեզ անյայտ պատճառով ուղարկուած վարդապետը այդ վանքի հարուստ մատենադարանի բոլոր ձեռագիրները չէ տարել Էջմիածին։ Բաւական թուով ձեռագրներից մի մասը մինչև այսօր էլ իրանց տեղում փտում և ցեցակեր են լինում. մի մասն էլ արդէն օտարացել, ընկել են ուրիշների ձեռքը ոչ թէ աւազակներից յափշտակուած, որպէս կասկածում էր Յովհաննէս եպիսկոպոսն, այլ վանահայրերի ձեռքով, երբ սկսած Մատթէոս կաթողիկոսից սովորութիւն եղաւ շուտ շուտ վանահայրեր փոփոխել և ում ասես վանք յանձնել....

Մեզ պատահել է լսել և անձամբ էլ վերահասու լինել թէ վերոյիշեալ ս. Նախավկայի գրքերից, նոյն իսկ ուրիշ եկեղեցական սպասներից ո՞րքանն և ո՞ր վանահօր ձեռով օտարացել են վանքից։

Վերադառնանք Ներսէս կաթողիկոսի առ Ծահխաթունեանցն ուղղած կոնդակներին։

Դարձեալ ծառանդաւորայ դպրոցի համար գրածներ։ 1847 յունիսի 16. «Սրբազան Յովհաննէս եպիսկոպոս Ծահխաթունեան սիրականի իմոյ ողջունիւ Քրիստոսական յայտնեմ.... Զերքեզ մանկանցն մշտահօգ կալ որ իւրեանց Զերքէզական հայրենի լեզուն խօսիցին միշտ և ունիցին անմոռաց. քանզի երբ ցանկալի է ամենեցուն նոր նոր ուսանել զայլ և այլ լեզու, անգթութիւն լինի զուսեալն ի մանկութենէ հետէ ի մոռացօնս տալ»..

1847 յուլիսի 15. «Ցուցով եմ, թէ որպ.

ձերոց նորատունկ ծառոց, առաւել քան նոցա կայ-ցէ ջերմեռանդ աշխատութիւն ձեր վասն աշակերտաց ուսումնարանի կամ անարժան սէմինարիի էջմիածնի որ ոչ ըստ նորայն մեծ վայելչութեանց, այլ զի Արարիչն յոչնչէ էացոյց զամենայն արարածս, նոյն է նա, որ զօրէ և զանարժան ուսումնարանն իւրում իջման սուրբ տեղւոյն ամբառնալ ի գերագոյն արժանաւորութիւն ըստ վայելչութեանց իւրում սուրբ անուան, առ որ խնդրեմ ամենայն կարողութեամբ ձեր անքուն հոգացողութեամբ լինել ջանադիր վասն ուսմանց աշակերտաց ի նմին, մանաւանդ մանկահասակացն ի նոցունց ո՛չ խնայել զհարկաւորսն վասն վարուց, բարուց, համեստութեանց, ջանից և աշխատութեանց յաղագս արժանաւորելոյ զանձինս իւրեանց իմաստութեանց Աստուածայնոց և զարդարել զբանաւորութիւն իւրեանց և զարժանաւորութիւն անդամոց որդիութեանց շնորհօք Աստուծոյ արարչի իւրեանց»։

Այդ կոնդակին Շահխաթունեանցը պատասխանում է. «Վասն պատուիրանաց և խրատուց եղելոցն յերկրորդ և յերրորդ կոնդակսն անդ յաղագս պահպանութեան և խնամատարութեան աշակերտելոցն յուսումնարանի Աթոռոյս և չէրքեզ երեխայոցն և նոցին երկուց ընկերաց՝ ճշմարտութեամբ ասիմ Վեհափառ Տէր, համբուրելի են և իմում հոգւոյ. որքան կարելին է, ոչ խնայեցից երբէք զյորդորանս և զխրատս որպէս վասն ուսմանց [illegible]ն և հետևանաց այնր, նոյնպէս և վասն բարի[illegible]ուց արժանաւոր մարդկութեանն, այլ որինչ

վերաբերին առ անձնական պաշտպանութիւն նոցա ի հասարակի, ես իմում և եթ մասինն կարողացայց լինել պատասխանատու որպէս առաջի աստուծոյ, այնպէս և վեհափառութեան Ձերում»: Եւ կաթողիկոսից ստանում է հետևեալ նկատողութիւնն և պատուէրը, 1847 թ. օգոստոսի 2-ին գրած. «Շնորհակալ եմ յոյժ յաղագս հոգունակութեանց ձերոց ի մասին աշակերտաց ուսումնարանի և մանկանցն չերքեզահայոց. այլ գրեալ թէ՝ որ ինչ վերաբերին առ անձնական պաշտպանութիւն նոցա ի հասարակի՝ ես իմում և եթ մասին կարողացայց լինել պատասխանատու Աստուծոյ և Ձեզ, այդու ոչ բաւականացայց ես. քանզի ցանկալի է ինձ, զի ըստ ամենայն մասանց համարեսջիք դուք զանձն ձեր լինիլ պարտաւոր առ պատասխանատուութիւն ըստ ամենայն մասանց որպէս վերատեսուչ այժմեան վերջոտնեալ վարժարանի Էջմիածնի անուանեցելոյ սերմնարան առանց իրիք սերմանց և սերմանացանից:

Եկաւորք Էջմիածնայ յառարկութիւնս իւրեանց յիշեցին գտանել տակաւին ծեծ աշակերտաց. այլ զի խնդրեալ եմք մեք ի ձեր սրբազնութենէ գրութեամբ մերով յԱղէքսանդրապօլոյ ի 4 դեկտեմբերի ամին անցելոյ համարաւ 335, լուր այս նոր զգալի եղև ինձ, յետ որոյ ընթերցանութիւն ձերում այս գրուածոյ հզօրացոյց յիս զկարծիս թէ խառնաձայն ունակութիւնն նախանցեալ կառավարութեանց յարատևէ տակաւին. ըստ որոյ եկաւորք օտարականք այնպէս պատմեն,՝ և ձե

սրբազնութիւնն թէականաւ այնպէս առ մեզ գրէք․ առ որ յատուկ խնդրանօք պարտաւորեմ զձեր սըրբազնութիւնն եթէ յետ ընկալնլոյ այնմ գրութեանց իմոց համարաւ 335, դուք ունեցեալ էք զպատուիրան ուսուցչաց խղճալի ուսումնարանի Աթոռոյ Էջմիածնի և յանդգնեալ է ոք յուսուցչաց ընդդէմ ձերոց պատուիրանաց, ծանուցանել մեզ լիագոյն ստուգութեամբ, զի չկամիմ երբէք թէ յարաձգեսցի դարձեալ ի կառավարութեան Էջմիածնի խաղարկութիւնն կառավարչական ըստ անձնիւր հաճոյից»։

Վերջին պատուէրի դիմաց Յովհաննէս եպիսկոպոսը նոյն օգոստոսի 9-ին գրած թղթում հետեւեալ բացատրութիւնն է տալիս. «.... Չիք այնպիսի ուսուցիչ յուսումնարանի մերում, Վեհափառ Տէր, որ վստահացի արտաքոյ իմում յանձնարարութեանց վարել ընդ աշակերտսն... Թուեցեալ ծեծիւք և անյարմար խստագոյն պատժօք, մանաւանդ զկնի ընկալնլոյ իմ զկոնդակն խրատու Վեհափառութեան Ձերոյ ի 4-էն դեկտ. անցեալ ամի... Այդորիկ վասն Վեհափառութիւն Ձեր անդորրամիտ եղիցի, զի ես ինքն եմ պատասխանատու ըստ խրատու-կոնդակի Վեհափառ Տեառնդ»։

Կ. Պօլիս եպիսկոպոս ուղարկելու դիտաւորութիւնը։—1847 Թ. օգոստոսի 22-ին Ներսէս կաթողիկոսը հարցրած է լինում Շահխաթունեանցից՝ թէ կարո՞ղ է արդեօք վարժ քարոզել, եթէ ուղարկուի Կ. Պօլիս։ Թէ ինչ նպատակով և յանձնարարութիւններով կամեցել է հանճարաւոր Հայրապետն եպիս-

կոպոս ուղարկել Պօլիս, չգիտենք. միայն Ճաշխաթունեանցն, որին նա վստահանում էր իւր գիտաւորութիւնների իրագործումը յանձնել, նոյն օգոստոսի 29-ին գրած նամակով պատասխանում է.

«Վեհափառ Հովուապետ
Ողորմած Տէր.

Ամենահպատակ խոնարհութեամբ ընկալայ զառանձնական կոնդակ հոգևոր Տէրութեան Ձերոյ առ իս 'ի 22-էն սոյն օգոստոսի, համարաւն 319, որով հրամայէք իմում նուաստութեան՝ թէ ունիցի՞մ ես գլոյս յինէն վասն եկեղեցական բանախօսութեան, այն է, քարոզելոյ և ատենաբանելոյ անդ 'ի Կոստանդինուպօլիս. և թէ՝ զօրծք զօրս ունի Վեհափառութիւն Ձեր յանձն առնել իմում նուաստութեան, և ժամանակք գործառնութեանցն անդէն ունին լինել որպէս և տէրութեան Ձեր և իմ համաձայնութիւն լինելոց իցէ. և ապա առ այս խնդրել ի տէրութենէ զպաշտօրա յանուն իմ։

Ամենախոնարհաբար յայտնեմ՝ Վեհափառ Տէր, երբ նուիրեալ է անձն իմ վասն իմում հայրենի եկեղեցւոյ, և այժմ Ձերդ Վեհափառ տէրութիւն գտանի գլխաւոր և պաշտպան այնմ, չէ՛ն ինձ առանձին կամք առաջի հոգևոր տէրութեան Ձերոյ. և յոյս իմ յինէն ևս համեմատութեամբ հաստակակից ատաիճանակցացն իմոց (եթէ չլինիցի յանդգնութիւն) չէ՛ այնքան անյոյս. այլ անբախտութիւն իմ այն եղև, զի կեանք իմ փակեալ զոլով յառանձնութեան աստ ի սենեկի ընդ այսքան ժամա-

նախ՝ սովորականն եղև յիս երկրորդ բնութիւն. ուստի և առ այնպիսի հրապարակական գործառնութիւն՝ որոյ և նպատակն այլ իմն գերաղանց նկատողութիւն, անբաւական դատիմ ես զիս. մանաւանդ զի քաջայայտ իսկ է Վեհափառ օծութեան Ձերում բնաւորեալն յիս տկարութիւն՝ զոր և կրեմ իսկ այժմ:

Ձերում Վեհափառ Օծութեան
ամենախոնարհ ծառայ
Յովհաննէս եպս. շահխաթունեանց»:

Թ. 30
ի 29 օգոստոսի
1847, ամի
յէջմիածին:

Բացի Ներսէս կաթողիկոսի կատարեալ վստահութիւնից և համակրութիւնից, որը վայելել էր միշտ և վայելում էր Շահխաթունեանցը, նա գրաւել էր և ժամանակակից թէ՛ օտարազգի և թէ հայազգի ուսումնականների, ինչպէս և առհասարակ կրթուած դասի յարգանքն և սէրը: Ամենքը նորա օգնութեանն էին դիմում, երբ գալիս էին կամ Արարատեան նահանգի Հայ պատմական յիշատակարաններն ուսումնասիրելու կամ Էջմիածնի մատենադարանի ձեռագիրներից օգտուելու: Նորան էին վստահանում հաղորդելու մի որ և է կարևոր տեղեկութիւն, որ շահեկան կամ հետաքրքրական էր ազգային կամ եկեղեցական տեսակէտով: Նորից յայտնելով մեր խորին ցաւը, որ վերոգրեալ նպա-

տակների ծառայող նամակները բոլորը չեն հասել մեզ՝ ստիպուած ենք բաւականանալ ամենափոքր մնացորդով։

Օտարազգիներից երկուսին գիտենք, որոնք իրանց ուսումնասիրութիւնները կատարել են Յովհաննէս եպիսկոպոսի ցոյց տուած օգնութիւնով։ Դորանցից մինն է Մուրավեւը, միւսը՝ հայագէտ Բրոսսէն։ Մուրավեւի «Грузія и Арменія» աշխատութեան մէջ (Սան բ. Պետերբուրգ. 1848. եր. 165—166) կարդում ենք. «Ուսումնական Յովհաննէս եպիսկոպոս Շահխաթունեանցն, որ ստորագրել է Արարատեան նահանգի բոլոր հնութիւնները, սպասում էր ինձ մօտակայ Մողնու ս. Գէորգ վանքում. բայց լսելով՝ որ մնացել եմ Աշտարակում, աճապարեց եկաւ ինձ մօտ և ես անցկացրի իրիկունը ինձ համար օգտակար խօսակցութիւնով։ Առաւօտը շտապեցինք Մողնու մօտով ուղղակի դէպի Ուշու ս. Սարգիս հինօրեայ վանքի աւերակները»։ Երևի թէ սորա ճանապարհորդութեան մէջ մնած բոլոր պատմական տեղեկութիւններն էջմիածնի և միւս հայ վանքերի մասին նոյնպէս հաղորդել է Յովհաննէս եպիսկոպոսը։

Հայագէտ Բրոսսէի Շահխաթունեանցին գրած չորս նամակները գտնուեցին վերջինի եղբօր տանը Շահրիար գիւղում, որոնցից յառաջ ենք բերում հետևեալները.

3. Պետերբուրգից 1848 Թ. օգոստոսի 14-ին գրում է ռուսերէն լեզուով.

«Ձե՛րդ Սրբազնութիւն

Տփխիսից յաջողութեամբ Պետերբուրգ հասած լինելով յուլիսի 27-ին՝ շտապում եմ այդ մասին տալ ձեզ տեղեկութիւն, խոնարհաբար խնդրելով չմոռանալ ձեր ինձ տուած խոստումներն և ձեր բարեկամութիւնն, որ ցոյց տուիք իմ Էջմիածին եղած միջոցին։

Ճեմարանի համար առանձնապէս շահեկան կլինէր ունենալ պատճէնը Մխիթար Գօշի աշխատութեան, որ կրում է, եթէ չեմ սխալւում, «Գիրք Դատաստանաց» վերնագիրը, որ, որպէս յայտնի է ձեզ, մի ժամանակ թարգմանուել է վրացերէն լեզուով, և կարող է շատ նպաստել յիշեալ թարգմանութիւնը ճիշդ հասկանալուն և բացատրելուն։ Հետևաբար՝ դիմում եմ ձեզ խնդրելով, որ հրամայէք մէկին անթերի պատճէնը վերցնել և ուղարկել ինձ. աշխատութեան վարձը, (կվճարուի). դուք գիտէք, որ մեր կողմից այդպիսի դժուարութիւն չի լինի։

Գիտէք դուք, թէ Էջմիածնի մատենադարանի ձեռագիր գրքերի մանրամասն նկարագրութեան նկատմամբ ես ինչպէս գնահատեցի ձեր գեղեցիկ աշխատութիւնն, որ պատմական գրուածների, որպէս նաև ս. գրքի մասին արդէն վերջացած է։ Ի հարկէ այդ ձեր սեփականութիւնն է և առանց ձեզ ոչ ոք չի կարող օգտուել, բայց յուսով եմ, որ ձեր հայրենիքի փառքի և ձեր անուան համար չէք զլանալ ուղարկել ինձ այդ ցուցակը կամ մասամբ կամ ամբողջովին, երբ կյաջողէք աւարտել։

*Հաւատացած եղէք, որ ես յամենայն դէպս պատրաստ եմ ծառայել ձեզ այստեղ որչափ կարող եմ, և կասկած մի ունենաք այն խորին յարգանաց մասին, որով պատիւ ունիմ լինել Ձերդ սրբազնութեան*

*Խոնարհագոյն առ ծառայութիւնս*
*Բրոսսէ*

*Խնդրում եմ ներողութիւն կրել յայտնելու իմ յարգանքս Ղուկաս արքեպիսկոպոսին և Թադդէոս վարդապետին, նոյնպէս և բարի բժիշկ Վասակեանցին»։*

*Հայազգի ժամանակակից նշանաւոր ուսումնականներից Յովհաննէս եպիսկոպոսին համակրող և նորա հետ միշտ թղթակցող եղել են Ստեփաննոս Նազարեանց և Խաչատուր Աբովեանց. մեծ է մանաւանդ առաջինի արտայայտած բարեկամական զգացմունքն և սէրն, ինչպէս պիտի տեսնեն ընթերցողները նորա մի նամակից և մի ուղերձից. այո, դժբաղդաբար, միայն մի նամակից. մինչդեռ այդ նամակի վերջում դրուած 43 №-ը ցոյց է տալիս հաւանօրէն միևնոյն անձին գրած նամակների թիւը, որոնք այժմ չկան։ Ստեփաննոս Նազարեանցը լինելով քառասնական թուականներին Ղազանի համալսարանի պրոֆեսոր՝ իւր բարեկամի գովութեան և վարձատրութեան արժանի գրաւոր աշխատութիւնների արժէքը համալսարանի ուշադրութեանն է ներկայացնում և վերջինը 1844 թուին ընտրում է Ճանխաթունեանցին Անդամ-թղթակից, ուղարկելով յետագայ վկայագիրը, որ մեր խնդրով լուսանկարել է բնագրից Հ. Մեսրոբ վ. տէր Մովսիսեան։*

վերաբերին առ անձնական պաշտպանութիւն նոցա ի հասարակի, ես խմում և եթ մասինն կարողացայց լինել պատասխանատու որպէս առաջի աստուծոյ, այնպէս և վեհափառութեան Ձերում»: Եւ կաթողիկոսից ստանում է հետևեալ նկատողութիւնն և պատուէրը, 1847 թ. օգոստոսի 2-ին գրած. «Շնորհակալ եմ յոյժ յաղագս հոգունակութեանց ձերոց ի մասին աշակերտաց ուսումնարանի և մանկանցն չերքեզահայոց. այլ գրելդ թէ՝ որ ինչ վերաբերին առ անձնական պաշտպանութիւն նոցա ի հասարակի՝ ես խմում և եթ մասին կարողացայց լինել պատասխանատու Աստուծոյ և Ձեզ, այդու ոչ բաւականացայց ես. քանզի ցանկալի է ինձ, զի ըստ ամենայն մասանց համարեսջիք դուք զանձն ձեր լինել պարտաւոր առ պատասխանատրութիւն ըստ ամենայն մասանց որպէս վերատեսուչ այժմեան վերջոտնեալ վարժարանի էջմիածնի անուանեցելոյ սեմինարան առանց իրիք սերմանց և սերմանացանից:

Եկաւորք էջմիածնայ յառարկութիւնս իւրեանց յիշեցին գտանել տակաւին ծեծ աշակերտաց. այլ զի խնդրեալ եմք մեք ի ձեր սրբազնութենէ գրութեամբ մերով յՕղէքսանդրապօլոյ ի 4 դեկտեմբերի ամին անցելոյ համարաւ 335, լուր այս նոր զգալի եղև ինձ, յետ որոյ ընթերցանութիւն ձերում այս գրուածոյ հզօրացոյց յիս զկարծիս թէ խառնաձայն ունակութիւնն նախանցեալ կառավարութեանց յարատևէ տակաւին. ըստ որոյ եկաւորք օտարականք այնպէս պատմեն, և ձեր

սրբազնութիւնն Թէականաւ այնպէս առ մեզ գրէք․ առ որ յառուկ խնդրանօք պարտաւորեմ զձեր սրբազնութիւնն եթէ յետ ընկալնլոյ այնմ գրութեանց իմոց համարաւ 335, դուք ունեցեալ էք զպատուիրան ուսուցչաց խղճալի ուսումնարանի Աթոռոյ Էջմիածնի և յանդգնեալ է ոք յուսուցչաց ընդդէմ ձերոց պատուիրանաց, ծանուցանել մեզ լիագոյն ստուգութեամբ, զի չ՚կամիմ երբէք թէ յարաձգեսցի դարձեալ ի կառավարութեան Էջմիածնի խադարկութիւնն կառավարչական ըստ անձնիւր հաճոյից»։

Վերջին պատուէրի դիմաց Ցովհաննէս եպիսկոպոսը նոյն օգոստոսի 9-ին գրած Թղթում հետևեալ բացատրութիւնն է տալիս. «.... Զիք այնպիսի ուսուցիչ յուսումնարանի մերում, Վեհափառ Տէր, որ վստահացի արտաքոյ իմում յանձնարարութեանց վարիլ ընդ աշակերտսն... Թուեցեալ ծեծիւք և անյարմար խստագոյն պատժօք, մանաւանդ զկնի ընկալնլոյ իմ զկոնդակն խրատու Վեհափառութեան Ձերոյ ի 4-էն դեկտ. անցեալ ամի... Այդորիկ վասն Վեհափառութիւն Ձեր անդորրամիտ եղիցի, զի ես ինքն եմ պատասխանատու ըստ խրատու-կոնդակի Վեհափառ Տեառնդ»։

Կ. Պօլիս եպիսկոպոս ուղարկելու դիտաւորութիւնը։—1847 Թ. օգոստոսի 22-ին Ներսէս կաթողիկոսը հարցրած է լինում Շահխաթունեանցից՝ թէ կարօղ է արդեօք վարժ քարոզել, եթէ ուղարկուի Կ. Պօլիս։ Թէ ինչ նպատակով և յանձնարարութիւններով կամեցել է հանճարաւոր Հայրապետն եպիս-

կոպոս ուղարկել Պոլիս, չգիտենք. միայն Շահխաթունեանցն, որին նա վստահանում էր իւր դիտաւորութիւնների իրագործումը յանձնել, նոյն օգոստոսի 29-ին գրած նամակով պատասխանում է.

«Վեհափառ Հովուապետ
Ողորմած Տէր.

Ամենահպատակ խոնարհութեամբ ընկալայ զառանձնական կոնդակ Հոգևոր Տէրութեան Ձերոյ առ իս 'ի 22-էն սոյն օգոստոսի, համարաւ 319, որով հրամայէք իմում նուաստութեան՝ թէ ունիցի՞մ ես զյոյս յինէն վասն եկեղեցական բանախօսութեան, այն է, քարոզելոյ և ատենաբանելոյ անդ 'ի Կոստանդինուպօլիս. և թէ՝ գործք զորս ունի Վեհափառութիւն Ձեր յանձն առնել իմում նուաստութեան, և ժամանակք գործառնութեանցն անդէն ունին լինել որպէս և տէրութեան Ձեր և իմ համաձայնութիւն լինելոց իցէ. և ապա առ այս խնդրել ի տէրութենէ զպաշպօրտ յանուն իմ:

Ամենախոնարհաբար յայտնեմ՝ Վեհափառ Տէր, երբ նուիրեալ է անձն իմ վասն իմում հայրենի եկեղեցւոյ, և այժմ Ձերդ Վեհափառ տէրութիւն գտանի գլխաւոր և պաշտպան այնմ, չէ՛ն ինձ առանձին կամք առաջի հոգևոր տէրութեան Ձերոյ. և յոյս իմ յինէն ես համեմատութեամբ հասակակից աստիճանակցացն իմոց (եթէ չլինիցի յանդգնութիւն) չէ՛ այնքան անյոյս. այլ անբախտութիւն իմ այն եղև, զի կեանք իմ փակեալ գոլով յառանձնութեան աստ ի սենեկի ընդ այսքան ժամա-

նախ՝ սովորականն եղև յիս երկրորդ բնութիւն. ուստի և առ այնպիսի հրապարակական գործանութիւն՝ որոյ և նպատակն այլ իմն գերաղանց նկատողութիւն, անբաւական գտանիմ ես զիս. մանաւանդ զի քաջայայտ իսկ է Վեհափառ օծութեան Ձերում բնաւորեալն յիս տկարութիւն՝ զօր և կրեմ իսկ այժմ:

Ձերում Վեհափառ Օծութեան
ամենախոնարհ ծառայ
Յովհաննէս եպս. Շահխաթունեանց»:

Թ. 30
ի 29 օգոստոսի
1847, ամի
յէջմիածին:

Բայց Ներսէս կաթողիկոսի կատարեալ վստահութիւնից և համակրութիւնից, որը վայելել էր միշտ և վայելում էր Շահխաթունեանցը, նա գրաւել էր և ժամանակակից թէ՛ օտարազգի և թէ հայազգի ուսումնականների, ինչպէս և առհասարակ կրթուած դասի յարգանքն և սէրը: Ամենքը նորա օգնութեանն էին դիմում, երբ գալիս էին կամ Արարատեան նահանգի հայ պատմական յիշատակարաններն ուսումնասիրելու կամ Էջմիածնի մատենադարանի ձեռագիրներից օգտուելու: Նորան էին վստահանում հաղորդելու մի որ և է կարեւոր տեղեկութիւն, որ շահեկան կամ հետաքրքրական էր ազգային կամ եկեղեցական տեսակէտով: Նորից յայտնելով մեր խորին ցաւը, որ վերագրեալ նպա-

*տակների ծառայող նամակները բոլորը չեն հասել մեզ՝ ստիպուած ենք բաւականանալ ամենափոքր ծանօթութեամբ։*

*Օտարազգիներից երկուսին գիտենք, որոնք իրանց ուսումնասիրութիւնները կատարել են Յովհաննէս եպիսկոպոսի ցոյց տուած օգնութիւնով։ Դորանցից մինն է Մուրավեը, միւսը՝ Հայագէտ Բրոսսէն։ Մուրավեւի* «Грузія и Арменія» *աշխատութեան մէջ (Սան Պետերբուրգ. 1848. եր. 165—166) կարդում ենք. «Ուսումնական Յովհաննէս եպիսկոպոս Շահխաթունեանցն, որ ստորագրել է Արարատեան նահանգի բոլոր հնութիւնները, սպասում էր ինձ մօտակայ Մողնու ս. Գէորգ վանքում. բայց լսելով՝ որ ծանօթացել եմ Աշտարակում, առաջարեց եկաւ ինձ մօտ և ես անցկացրի իրիկունը ինձ համար օգտակար խօսակցութիւնով։ Առաւօտը շտապեցինք Մողնու մօտով ուղղակի դէպի Ուշու ս. Սարգիս հինօրեայ վանքի աւերակները»։ Երևի թէ սորա ճանապարհորդութեան մէջ մտած բոլոր պատմական տեղեկութիւններն էջմիածնի և միւս հայ վանքերի մասին նոյնպէս հաղորդել է Յովհաննէս եպիսկոպոսը։*

*Հայագէտ Բրոսսէի Շահխաթունեանցին գրած չորս նամակները գտնուեցին վերջինի եղբօր տանը Շահրիար գիւղում, որոնցից յառաջ ենք բերում հետևեալները.*

3. Պետերբուրգից 1848 թ. օգոստոսի 14-ին գրում է ռուսերէն լեզուով.

«Ձե՛րդ Սրբազնութիւն

Տփխիսից յաջողութեամբ Պետերբուրգ հասած լինելով յուլիսի 27-ին՝ շտապում եմ այդ մասին տալ ձեզ տեղեկութիւն, խոնարհաբար խնդրելով չմոռանալ ձեր ինձ տուած խոստումներն և ձեր բարեկամութիւնն, որ ցոյց տուիք իմ Էջմիածին եղած միջոցին:

Ճեմարանի համար առանձնապէս շահեկան կլինէր ունենալ պատճէնը Մխիթար Գօշի աշխատութեան, որ կրում է, եթէ չեմ սխալւում, «Գիրք Դատաստանաց» վերնագիրը, որ, որպէս յայտնի է ձեզ, մի ժամանակ թարգմանուել է վրացերէն լեզուով, և կարող է շատ նպաստել յիշեալ թարգմանութիւնը ճիշդ հասկանալուն և բացատրելուն: Հետևաբար՝ դիմում եմ ձեզ խնդրելով, որ հրամայէք մէկին անթերի պատճէնը վերցնել և ուղարկել ինձ. աշխատութեան վարձը, (կվճարուի). դուք գիտէք, որ մեր կողմից այդպիսի դժուարութիւն չի լինի:

Գիտէք դուք, թէ Էջմիածնի մատենադարանի ձեռագիր գրքերի մանրամասն նկարագրութեան նկատմամբ ես ինչպէս գնահատեցի ձեր գեղեցիկ աշխատութիւնն, որ պատմական գրուածների, որպէս նաև ս. գրքի մասին արդէն վերջացած է: Ի հարկէ այդ ձեր սեպհականութիւնն է և առանց ձեզ ոչ ոք չի կարող օգտուել, բայց յուսով եմ, որ ձեր հայրենիքի փառքի և ձեր անուան համար չէք զլանալ ուղարկել ինձ այդ ցուցակը կամ մասամբ կամ ամբողջովին, երբ կյաջողէք աւարտել:

Հաւատացած եղէք, որ ես յամենայն դէպս պատրաստ եմ ծառայել ձեզ այստեղ որչափ կարող եմ, և կասկած մի ունենաք այն խորին յարգանաց մասին, որով պատիւ ունիմ լինել Ձերդ սրբազնութեան

Խոնարհագոյն առ ծառայութիւնս
Բրոսսէ

Խնդրում եմ ներողութիւն կրել յայտնելու իմ յարգանքս Ղուկաս արքեպիսկոպոսին և Թադդէոս վարդապետին, նոյնպէս և բարի բժիշկ Վասակեանցին»։

Հայազգի ժամանակակից նշանաւոր ուսումնականներից Յովհաննէս եպիսկոպոսին համակրող և նորա հետ միշտ թղթակցող եղել են Ստեփաննոս Նազարեանց և Խաչատուր Աբովեանց. մեծ է մանաւանդ առաջինի արտայայտած բարեկամական զգացմունքն և սէրն, ինչպէս պիտի տեսնեն ընթերցողները նորա մի նամակից և մի ուղերձից. այժ՛, դժբաղդաբար, միայն մի նամակից. մինչդեռ այդ նամակի վերջում դրուած 43 №-ը ցոյց է տալիս հաւանօրէն միևնոյն անձին գրած նամակների թիւը, որոնք այժմ չկան։ Ստեփաննոս Նազարեանցը լինելով քառասնական թուականներին Ղազանի համալսարանի պրոֆեսոր՝ իւր բարեկամի գովութեան և վարձատրութեան արժանի գրաւոր աշխատութիւնների արժէքը համալսարանի ուշադրութեանն է ներկայացնում և վերջինը 1844 թուին ընտրում է Տահխաթունեանցին Անդամ-թղթակից, ուղարկելով յետագայ վկայագիրը, որ մեր խնդրով լուսանկարել է բնագրից Հ. Մեսրոպ վ. տէր Մովսիսեան։

Նազարեանցի նամակը.

«Ի 28 փետրվ. 1847 ամի ի Ղազան»

«Գօսացին դարնիք անարժան գլխոց
Լռեսցեն ներբողք պատիր մեծութեան
Մինչ չափ և կշիռ խուզարկու յետնոց
Գործ իւրաքանչիւր մատուսցեն յատեան.

Վ. Յ.

Վեհապատիւ Եպիսկոպոսի Յովհաննու Շահխաթունեան և մերում գիտնական բարեկամի

Խնդալ Յարգանօք:

Զարդոյ պատգամ սիրեցելոյդ յանցելոյ ամսեան 24 Թուականէ, զգլրոշմեալն յաւէտ հոգւով քան մարդկեղէն գրչաւ ընկալեալ ի վերջ ամսոյս, փութամ ըստ իմում սովորութեան շնորհակալու ձեզ լինիլ որպէս վասն նամակիդ, նոյնպէս և պատուական ծրարիդ. և ոչ (այս) չափ ինչ. այլ պէտ յանձին կալայց յիւրում պահու հանդիսացուցանել զձեզ ի լոյս հրապարակի՝ ուր պսակին քաջք և ժրագլուխք յուսումնականացն կարգի՝ ըստ իւրաքանչիւր արժանեաց, թէպէտ ըստ քոյդ գեղեցիկս ազդելոյ ոչինչ ի բնաւս էից Առաքինւոյն բաւական. բայց շնորհեսցի մեզ ա՜ղէ պատուասիրել զԱրժանիդ քան զամենեսեան՝ որով և բերին կարողութիւնք տկար մահկանացուացս, զառաւելն ի գիտակցութիւն մտաց ձերոց թողեալ ապաստան: Համաձայն եմ ասացելոյդ՝ թէ «խոյք սովոր են գիպիլ ընթացիկ ասից. իսկ ոտք անգործք չունին և արգելս» այլ ի հիացման կամ, զի խոյք այսպիսիք

անտի յառաջ՝ գան, ուստի գործ էր ակնկալել ի Հայրենասիրաց ասեմ և ի լուսաւոր կոչեցելոց արանց. լուծէք զվարան տարակուսիս եթէ կայր ինչ է. բայց ես այլ ազգ զերն Հասկանամ և ոչ կարեմ Հաւատալ պատմելոցն ինձ առ ի բարեկամէզ: Զէ՛ անղուոյս մանրախուզիւ փաստաբանել զիմս արդարութիւն ընդդէմ այնոցիկ բառդատանաց՝ որք զինև արկեալ անսանեն. այլ խմա այսչափ ինչ. Նախ առաջին՝ եթէ ասացաւ առ ի մէնջ ինչ մի յանհաճոյից ի սակս Աղէքսանդրու Հայրապետի Ջուղայեցւոյ, ոչ յանձնէ մերմէ ասացաք, այլ առաջնորդեալ ի պատմութեանց աւանդելոց մեզ ի մխիթարեանց՝ զոր ցայսօր ժամանակի անփոյթ եղեն ուղղափառք մեր, աւելի քան զմեղ անղեակք Հոգևոր և Հաւատոյ իրողութեանց, մերժել և Հերքել՝ յերևան Հանդիսացուցեալ զլոյս ճշմարտութեան. իսկ ինձ զրկելոյս յամենայն այգպիսի Հին ծանօթութեանց ի ձա՞Հ արդեօք պատաՀիցի մեղադրութիւն, մանաւանդ զի մեկուսի ի խարդախութենէ մտօք և սրտիւ զայլս իսկ անխարդախ և ճշմարիտ խոսեցեալ զայնոսիկ Համարէի՝ որք և զգաւանակիցս իւրեանց ո՛չ միանգամ ընդ վայր Հարին և Հարկանեն, մինչ բան է առ նոսա զվրիպակաց յուղղափառութենէ՝ յեկեղեցւոջ Հայոց ի Հասարակի և ոչ լատինաՀայոց ի մասնաւորի: Ասացելոցս վկայ անՀակառակելի որք ի մէջ բերին ի պապականն Սոմալայ ընդդէմ պապականին Գալանու սորբենաինացւոյ ի կարգէ Թէատինեանց: Երկրորդ՝ անՀիմն բանբասանք են այս և եղջերուաքաղք իսկ՝ որպէս թէ

ի Ռուս գրուածս իմ տացեալ լիցէ յինէն՝ թէ Հայք ընկալան զժողովն Քաղկեդոնեան, որ ոչ ուրեք տասցաւ արդեօք. այլ եթէ կամիք իմանալ՝ թէ ո՞յք ոմանք տացին և գրեթէ ընդունել ետուն Հայոց զժողովն զայն, լուեալ ուսարուք ի մէնջ. Լազարեանք, Լազարեանք, և ոչ մեք։ Ի կնիք հաստատութեան բանիցս ի մէջ բերեմք զորս ընթերցեալ լինիս յօրագրի Նախարարութեան Ներքին գործոց, ամ 1843 օգ. տետրակ ութերորդ եր. 212. Патріархъ Папгенъ, воспользовавшись минутой отдохновеніи армянской церкви отъ гоненія Персовъ при храбромъ Марзбанэ Ваганэ Великомъ, собралъ націанальный соборъ въ Вагаршабадѣ (491), для приведенія въ ясность *спутанныхъ страстями понятій и основываясь на неправомысленныхъ указахъ Императорскихъ*, отвергъ соборъ Халкедонскій. Все *это произашло отъ недоразуменія*, которое открылось, но поздно. Ապա թէ ոչ ընկալեալ էր Հայոց զժողովն Քաղկեդոնեան՝ առ ի չբաժանիլ ի միութենէ տիեզերական եկեղեցւոյն. ահաւասիկ եզրակացութիւն բնական և հեշտին երեխայից անգամ ի հանել յասացելոց անտի ոչ մերոց այլ արանց գրողաց ընդ ակնարկութեամբ Լազարեանց. բայց աքացել ընդդէմ խթանի դժուար լիցի քաջափայլեցդ արանց. իսկ զամենայն աղտեղութիւն ծնանիլ ի սրտի առ իս առ մեղաւորս ի հարկէ դիւր և հեշտ։ Ձեմ այնքան թեթեւամիտ և ապաժոյժ առ ի պատերազմ կաքաւել ընդ արանց՝ որոց չև են ծանօթ և տարրական հիմունք տրամաբանութեան. այլ յիւրում պահու տասցուք ի լուր ուսումնականաց՝

զոր ինչ մեքն խորհիմք զՀայոց եկեղեցւոյ, առաջի աչաց ունելով զարձանագրութիւնս ժողովոյ յուղղափառութեան մասին, որպէս յԵփեսոս, ի Նիկիա, նոյնպէս և ի Քաղկեդոն..... այս չեմք աստուածաբան, բայց և մեզ մատչելի ապաքէն իրքդ այդոքիկ, եթէ գիտեմք զպատմութիւն քրիստոնէական եկեղեցւոյ. և յայսմ մասին ոչ մի գործ, այլ բաղումք առ մեզ գտանին առ յականաւոր աստուածաբանից Գերմանիոյ։ Այլ գուցէ թէ Հայք զինքեանս միայն առ ուղղափառս ունին, իսկ զբովանդակ Եւրոպա ի խաւարի չարափառութեան, բայց յայնժամ պարտ էր այրաբար յասպարէզ անցանել և վկայութեամբ հաստատել զիրաւունս իւր, և ոչ ի ստուերային անկիւնս Ասիոյ սողալ և թաքչել։ Դիցուք թէ Հայք մեր ուղղափառ քան զայլ ամենայն ազգս իցեն, այլ ասա՛, պատուական իմ, ո՞ւր են գործք և արդասիք այդր ուղղափառութեան, այդր եկեղեցւոյ, այդոցիկ հոգևորականաց, այդր ուղղափառ ազգի. ամենայն ծառ ի պտղոյ իւրմէ ճանաչի. ո՞ւր են այդ ամենայն պահանջեալք և պահանջելիք. բայց եթէ կամիք իմանալ թէ ո՞ւր իցեն, զոր օրինակ՝ պտուղք և արդասիք գերմանական եկեղեցւոյ, ահաւասի՛կ է ասեմ հրոկայամարմին և վեթխարի այն դպրութիւն և բազմոստեան բարգաւաճ գիտութիւն գերմանական ոգւոյ. զի իւրաքանչիւր ազգ է որդի իւրոյն եկեղեցւոյ, իւրոյն հաւատոյ և զամենայն զնիւթ մտածելեայն իւրոց աղբերացեալ ունի ի կրօնապաշտականէն։ Ցուելցուք. յառաջինսն և զայս. բարւոք է. ուղղափառ են Հայք քան զամենայն քաղ-

կեդոնեանս . . . . . . . . . . . . . . . . . . . . . բայց առաջնորդն և պարագլուխն Հայոց ուղղափառութեան ոչ դանդաղեաց, ոչ տարակուսեցաւ, այլ փուռըս անձին համարեցաւ ընդունել զկնիք Հայրապետական իւրոյ հաստատութեան.... քաղկեդոնեան . . . . . . . . . . . . . և զկնի այսորիկ ցոյց յանձին բերել կամի զիւրոյն նախանձաւորութեան հայրենի ուղղափառութեան՝ որ հրաժարի ի քաղկեդոնեանց. ո՛ հաւատասցէ զմա, ուր գործք զայլ ինչ ուսուցանեն մեզ[1] :-Այլ լռեսցէ գրիչս՝ ըստ չափ և կատար արշաւեալ ոչ յինքենէ՝ այլ անխոհեմ և անպիտան վեճասիրութեամբ Հայոց՝ մանաւանդ յաւուրս մեր՝ ուր Եւրոպա համայն ի միութիւն նկրտի՝ խանձեալ և վաստակեալ յարիւնոտ պատերազմաց անտի վասն հերձանելոյ զմի մարմին Քրիստոսի յայդչափ կտորս և ի ծուէնս: Քրիստոնէութիւն, ճշմարիտ քրիստոնէութիւն ոչ յանպիտան վիճաբանութիւնս բովանդակի, այլ ի գործ կենդանի. բայց շատ է երեխային խաղալիկ իւր. առն հասակաւորի այլ ասպարէզք առաջի դնին: Դատապարտեսցէ զիս պատուական Հայրապետդ որչափ և կամի: Բարերարութեամբ օտարաց յօտար աշխարհի ուսայ ես. և այժմ իսկ քրտամբք երեսաց իմոց պաշտեմ զպաշտօն իմ և կերակրիմ իմովք ընտանեօք առ դրան

---

[1]) Ծան. Տեսանէ՞ք թէ որպիսի ահարկու հետեւութիւնք յառաջ գան ի մտածութեանց այտի. ուստի խորհուրդ տամք և Հայրապետիդ և Հայրապետականացդ դադարել յայդպիսեաց, բանալ դուռս, ծանուցել զբարեկամ և զթշնամի, և մի՛ համարել թէ հայհոյելով և բարկոծելով զանմեղ բարեկամս ձեր՝ յաղթահարել մարթիցէք զթշնամի ձեր. յայդպիսիս ոչ տեսանին և հետք առողջ բանի:

Ռուսաց կայսեր. Հայո՛ց ոչ կարօտիմ ես, և Հայք անկարողք են լինիլ պատուորք իմ. այլ զոր կամէի, և կամէի ապաքէն անձնուրաց Հայրենասիրութեամբ, ոչինչ յիշեալ զանպիտան առ իս վարս իմոց Հայրենեաց՝ կարեմ առնել և ո՛չ. զի արք անասնամիտք խափանեալ զամենայն ստնփոխս իմ, ո՛չ Թողացուցանեն զիս յառաջ խաղալ։ Աշխատեցայց վասն Եւրոպացւոց, գրեցից ի լեզու լատին, գերմանացի, գաղղիական և անգղիական՝ վասն ազգացս այսոցիկ՝ որք քան զՀայս լաւ են գիտեն պատուել զՀայկական դպրութիւն։ Առ իւրսն եկն, և իւրքն զնա ոչ ընկալան. մարգարէ յիւրում գաւառի պատիւ ոչ ունի։ Ուստի քան զկեալս իմ ի մէջ Հայատեաց Հայոց թեթևագին ինձ կեալն ի մէջ Հայատեաց ռուսաց և անգործութիւն վասն Հայրենեաց, որք չեն. զի անուն Հայ և սիրտ դժոխային ոչինչ օգնեսցեն ինձ։ Այսքան առ այս։

Հասկացայ և ոչինչ ի գրելոյդ՝ որպէս թէ խըմբաւորեալ իցեն ի Տփխիս դասք Հայրենասիրաց, ուր և արդիւնաւորիցին գործք. այլ թէ ո՞վ իցեն ընտրեալքդ այդոքիկ, չասէք ոչինչ։ Տարակուսիմ և իրաւամբք՝ եթէ իցէ առ Հայս Հայրենասիրութիւն կամ Հայրենասէրք, ոչ այդոքիկ կարծեցեալ լինին ուր չիք ճշմարիտ լուսաւորութիւն՝ որ միայն կարէ իբրև ի մայրական իւրոյ արգանդէ ծնանիլ Հայրենասէրս և Հայրենասիրութիւն։ Ապա թէ ո՛չ, սուտ են ամենայն Հայրենասէրք, սուտ է և ամենայն Հայրենասիրութիւն. իսկ որ և տեսանի թուի միայն առ աչօք, բայց չէ իրօք։ Կամի՞ք և այսմ խոսուն

ապացոյցս․ այլ շնորհեցէք ինձ զայսոսիկ, մի՛ զի բանիցս հանդէս տաղտկութիւն ի լսելիս ձեր արկանիցէ, երկրորդ՝ զի հասանիցէ ինձ բուռն հարկանել անդրէն դարձեալ զօրինակաց քաջափայլից արանց՝ բազմօրինակաբար և այն պատճառանօք՝ որպէս ասի մեծի հայրենասիրութեան զազգ իւրեանց մատնողաց և մատնելոց արդէն: Այս ամենայն ինչ ընդ պղտորեալ ակնոց ասիական տեսեալ, քաջ և անզուգական միանգամայն երևի, բայց մինչ յառաջ մատուցեալ զփորձաքարն Եւրոպեան խուզարկութեան՝ զննել կամիցիս զլաւ և զխոտան, յայնժամ կարծեմ՝ ոչ այլազգ քան զիս դատեսցես: Ներեցէք ազատաբանութեանս, զի պատուելով և սիրելով զձեզ՝ խաբէութիւն և սուտակապաս բանս՝ անարժանս իմաստուն և խոհական բարեկամիդ վարկանիմ. այլ եթէ խորհիմ և խօսիմ անհիմաւորս և վրէպս ի ճշմարտութենէ, նոյն իսկ ազատութիւն ձեզ առ իս շնորհեալ լինի: Զոր չև գիտեմ, ուսանիլ ոչ ամաչեմ, մանաւանդ յայնպիսի գիտուն և ընտիր բարեկամէ-որպիսի դուքն մեզ ճանաչիք մինչև յօրս յայս:

Յուսամ զկնի ոմանց եօթնեկաց առաքել ի վայելս պատուականիդ զգրչագիր փոքրիկ գործ մեր՝ աշխատասիրեալ, աւա՜ղ, ի պէտս Հայկազանց, այն է՝ Հ ո գ ե բ ա ն ո ւ թ ի ւ ն պսիխօլօղիա առ յոյնս և Եւրոպացիս ձայնեալ. ուր ի ճառ մտանեմ զկարողութեանց մարդկեղէն հոգւոյ և զնոցուն գործականութեանց, յաւելեալ ի վերջն և զկանոնս դաստիարակութեան՝ իբրև հանդէս իմ՝

ուր տեսականք պայծառափառ ևս յառաջ մատչին ի գործականի անդ։ Աչացս անդարմանելի ակարութիւն ոչ ներէ առ ժամս մաքրագրել զաշխատութիւնն զայն. բայց ջանացից փոքր ի շատէ ծանօթ և գիտուն զձեզ առնել և հայկականաց որ յինէն վաստակոց. զի մինչև ցայսօր ոչ այլազգ զիս ճանաչէք, բայց ի սոսկ Նամակաց՝ ուր ներեալ է միայն զրոյց հասարակ և ոչ խնդիրք իմաստասիրականք։

Ողջ լերուք անմոռաց զմեզ ունելով
զյարգողս և զսիրողս ձեր միշտ և յաւիտեան
զՍ. Նազարեանց։

№ 43

Զանուն իմ «Նազարեանց» և առ այս անգամ աղճատեալ էր դպիրն ձեր ի Назаровъ՝ որ չեմ»։

Որչափ կարելի է լինում հասկանալ այս նամակից, Նազարեանցի դրուածների առիթով ժամանակի ընթերցող հայերի մէջ դայթակղուածներ են եղել և պախարակել են, գուցէ մինչև անգամ դժուարութիւններ են յարուցել նորա դէմ։ Յովհաննէս եպիսկոպոսը նորան յորդոր կարդալով բանի տեղ չդնել այդ բոլորը, քանի որ գործող մարդուն թշնամիներ միշտ կլինին՝ միևնոյն ժամանակ, երևի, արդարացի է գտել տրտունջը նորա մի սխալ կարծիքի դէմ Աղէքսանդր կաթողիկոսի նկատմամբ. և Նազարեանցը անկեղծութեամբ խոստովանում է, որ զարմանք էլ չէ, եթէ սխալ հայեացք է յայտնել, հետևելով Մխիթարեանցների աւանդած պատմութիւններին։ Միւս մեղադրու-

թիւնն, որ թշնամիները տարածել են նորա վերայ, այն է եղել, որ իբր թէ Նազարեանցը ռուսերէն մի աշխատասիրութեան մէջ ասել է՝ թէ հայերն ընդունել են Քաղկեդոնի ժողովը. և նա իրանից մերժելով այդպիսի մի կարծիք յայտնած լինելը՝ ցոյց է տալիս թէ ովքեր այդպիսի մտքով գրել են։

Նամակի ամենահետաքրքրական մասն այն է, ուր Նազարեանցը գրում է. «Հասկացայ և ոչինչ ի գրելոցդ՝ որպէս թէ խմբաւորեալ իցեն ի Տփխիս դասք հայրենասիրաց, ուր և արդիւնաւորեսցին գործք. այլ թէ ով իցեն ընտրեալքդ այդոքիկ, չասէք ինչ»։ Եւ իրաւի ովքեր են եղել այդ հայրենասէրներն, որոնց Տփխիսում խմբուելու մասին Շահխաթունեանցը հաղորդել է Նազարեանցին. ի՞նչ գործ են կամեցել սկսել հայրենասիրական եռանդով, որին, սակայն, Նազարեանցը կասկածով է վերաբերւում, ասելով թէ հայերի մէջ ճշմարիտ լուսաւորութիւն չլինելու պատճառով, հայրենասիրութիւն կամ հայրենասէրներ էլ չեն կարող լինել։ Ափսոս, որ ուրիշ ոչ մի տեղեկութիւն չունենք այդ մասին։ Իսկ նոյն 1847 թուի յունիսի 6-ին Սրովբեանցը Երևանից Շահխաթունեանցին գրած նամակում յայտնելով իւր Թիֆլիզ գնալն, այնտեղ գործ գտնելու դիտաւորութիւնով, ծանուցանում է, որ եթէ իրան յաջողի այնտեղ մնալ մշտապէս, Նազարեանցն էլ գալու է իւր մօտ «ազգօգուտ նպատակով». ուրեմն կամ նորան յայտնի չէն եղել առաջին խմբուածները, կամ նա նորանց հետ գործ ունենալ չի կամեցել։ «Պարտիմ թողուլ

զԵրևան և դիմել ի Տփխիս առ ընտանիս իմ, գրում է նա...... եթէ բաղդն յաջողեսցէ և բացցի ինձ տեղի ծառայութեան, կամք իմ է գլխովին Մնալ ի Թիֆլիզ, ուր տեղափոխ լինել կամի և միանալ ընդ իս մերս Նազարեանց առ Նպաստ ազգօգուտ։ (Եթէ) Ոչ յառաջ եկեսցեն այս ամենայն մտածմունք, զկնի իբր 14 կամ 20 աւուրց առեալ զընտանիս իմ վերադարձայց կրկին յԵրևան առ ի սպասել դիպող ժամանակի»........

Հոգեբանութիւնն, որի մասին յիշուած է նամակում, նոյն թուին ուղարկուած է Շահխաթունեանցին, նորան էլ նուիրուած յետագայ ձօնով.

«Առ Վեհապատիւ և գիտնական եպիսկոպոս
Տէր
Յովհաննէս
Շահխաթունեանց
Նուէր սիրոյ և յարգանաց
ի հեղինակէն»։

Այդ ձօնից յետոյ միւս երեսում Նազարեանցը գրում է հետևեալ ուղերձ-նամակը.

«Մեծապատիւ և գիտնական բարեկամի իւրում
Խնդալ.

Շուրջ զինչ խաւար թանձրամած, լուսթիւն մահատիպ, ուրուականք զարշատեսիլք այլ յիս, շնորհօքն Աստուծոյ՝ բանականութիւն անխռով, արիութիւն սրտի, կամք առողջ, ձեռք գործական՝ թէև մարմին տկար. զոր առեմ՝ վկայութեամբ հաստատեսցէ ըստ իմիք աշխատութիւն մեր՝ որ

և իցէ, անօսր, փոքրիկ՝ այլ մեկուսի յամենայն մեծամտութեան, զոր և վստահացեալ ի ներողամիտ բարեկամութիւն սիրեցելոյդ՝ մատուցանեմ ձեզ ի նուէր զատկական՝ զհաշտ ակամբ ձերդ ակնարկութիւն աղաչելով և մաղթելով։ Բայց բարեկամայք մի՛ ի վերայ իմ՝ զի չեղև ինձ զարգոյ անուն գիտնական բարեկամիդ տպել արձանագրել ի ճակատ մատենիս. այլ զի՛նչ ով երանելի, մի՞թէ մեկենաս ոք մերձ կայցէ ինձ, մի՞թէ Լօրենցօ Մեդիչեան, մի՞թէ Ֆրիդերիկոս իմաստուն, մի՛թէ լուսաւոր Հայրենասէրք ինձ հովանաւորիցեն. ուստի՞ պաշտպանութիւն և սատարութիւն իմանալի գործոյ՝ ո՛չ ուստեք և ընաւ իսկ ո՛չ։ Որք միանգամ յածին զմեօք չեն՝ բայց Հայք Ռուսաստանեայց, չև ծաղկեալք տակաւին, այլ փտեալք և ապականեալք. Հայրենասէրք սուտք և խաբեբայք՝ ըստ որում ագէտք և խաւարամիտք, արք պատուամոլք, արք ատեցողք Հայրենի իմաստութեան՝ թէև աստեղազարդք. մատնիչք Հայրենեաց՝ թէև ոչինչ խղճալով յինքեանս յափշտակել պարծանս զականաւոր Հայրենասիրութեան. այլ թէ ո՞ւր են գործք կամեցողացդ ասել և լինել Հայրենասէրս, խուզարկէ և ոչ ոք. ո՛չ ուսումնարան ազգային, ո՛չ Հասարակաց տպարան Հայախօս գրուածոց, ո՛չ դատաքննիչ արքունի՝ Հայալեզու տպելեաց, ո՛չ ընկերութիւն ուսումնական, ո՛չ միաբանութիւն գիտնականաց ազգիս՝ եթէ ոչ կամիմք յանիրաւի իւրացուցանել մեզ զօտարաց վաստակս, այլ խոստովանիլ արդարութեամբ որ ինչ մեր են և որ ինչ օտարաց. միով

բանիւ և ո՛չ մի ինչ ցոյց իմանալի կենդանութեան առ Հայս մեր ի Ռուսաստանեայս. Թէպէտ շատախօսեն մարդիկ զգալստենէ Մեսսիային, այլ աչք իմ ոչ ուրեք զհետս նորա նշմարեն. զի մեսսիասք առանց փրկագործութեան ոչ ինձ կարծեցեալք լինին. ուստի համարիմ՝ թէ ընդունայն են ջանք մեր և վաստակք այլ և յոյս վերակենդանութեան ազգիս յաւերակաց իւրոյ. գուցէ յարիցէ մեզ այլ ոմն մեսսիաս բժշկիչ և բուժիչ հնացեալ վէրաց անբաղդ ազգի իւրոյ. բայց այդ անյուսալի երևի, զի ուր չիցէ սերմանեալ զխտուն սերմանահանի, զի՛նչ պտղոց ակնկալել անտի մարթ մեզ իցէ. ուրեմն ոչ այլ ինչ մնայ Հայոցս ի Ռուսաստանեայս բայց մերկացեալ յանձանց զամենայն Հայութիւն, կլեալ ի մի կուլ ի վիթխարի հսկայէն, զի չեմք արժանի սեփական կենաց՝ նոյն և անարգեալ և խայտառակեալ զյիշատակ նախահարց մերոց՝ դարձցուք ի Ռուսս. այսմ ցանկան պատուական հայրենասէրք Հայոց առ մեզ, զայս հոգան զտիւ և զգիշեր խաւարեալ մտօք իւրեանց, և այս լիցի վախճան կատարածի մերոց ի Ռուսաստանեայս. որ ոչ կամի պահպանել զկենդանութիւն իւր ի շարս կենդանի էակաց, մեռցի՛ խորտակեալ ի սրոյ ամենածախ ծերունւոյն Կռոնոսի՝ որ սովոր է միշտ կլանել և մարսել զանպիտանացեալ որդիս մարդկութեան։ Սատանօր սակաւ ինչ օգնեսցէ սոյլկեան փիլիսոփայութիւն մեր. առաքինութիւն իւր ինքեան բաւական։

Ցաւուր յայսմիկ պարտ էր այո՛, ձայն ուրա-

խութեան, աւետիս բարեկենդանութեան յունկն բարեկամիդ հնչեցուցանել. այլ ուստի՞ առից դայ-դոսիկ. զոր ինչ արարին և առնեն հայք մինչև ցայ-սօր զայն և միշտ քաղել ունիմք, և կթել ի բու-րաստանէ Թունաւոր բուսոց մերոց: Զի՞նչ խօսե-ցայ ի գրուածս իմ յունկն ժողովրդեան հայոց ի Ռուսաստանեայս. զո՞ր խնդիրս ո՛չ իմ, այլ լուսա-ւորեալ դարու մերում առաջի եդի ի քննութիւն հայրապետաց, եպիսկոպոսաց և իշխանաց. այլ խօ-սեցեալքն իմ երևին իբրև չխօսեցեալս՝ կամ ըստ Մովսէսի Խորենացւոյ իբրև զխօսեցեալս յունկն մե-ռելոց. այսմ վկայ է և բարեկամդ, ուրեմն չէք յիմ վերայ կասկած բամբասանաց: Ողջնեցէ Քեզ տէ՛ր

և տառապեալ բարեկամի քում
Ս. Նազարեանց»:

Այդ միևնոյն հոգեբանութիւնն, որի ձեռագիրն է նուիրել հեղինակն իւր սիրած բարեկամին, ըստ որում, ինչպէս գրում է, տպագրութեան ծախ-քը վճարող «Մեկենաս» չէ ունեցել, տպագրուել է Մոսկուայում 1851 Թուին, բայց ոչ այլևս Շահ-խաթունեանցի անուան նուիրուած, այլ մի վաղա-մեռիկ մանուկի յիշատակին, որովհետև վախճա-նուածի հայրը, Խաչատուր աղա Լազարեանցն է վճարել տպագրութեան ծախքը: Դեռ աններելին միայն այդ չէ Նազարեանցի համար, որ 80 երեսից բաղկացած մի գրքոյկի տպագրութեան ծախքը— 100 կամ 150 րուբլի ստանալու համար մոռանում է այն բարեկամի անունն, որին չորս տարի յառաջ ընծայուած էր աշխատութիւնն, և նուիրում է

«Բարեբանեալ յիշատակի վաղամեռիկ եղելոյ մանկանն Յովհաննու Խաչատրեան Լազարեանց». աններելին այն է, որ 1847 թուին իւր բարեկամին գրողը

«Թող ջորանան անարժան գլուխների զարնիները,
Թող լռեն պատիր մեծութեան ներբողները
Քանի որ խուզարկու յետագաների չափ ու կշիռ
Իւրաքանչիւրի գործը հրապարակ պիտի հանեն»

1851 թուին տպագրական մի չնչին ծախս վճարող հօր վաղամեռիկ մանկան յիշատակին ահա ինչ խօսքեր է ուղղում.

«Յաւերժացեալ դու
Բաղդ յաչաղկոտ թէ ոչ շնորհեաց
Առ կենդանեօքդ զքեզ պաշտել,
Ի Քոյդ շիրիմ սուրբ արտասուաց
Թողցի զայս իմ երկ նուիրել»:

Յովհաննէս եպիսկոպոսին ուղարկուած հոգերանութիւնն է, որ գրեթէ առանց փոփոխութեան տպագրուել է՝ բացի վերնագրից և նորան հետևող բառերից: Ձեռագրում կարդում ենք.

«Հոգերանութիւն համառօտ
աշխատասիրեալ
Ս. Նազարեանց մողխտրոսի Ասիական Դպրութեան
Ի Ղազան».

Իսկ տպագրածի մէջ—«Ստեփաննոսի Նազարեանց
Վարդապետի
Արևելեան լեզուագիտութեան
Ցաղագս
Փորձական հոգեբանութեան
Ճառ».

Ձեռագրում յիշեալ բառերից յետոյ գրուած է յունարէն և հայերէն. «Ծանիր զքեզ» Թաղէս. իսկ տպագրուածում վերոգրեալին փոխանակել է Պերսիոսի ասացուածը. «Որպիսի հրամայեցարդ լինել յԱստուծոյ և յորում մարդկեղէն կարգի զետեղեալդ իցես ի բնաւս, ուսի՛ր»:

Մեզ մնում է այժմ Շահխաթունեանցին գրուած նամակների սակաւ մնացորդին վերջ տալ մի նամակով, որ գրուած է Կ. Պոլսից 1847 թ. հոկտեմբերի 21-ին, և որ՝ թէև չէ կրում Յովհաննէս եպիսկոպոսի անունը, բայց ի նկատի առնելով, որ Ներսէս կաթողիկոսից յետոյ նա էր միայն Ռուսաստանի հայ հոգևորականների մէջ Թուրքահայերին ծանօթ և յարգելի «անշահախնդիր ազգասէրը», չենք տարակուսում համարել նորան ուղղած այդ նամակը.

«Գ ա ղ տ ն ի:

Կոստանդնուպօլիս 21 հոկտեմբեր 1847.
Հայր Սրբազան

Մէկ հարկաւոր գործ մը կայ ձեր Սրբազնութեանը առաջարկելեք: Գործը որչափ հարկաւոր և մեծ է, այնչափ ևս անոր բարի և օգտակար տնօրէնութիւնը ցանկալի գիտեմք ձեր սրբութեան, և ազգին հայոց խիստ շահաւոր ըստ ժամանակին: Անի քաղաքին պահպանութիւնը կըսեմք: Այս քաղաքը՝ ինչպէս ձեր Սրբազնութիւնը քաջ գիտէ, շատոնց քայքայեալ և մարդախոշոշ քիւրտերուն ձեռաց տակը անխնամ և անբնակ մնացեալ, հիմա

նոր Թշնամիներու իշխանութեան տակը իյնալու վրայ է. քանզի քանի մը կաթոլիկ քահանայներ հոն գային, հոն մէկ երկու կիսաւերակ եկեղեցիներուն իբր թէ տէր ըլլալով, հոն հողեր փորել կուտան, գետնին տակէն հին ձեռագիրներ կգտնան, ուրիշ հնութիւններ ձեռք կբերեն, թէ գաղտնի և թէ յայտնի. և այս ըրածնին աւելի համարձակ ընելու համար, անդին ասդին գրեր են, որ ազգաւ կաթոլիկ ժողովուրդներ երթան, խոստանալով, թէ հոն շատ հողեր կան որոնք տէր չունին, և անդ երկրագործութիւն ընել խիստ կարելի է։ Ըսել է, թէ հոն գաղթական շատցունելով օր ըստ օրէ, կաթոլիկները իրենց սեպհականելու կջանան ամենայն կերպիւ։[41])

Հայոց ազգը լսեց այս բանը, շատ ցաւեցաւ. խելքը գլուխ մարդիկ շատ կմտածեն մէկ ճար մը, այնպիսի ճար, որ կաթոլիկներուն ըրած գործերը իրենք ընեն, և անոնց թող չտան, բայց մինչև հիմա ճար մը չգտան, և կարծեմ չկրնան պիտի գտնալ. պատճառները յայտնի են Սրբազնութեանդ։ Ծառայդ ալ խօսիմ համառօտիւ. կաթոլիկները այն տեղէն հանելու համար ոյժ պէտք է, այսինքն տէրութեան կողմանէ ոյժ։ Արդ՝ տէրութիւնը տեսնայ, թէ հայոց ազգը դէմ դնել կուզէ կաթոլիկներուն, զմեզ կարգիլէ, վասն զի կաթոլիկները ունեն իրենց մեծ բարեխօս զգաղղիացիս. եթէ հայոց ազգը սկսի հակառակութիւն մը, իսկոյն գաղղիացիք գուցէ և գերմանացիք պաշտպանութիւն ընելով, զկաթոլիկները յառաջադէմ կընեն եւ առաւել և զմեզ խայտառակ։ Այսպիսի փոլիթիքաի պատճառաւ, և այլ

այսպիսի կերպ կերպ պատճառներով Հայոց ազգը չկրնար առ այժմ մէկ ճար մը գտնալ, ինչպէս ձեր սրբազնութիւնն ալ կվկայէ. կայ ուրիշ գլխաւոր պատճառ մի ևս, այսինքն ստակ. կաթոլիկ ժողովուրդը թէպէտ ստակով շատ ձեռնտուութիւն չկրնար ընել, բայց անոնց վանքերը, մանաւանդ Մխիթարեան վանքը խիստ շատ հարստութիւն ունի: Այս վանքերուն այն ստակովն է, որ կաթոլիկ քահանայները անդին ասդին անդադար կպտըտին թէ ժողովուրդ շահելու համար, և թէ այսպիսի հնութիւններու տէր ըլլալու համար: Արդ՝ Տաճկաստանի հայ ժողովուրդը այնպիսի զզուելի սարսափելի հարստահարութիւններ կրէ հանապազ, որ չկրնար աղքատութենէ ազատիլ, և ազգօգուտ գործ մտածել և ազգօգուտ գործերու համար ստակ պատրաստել: Թէպէտ կան քանի մը վանք, զորօրինակ Երուսաղէմ, Մուշ, Սիս, Արմաշ, որ եկամուտ ունին, և հարստութեան ալ տէր են, բայց այն վանքերուն մէջ ազգասէր և հմուտ կրօնաւոր չկայ, որ վանքի ստակով ազգօգուտ գործ գործէ:

Ահաւասիկ, Հայր Սրբազան, այսպիսի պատճառներն են, որ կարգիլեն զմեզ: Բայց այս պատճառներ կան ըսելով, արդեօք յուսահատիլ արժա՞ն է. ո՛չ, Հա՛յր, ո՛չ, չենք յուսահատիր. յԱստուած ապաւինելով, կդիմենք առ Սրբազնութիւնդ, և կը խնդրենք ազգովին, որ մեր չկրցածը կատարելու ջանաք ի փառս Աստուծոյ, և յօգուտ ազգին: Մեր խնդիրքը ծանր չէ, խիստ դիւրին, միայն թէ կամեցողութիւն ըլլայ. բարեկամեցողութիւննիդ կը

լսեմք, գիտեմք, և կվկայեմք. ուստի կհամարձակիմ աղաչել, որ խնամելու հոգ ընեք որով կերպիւ և իցէ։ Եթէ կկամիք, մեր միտքին յարմար երեւցածը խօսիմք։

Լաւ կըլլայ, որ սուրբ Էջմիածնայ վանքէն մէկ ազգասէր և հմուտ կրօնաւոր մը երթայ Նաւի Անի քաղաքին մէկ եկեղեցիին մէջ. հոն քանի հողագործ անուորներ տանի, բնակեցընէ, և անոնց երկրագործութիւն ընել տայ. ապա սկսի տակաւ տակաւ հնութիւն փնտռել. և այլն, և այլն, և այլն։

Այսպիսի տնօրէնութիւն մը շատ սուղ չնըստիր, տարին մէկ երկու հարիւր մանէթով կըմընայ. բայց ապագայ շահը մեծ է թէ ազգին և թէ վանքին։ Էրզըրում նստող քօնսօլօսը ռուսաց տէրութեան կողմանէ հրաման ունենալու է իր տէրութենէն, որ յաճախ թղթակցութիւն ընէ այն վարդապետին հետ որ հրամանքնիդ խըրկէք պիտի։ Նոյն քօնսօլօսը կրնայ կաթոլիկներուն չարութիւնը խափանել առանց խռովութեան, և պէտք եղած ձեռնտուութիւնը ընել, մանաւանդ եթէ քօնսօլօսը ըլլայ բարեսիրտ մարդ մը, և հայոց յառաջադիմութեան ջանացող։

Այս խորհրդածութիւնը կյանձնեմք ձեր աչալուրջ արթուն հոգածութեան և ամենայնով անշահախնդիր ազգասիրութեանը։ Միայն այս ինչ խնդրեմք ազգովին, որ զանցառութիւն ընել չտայիք, և շուտով ի գործ դնէիք այս գործը, մինչդեռ ժամանակ կայ, և մինչդեռ կաթոլիկ քահանայները չեն տիրեր Անի քաղաքին։

Կա՛ց մնա՛ ընդ բազում ամս առողջ և զուարթ կենօք
Արժանայարգ Հայր Սրբազան
Ի պարծանս ազգիս և ի սէր
այնոցիկ որ ճանաչելով
զսրբազնութիւնդ ջերմեռանդն
աղօթեն վասն քո և վասն ազ-
գիսիրաց իբրև զքեզ»:

Անընդհատ մտաւոր աշխատութիւնը Մայր Աթոռի վանական անձուկ, խոնաւ և կիսալոյս սենեակի վատառողջ օդի մէջ շատ վաղ արդէն վնասակար ազդեցութիւն էր արել Յովհաննէս եպիսկոպոսի առողջութեան վերայ: 1843 թուականին նա Թիֆլիզ էր գնում հմուտ բժիշկների մօտ և նորանց խորհրդով Աբասթումանի հանքային ջրերն, որ «բազմամեայ փայծեղային տկարութիւնից» ազատուի, բայց այդ նորան առժամանակեայ աննշան մի թեթեւութիւն միայն տուեց. և երբ բժիշկների խորհրդով հայրենիք էր վերադառնում վարժուած կլիմայից կազդուրանք ստանալու, տասն ամսով անկողնի մէջ մնում է պարկած: Տկարութիւնը նորանում զօրացել և արմատացել էր. և թէև դեռ հոգու աշխուժով և աշխատասիրութիւնից ստացած բաւականութիւնով նա կարողացաւ արհամարհել նորա ծանրութիւնը մի քանի տարի ևս, բայց վերջապէս հատաւ այդ կարողութիւնն և «անձնամաշ հիւծմամբ» քայքայող տկարութիւնը 1849 թուին յիսուն տարեկան հասակում վերջ դրեց նորա արդիւնաւոր կեանքին, որ դեռ շատ օգտակար լինել կարող էր իւր գործունէութիւնով:

Հանգուցեալի ականատես ծանօթները նկարագրում են նորան բարձրահասակ և թիկնաւէտ մարդ, գեղեցիկ և պատկառելի կերպարանքով, քաղցր և հեզ բնաւորութիւնով, ճշմարտախօս և անշահասէր։

Կնքելով այս համառօտ կենսագրութիւնը՝ չենք կարող չարտայայտել մեր ցաւը, որ չնայած հ. Ղ. Ալիշանի ջանքերին՝ նորան չյաջողեց գտնել տալ Շահխաթունեանցի պատկերը՝ «Այրարատի» մէջ զետեղելու համար։

Հանգուցեալ Յովհաննէս եպիսկոպոսի մարմինն ամփոփուած է Շահրիար գիւղի եկեղեցու արևմտեան դրան մօտ. վերան կառուցուած է փոքրիկ գմբէթաձև շիրիմ։



# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ

---

[1]) Պատմութիւն կաթողիկոսաց Էջմիածնի։ Տեսնել «Ամենայն Հայոց Կաթողիկոսութիւնը և Կովկասի Հայք ԺԹ. դարում» մասն բ. Թիֆ. 1895 թ. եր. 127—133։

[2]) «Կտակօրէն զեկուցումն» փոքրիկ տետրակ, 14 երեսից բաղկացած, գրուած Թիֆլիզում, 1836 թուին։

[3]) Այս գերդաստանն իւր տոհմանունն առել է Քահխաթուն տիկնոջից, որ նշանաւոր լինելով ստացել է շահից մեծ մեծ արտօնութիւններ և իրաւունքներ, ինչպէս ցոյց է տրուած այն վկայաթղթերի մէջ, որոնք պահւում էին մինչև վերջին ժամանակները և գուցէ այժմ ևս պահւում են այդ գերդաստանի ներկայացուցիչների մօտ։ Երևանի Բէգական Յանձնաժողովն, որ համաձայն տէրութեան կարգադրութեան կոչուած էր ստուգելու նահանգի ազնուականների ծագման ճշտութիւնը՝ վաւերական ճանաչեց Քահխաթունեանցների ազնուականութիւնն։ Յանձնաժողովի անդամ էր և Յովհան Սուլթան Քահխաթունեանց, Յովհաննէս եպիսկոպոսի եղբայրը։

[4]) Այդ ցուցմունքը տուած է այն քննութեան առիթով, որ նշանակուել էր հարց ու փորձի ենթարկելու հանգուցեալ Աստուածատուր եպիսկոպոսի սպասաւորներին, որովհետև կասկած կար, թէ յիշեալ Նուիրակ-եպիսկոպոսի մահից յետոյ նորա հարստութիւնն յափշտակել են սպասաւորները։ Երկու ամառ (1894 և

1895 թուերին) աշխատած լինելով Սինոդի այժմեան տան սենեակներից մէկում պահուած հին թղթերի ուսումնասիրութեամբ և պատճէններ առնելով՝ Նորանցում գտել ենք և յիշեալ քննութեան գործը. և թէև օրինակած լինելով միայն այն, ինչ որ յառաջ բերած է աշխատութեանս մէջ, չենք կարող այժմ յիշել, թէ քննութիւնն ինչ արդիւնքի էր հասել, բայց ունենք հանգուցեալի նամակն առ Ներսէս արքեպիսկոպոս, որից իւր տեղում կտեսնեն ընթերցողները, թէ որքան անիրաւացի է եղել այդ կասկածն, որի պատճառով նա՛ կրել է և նիւթական ու բարոյական զրկանքներ։

5) Այս ձեռագիր պատմութիւնն (որպէս և Սիմէօն կաթողիկոսի յիշատակարանը), որ մինչև 1890 թ. պահւում էր Ս. Էջմիածնի մատենադարանում, 1893 թ. լոյս տեսաւ Թիֆլիզում «Դիւան Հայոց Պատմութեան» հրատարակութեան մէջ, կազմելով նորա Առաջին գիրքը։

6) Ամբողջ 10 տարի մնալով Տաճկաստանում՝ հարկաւ պիտի սովորէր թուրքերէնը։ Նորա մի նամակում, որ գրում է «ուրարակիր» Մոսերին 1834 թուի դեկտեմբերի 24-ին, վկայութիւն է բերուած Խենկ փիլիսոփայի «Խորհրդածութեան» տաճկերէն թարգմանութիւնից։ Նորա լեզուագիտութիւնն են ապացուցանում և յետագայ տողերը, որ գրում է նա նոյն թուին Շուշի Զաքարիա վարդապետին. «Այդր ի Շուշի բնակեալ Զարեմբայն նեմցէ լուտերական եկեալ այսր ընկալեալ յինէն աւանդ բառարան մի չորեքլեզուեան և մինչև ցկէսն յաւելեալ և հայերէն ի լուսանցսն թղթոց իմս գրչութեամբ. զնոյն եւ ստանալ և առաքել այսր խնդիր է նուաստիս»։

7) Յայտնի չէ մեզ, թէ յիշատակեալ Արիստակէսը յետոյ կեանքի ի՞նչ ասպարէզ է ընտրած եղել. միայն

երևում է, որ նա մինչև 1831 թուականն էլ ուսանելիս է եղել Զմիւռնիայում և մի քանի լեզուներ: Շահխաթունեանցն այդ թուականին Մեսր Մսերեանցին գրած մի նամակում ասում է. «Չէք անծանօթ զբաղմալեզու լիաշնորհ խմս Արիստակեայ՝ որ տակաւին կայ ի տարագրութեան սակս ուսման և լեզուագիտութեան»: Այնուհետև մէկ էլ 1845 թուին Շահխաթունեանցի գրած նամակից իմանում ենք, որ նա այդ ժամանակում Աղէքսանդրիայումն է բնակել, թէ ի՞նչ գործով, յայտնի չէ:

8) Ղուկասը Մաստարեցի էր, որ յետոյ բաւական յայտնի անձնաւորութիւն եղաւ Ս. Էջմիածնում իբրև տեղակալ Ներսէս և Մատթէոս կաթողիկոսների: Նորա ազգանունն էր Տէր Միքայէլեան, որը թող տալով եպիսկոպոսութեան միջոցին՝ գրում էր Արագածունի: Երևի Ղուկասն և Յոնանն էլ Աստուածատուր եպիսկոպոսի հոգևոր զաւակների թւումն էին և Կ. Պօլսից վերադառնալուց յետոյ նորա մօտն են եղել, այդ պատճառով էլ Յովհաննէսի հետ միասին ենթարկուել են կասկածի: Շահխաթունեանցն և Ղուկասը ամենասերտ բարեկամներ էին, թէև ուղղութիւնով և բնաւորութիւնով միմեանց աննման:

9) «Պատկեր ինքնայօժար կամօք հրաժարման կաթողիկոսին ամենայն հայոց Տ. Եփրեմայ և յաջորդելոյ նմին Տ.-Յովհաննու Կարբեցւոյ» կազմեալ աշխատասիրութեամբ Յովսէփայ Արքեպիսկոպոսի Վեհապետեան և Աօպետի ի 1841 ամի»: Այս ձեռագիրը տուեց մեզ օգտուելու պ. Վասիլ Եղիազարեանց: Մասնաւոր վարդապետական իշխանութիւնն ստանալուց յետոյ էլ Շահխաթունեանցը բաւական ժամանակ, մինչև Երևանի թեմի յաջորդ կարգուիլը՝ համեստութեամբ ստորագրել է միշտ Յովհաննէս աբեղայ:

10) Յովհաննէս կաթողիկոս Դրասխանակերտցու Պատմութիւնը հրատարակելու համար Մ. Էմինը օգտուել է և Շահխաթունեանցի բերած օրինակի պատճէնից։ Այն գիտնականի հրատարակած Ղազար Փարպեցու Թուղթը յայտ է եկել, (որքան յիշում ենք Էմինի յառաջաբանի խօսքերը) Մ. Էջմիածնի մատենադարանում շնորհիւ Շահխաթունեանցի։

11) Նամակը գրել է Մոսկուայից 1826 թուի յունիսի 1-ին Աստրախանի առաջնորդ Յովհաննէս արքեպիսկոպոս Գառնակերեանցը Բեսարաբիայի առաջնորդ Գրիգոր արքեպիսկոպոսին։ Յովհաննէսը գնացել էր Մոսկուա՝ թագադրութեան հանդիսին ներկայ լինելու, ուր շուտով գալու էր և Բեսարաբիայի առաջնորդը։ Յառաջ բերած տողերը առնուած են Յովհաննէս եպիսկոպոսի 1826—1829 թուերի «Ելեալ թղթոց մատեանից», որ միւս տարիների նոյնանման մատեանների հետ պահւում է Աստրախանի Կոնսիստորիայի արխիւում։

Ներսէս Աշտարակցու գործունէութեան պատմութեան համար բաւական նշանաւոր է այս տեղեկութիւնն, որ, որքան յիշում ենք, առաջին անգամն է յայտնւում։ Արդեօք որո՞նք են եղել «Աթոռական հարկաւորութիւնները», որոնց համար մեծագործ Արհին մտադիր է եղել գնալ կայսեր ներկայանալու,—թէև հաստատապէս չենք կարող ասել, քանի որ պակասում են աղբիւրներ, սակայն հաւանօրէն կարող ենք ենթադրել, թէ Ներսէսը կամեցել է անձամբ ներկայացնել կայսերական բարձր ուշադրութեան և գթութեան Մայր Աթոռը թէ՛ պարտքից և թէ պարսկական իշխանութիւնից ազատելու խնդիրները։ Յայտնի է, որ Եփրեմ կաթողիկոսը ստիպուած պարտատէրերի պահանջներից և Երևանի սարդարի խստութիւններից՝ ժողովարարութեան պա-

տրուակով խոյս տուել եկել էր Շուշի. բայց Երմոլով կուսակալը չկամենալով կասկածի առիթ տալ պարսիկ կառավարութեան, թէ Ռուսաց պետութիւնը կաթողիկոսին հիւրընկալելով՝ քաջալերում է նորան յայտնի նպատակների համար, պահանջում էր վերադառնալ իւր տեղը: Որովհետև վերադարձն անկարելի էր այնպիսի դժուարատար պայմանների մէջ, Եփրեմը ստիպուած էր թղթով հրաժարուիլ կաթողիկոսական կոչումից, որ կարողանայ պատսպարուիլ Ռուսաց երկրում: Ներսէսը, որի խորհրդովն էր տուել այդ ձևական հրաժարականը, տեղափոխելով վշտակիր հայրապետին Հաղբատի վանքը՝ մեծ տքնութեամբ աշխատում էր միջոցներ գտնել Ս. Աթոռը թէ՛ պարտքից ազատելու և թէ քրիստոնեայ հզօր պետութեան—Ռուսիայի միջամտութեամբ և պաշտպանութեամբ սարդարի իրաւասութիւնից: Պարտքի վճարման խնդիրը Ներսէսին զբաղեցրել է դեռ բաւական վաղ: Յովհաննէս եպիսկոպոս Կառնակերեանցի մի նամակից, որ գրուած է 1822 թուին («Մատեան 'ի 1819-ց1822») «առ Ներսէս սրբազանն», տեսնում ենք, որ վերջինը դիտաւորութիւն է ունեցել խնդրելու Ռուսաց պետութիւնից տալ փոխառաբար և թեթև տոկոսով արքունի գանձարանից մի գումար, Էջմիածնի պարտքը վճարելու համար. և որպէսզի տէրութիւնը փոխառնելի գումարի վերադարձման մասին ապահովութիւն ունենայ՝ նա առաջարկել է Աստրախանի և Քիշնևի առաջնորդներին իւր հետ միասին երաշխաւոր լինել տէրութեան առաջ: Այդ առաջարկութեանը Յովհաննէս եպիսկոպոսը մայիսի 21-ին պատասխանում է հետևեալ երկու նամակով.

1. «Խորհրդածանոյց գրեցելոյդ դարձն, որ ակնարկէր զհնարաւորութենէ գիւտի աթոռային ծանրաբեռն պարտուց ազատութեան՝ տուեալ եմք թէպէտ 'ի

Նախիջեւան քաղաքէ.... այլ 'ի գալն մեր աստ խորհուրդ 'ի մէջ առեալ.... ոչ այնքան օգտաւոր ցուցան կամ կարելի.... թէ երբէք չէ հնար երաշխաւորութեամբ հոգեւորականաց մտանել յարքունի գանձարանէ այնքան ինչ մեծագումար պարտս տոկոսեաւ թէ անտոկոս, մանաւանդ և այն վասն հարկաւորութեան արտաքոյ սահմանի եղելոյ.... թէպէտ միշտ առատաձեռն գթանի ամենողորմած Կայսրն եթէ պահանջմունքն իցեն պատկանելի իւրում տէրութեան և իւրոց հպատակաց.... և զի՞ փոյթ է Նորին մեծ ինքնակալութեան լինել հոգատար զհարկաւորաց արտաքոյ սահմանի իւրոյ եղելոց.... ո՞ր հաւատարիմ երաշխաւորութեամբ. եթէ երաշխաւորութեամբ երեց արքեպիսկոպոսաց ի Ռուսիա եղելոց իւրում հպատակաց՝ ո՞րպէս է կարելի ցայն վայր հաւատարմանել հոգեւորականաց և առանց երկբայութեան այնքան ինչ գումար առատաձեռնել.... պարտէ տալ երաշխի զաշխարհական անձինս հաւատարիմս հաւաստեցեալս բազմաց և համբաւեալս հարստութեամբ (որք) ունիցին ի սեպհական ծառագութիւն զքարեայ տուն, զպանդոկ, զկրպակ, զկալուած և զայլ հարստութիւնս բազմաւ առաւելութեամբ, քան զոր պահանջելին է.... և ո՞վ արդեօք յազգէ մերմէ գտանիցի յանձնառու և ցայն վայր լինել քաջասիրտ և տալ զանձն 'ի վտանգ երկիւղի և ապագայ կասկածանաց, և ո՞վ դիցէ զկալուած իւր երաշխի....: Ես ընդ այս տառապեալ 'ի սիրտ և յոգի՝ արդարև ցաւիմ խիկապէս, և որքան մտածեմ և յոր կոյս հայիմ ի յուսոյ իմմէ զրկեալ գտանիմ, վասն զի չգտանեմ ի վիճակի իմում այնպիսի բարեպաշտ անձինս որ հաճեսցի կամաւորապէս վասն փառացն Աստուծոյ լինել յանձնառու զայս հրաւէր, և փրկարար մեծագործութեամբ բարեպաշտել, այն է՝ կամ

արքունուստ ստանալ երաշխաւորութեամբ, և կամ յին-
քենէ շնորհագործել օրինաւոր տոկոսաւ յազատութիւն
սրբոյ Աթոռոյն և 'ի փրկութիւն հոգւոյ ընդ համայն
տան իւրոյ: Բայց և այնպէս յուսացեալ 'ի սքանչելի
ներգործութիւն Աջոյն բարձրութեան՝ ներկայ խորհուրդ-
իմ յայս կնքեալ փութամ ուղղութեամբ սրտի և մտաց
առաջի առնել ձեզ յարգաբար՝ թէ որովհետև ի յազգ-
մանէ սրբոյ հոգւոյն Աստուծոյ՝ բարձր Արժանապատիւ
Սերոբէ գիտնական վարդապետն յաջորդն Մոսկովու՝
առ այս առարկայ ծանուցեալ է ձեզ գրաւորականաւ և
յուսացուցեալ թէ համաձայնութեամբ մերով եթէ բարձր
վեհապետութիւնն համակամութեամբ բարձրագոյն խոր-
հրդարանի իւրում խնդրամատոյց լիցի նորին վեհազ-
նութեան աղայ—Յովակիմայ Լազարեանց բարեպաշտ
մեծ իշխանի մերում և հարազատ վեհազուն որդւոց նո-
րին, կարելի է իւրով յորդորմամբ առնուլ ի նմանէ
կամ երաշխաւորութեամբ նորին առնուլ յումէք և իցէ
հարիւրին ութն և կամ հինգ տոկոսեօք զգումար դրամ
տասն և հինգ հազար կամ քսան հազար թուման ա-
սիկնացի, պայմանաւ վճարելոյ երից եպիսկոպոսաց 'ի
Մուսխա եղելոց զպատկանեալ տոկոսին առանց վրիպա-
նաց յամ ամէ. այսպիսի բարեյոյս առաջարկութիւն Սե-
րոբէ վարդապետին մոսկովու՝ արդարև խնդամիտ կա-
ցուցին զմեզ՝ եթէ դիպաւոր համարեալ համաձայն իցէ
սրբութիւն ձեր այսմ առաջարկեալ խորհրդոյ նորին, հա-
մաձայնեմք և մեք ամենայն ընդունելութեամբ, և բարե-
գոյն համարեալ տամք հաճութիւն ընդունելաբար: Կըն-
քեալ զբանս ասեմ՝ թէ յերկուց նախայիշեալ առաջար-
կութեանց աստի՝ (այն է կամ արքունուստ ստանալ հա-
ւատարիմ երաշխաւորութեամբ, և կամ ի վեհանձն մեծ
իշխանէ թեթևագոյն տոկոսաւ) որ ի սոցունց ընտրե-

լագոյն երևեսցի ձեզ ներգործաբար յառաջ ածել՝ բարի
և ես համարեալ պատրաստ եմ յիմոյս կողմանէ կալ
երաշխի և լինել համաձայն ի բարի կամս և ի խոր-
հուրդս ձեր, որ յայս նիւթ պատկանեալ, որպէս զի
խորհուրդ մեր ի մեզ ամփոփ մնացեալ՝ մի՛ գտանիցուք
ամօթապարտ առաջի այլասեռ վեհագունից մեր խնդրե-
լով և նոցա զլանալով, միայն թէ այցելութիւն լիցի
սրբոյ Աթոռոյն մերոյ և ապահովութիւն վշտալի սուրբ
քահանայապետութեան նորին: Եւ ի վերայ այսր ամե-
նայնի՝ եթէ իցեն ի ձեզ հաստատեալ ի միտ բարեգոյն
եղանակ դիւրաձեռն և հնարաւոր քան զոր գրեցանն՝
նոյնպէս խոստանամ ամենայն կամակցութեամբ լինել
համաձայն և այնմ: Ապաքէն գրեմ յարգաբար և խընդ-
րեմ եղբայրական սիրով, որ թէ բանքս այսոքիկ հա-
ճելի երևեսցին ձեզ՝ մի՛ ևս յետաձգել զգործադրու-
թիւն իրացն կատարման՝ այլ հոգ կալեալ և փոյթ ան-
ձին բերեալ՝ գրել փութանակի նորին աստուածարեալ
բարձր վեհապետութեան, զի բարեհաճեալ պատրաս-
տեսցէ զիւրապատկանն խնդրագործութիւն, զվայելչա-
ցեալս նորին վեհազնութեան և վեհազուն որդւոց նո-
րին որպէս հարկն պահանջէ, և ի դիմաց երից արքե-
պիսկոպոսաց եթէ պատկան համարեալ լիցի գրել յատ-
կապէս առ յիշեալ պայազատ իշխանն և առ որդիս նո-
րա զգիր թախանձանաց առ կատարումն առաջարկեալ
խնդրանաց՝ որպէս հարկ իցէ և վայելուչ համարեցեալ՝
պատրաստ եմք յարգաբար կատարել և հաւատարիմ կա-
պակցութեամբ յաներկբայս առնել զնա: Ուրեմն փու-
թասցէ եղբայրական սրբութիւն ձեր գրել նորին բարձր
Սրբազնութեան, զի պատրաստեալ զայնս առաքեսցէ
առ ձեզ աւուրբ յառաջ լինել ՚ի պատրաստի. գրեսցուք
և մեք ըստ մերում վայելչականութեան և ՚ի դէպ ժա-

մանկի առաքելով առ նա՝ բաղխեսցուք այնու զդրունս գթութեան և ողորմութեան նորին վեհանձնութեան, և աղաչեսցուք զերեսս նորա առնել ողորմութիւն անկելոյն ի խորխորատ խղճալի մօրն լուսոյ, և կարելի ձեռնտուութեամբ վերականգնել զնա ըստ նախայիշեալ եղանակին, եթէ զտեղի գտեալ արդիւնաւորեսցին խընդրագործութիւնք նորին սրբազնասուրբ վեհապետութեան, և արժանաւոր բանք պաղատանաց մերոց նովին ակնկալութեամբ, այն շնորհ յԱստուծոյ են առ ի մեզ հեղեալ առատապէս ի խնամոց և յառատ գթութեանց օրհնաբանեալ տանն Աղայ Եղիազարեանց: Իսկ թէ ոչ՝ այլով եղանակաւ կատարմունք բանին պարտ է հոգունակել և չթողուլ զբանն ի մեռելութեան: Բարձր սրբազան Գրիգոր արքեպիսկոպոսն բեսարաբիոյ սիրեցեալ եղբայրն երբեմն առ լինելութեամբ մերով յայնկողմունս՝ ծանուցեալ է մեզ ընդունելաբար՝ թէ առ այս նիւթ ինքն կանխաւ գրեալ իցէ նորին բարձր սրբազնասրբութեան և յուսացուցեալ զնա հաւատարիմ խոստմամբ՝ իբր զի՝ թէ կամք գտցին իւրոյ սուրբ քահանայապետութեան և կամակցական համաձայնութեան ձերում սրբութեան և մեր՝ կարող է ինքնին գնալ 'ի դուռն Արքունի՝ և ինքնին հնարաւորել զփրկութենէ Աթոռային տառապանաց, որ եղանակաւ ձեռնտու երևեսցի ինքեան և հնարաւոր առնել զմուտ և զել, ես առ այս խորհուրդ նորա վերադառնամ առ սրբութիւն ձեր՝ և փութամ զայս ինչ առաջի առնել ձեզ խորհրդակցութեամբ, թէ յորժամ վեհազնեայ իշխանն յետ այնքան ողորմագին պաղատանաց նորին սուրբ վեհապետութեան և մեր ամենեցուն՝ զյուսալի ակնկալութիւնս մեր ի դերև կացուցեալ՝ եղիցի բացասու յապաքախտութիւն սրբոյ Աթոռոյն և մեր ամենեցուն՝ զի՞նչ պարտ իցէ առնել յայն-

ժամ և առ ո՞վ արժան իցէ դիմել, զի չիք այլ տեղի յուսոյ և ակնկալութեան, ուրեմն բարեգոյն է յետ բացասութեան իշխանին՝ համաձայն հաճութեամբ յանձն առնել զայն տնօրէնութիւն յիշեալ սրբազան եղբօրն, զի նա ունիցի ըստ խոստման իւրում լցուցանել զայն պարտաւորութիւն, եթէ յօգուտ լիցի համարեցեալ, և յոյսն ոչ խաբէ զնա, որ թէ կարելի կերպիւ հնարաւորիլ կարողասցի նա զփրկականն ներգործութիւն, ուրախութիւն սրտի և մտաց մեզ ամենեցուն պարգևէ, իսկ թէ ոչ՝ կարեմք ազատամիտ լինել յայնժամ ի բնաւից ակնկալութեանց թէ ոչ յաջողեցան մեզ՝ և բաւական է մեզ որ նորին բարձր վեհապետութիւնն ողջամիտ կարէ լինել ի մերոյս կողմանէ ի մասինս այսմիկ՝ թէ ցանկացող եմք ի բոլոր սրտէ ամենակերպ հնարաւորութեամբ ջանալ հանապազ ազատութենէ Աթոռային վշտաց և դառն նեղութեանց տառապանաց, ի լրումն որդիական պարտաւորութեան և վայելչութեան սուրբ փառացն Աստուծոյ: Զգիտաւորութենէ առաջնոյ գրեցելոյն մերոյ առ ձեզ որ ի 18 ապրիլի և կամ այսր ներկայ իմոյ խորհըրդածանոյց գրուածոց՝ չունիմ ցարդ ծանուցեալ ինչ նորին բարձր սրբազնասուրբ վեհապետութեան ի յոյս քաջալերութեան վասն անկատար լինելոյն մերոց բարեխորհուրդ տնօրէնութեանց. և տակաւին չեն յայտնի թէ խորհուրդ մեր յո՛ր միտ և յո՛ր գիտաւորութիւն կայանալ կարեն և որովհետև սուրբ վեհապետութիւն նորին 'ի 15 յունվարի ներկայ թուականի գրեցելովն՝ մեղադրական բանիւք ծանուցեալ էր առ իս՝ թէ հանապազ թուղթ քաջալերութեան ստանայ ի Գրիգոր սրբազան արքեպիսկոպոսէ առ տնօրինումն ազատութեան Աթոռային ծանրաբեռնութեանց և ի մէնջ ո՛չ բնաւ, վասն որոյ մտադիր եղէ և եմ յառաջիկայ փոստին 'ի պատասխա-

նագրութեան մերում յիշեցուցանել խոնարհաբար նորին սրբազնութեան համառօտիւ թէ բարեվախճան գիտաւորութիւնն իմ և մաքուր խորհրդատրութիւն որ ինչ պատկանելին էր ինձ ի նպատակ այցելութեան սըրբոյ Աթոռոյդ՝ ես արժանաւոր բացատրութեամբ ծանուցի գրաւորականաւ բարձր սրբազան եղբօր իմոյ Ներսէս արքեպիսկոպոսին Թիֆլիզու հայոց՝ յորմէ ունի սրբութիւն ձեր տեղեկանալ, ուրեմն խնդրեմ խոնարհաբար տալ ծանօթութիւն նորին սրբազնասրբութեան զմտաց այնր իմոյ գրուածոցն որ առ ձեզ ի լինել նմա միամիտ»:

2. «Յետ որոշակի գրուածոց իմոց հարկաւորացն որ առ ձեզ՝ փութամ և զայս ինչ գրել ընդունելաբար՝ և խնդրեմ առնել զիս առ այս խելամուտ՝ թէ յորժամ հարկն ստիպեսցէ մեզ ըստ գրեցելոյն մերոյ կապակցութեամբ խոստանալ հատուցանել յամ ամէ որում հարկ իցէ զյայտնեալ մասն տոկոսի՝ զպատկանեալն իմում վիճակի՝ ո՞րպիսի յուսով և ո՞ր եկամուտ արդեամբ պարտ իցէ մեզ յիւրում ժամանակի հատուցանել. գիտաւորութիւն նորին բարձր վեհապետութեան առ այս նիւթ յո՞ր նպատակ հային. եթէ ի նուիրական յարդեանց սրբոյ Աթոռոյն նորոգ լինելոյ՝ որ ժամ է արդէն և անցեալ իսկ տարեւոր ժամանակաւ, որպէս և իցէ վասն փառացն Աստուծոյ՝ տուեալ զանձն իմ ի չարչարանս՝ կարեմ լինել յանձնառու և իմով կապակցութեամբ տալ զանձն իմ ի վտանգ, յոյս անձին բերելով թէ գուցէ կարողանամ բազմաջան աշխատութեամբ նուիրակել և այնու արդեամբ զայն պարտս վճարել առանց ամօթանաց, եթէ յօգուտ լիցի համարեցեալ. իսկ թէ ոչ՝ սուրբ վեհապետութիւնն ազատ կացուցեալ զմեզ յայնմ կապակցութենէ՝ բարեհաճեսցի զայլ ոք առաքել

նուիրակ յայս վիճակ՝ երբ և կամեցի, և նմա յանձն արարեալ զայն կապակցական պարտաւորութիւն նմա թողուցու զայն հոգունակութիւն գլխովին, զի ժողովեալ նորա զարդիւնս նուիրակական տրոց՝ կապակցութեամբ իւրով հատուսցէ զհատուցումն այն ուր հարկ իցէ՝ ես ոչ կարեմ լինել յանձնառու թարց նուիրական գործոց՝ զայն ես ամենայն կասկածաւորութեամբ, Աստրախանու վիճակի բարելուր համբաւն թէպէտ մեծ են և հռչակաւոր՝ բայց էութեամբ յոյժ փոքր և նուազագոյն յարդիւնս շահեկանութեան։ Ի Ս. Պետերբուրգու և ի Մոսկուու ի միջոցի 10 ամաց առաջնորդութեան իմոյ՝ բաց ի միանգամ նուիրակական տրոցն հատուցման՝ չունիմ ստացեալ ի նոցունց դրամ ինչ և ոչինչ արդիւնս տեսեալ աթոռային կամ առաջնորդական մինչև ցարդ և մինչև ցմին կոպէկ. ըստ այսմ մարթ է իմանալ ի Ղրիմ, ի Գրիգորիպօլ և ի Մոզդոկ, որ բաց՝ ի ծանրակրութեանց՝ ոչինչ արժանաւոր շահեկանութիւնս տեսանեմք որպէս քաջ գիտէ իւրոյ սուրբ վեհապետութիւնն։ Ապա որպիսի յուսոյ ապաւինութեան եղէց ձեռներէց, և այն առանց նուիրակական գործոց և նորին արդեանցն օժանդակութեանց՝ որ քաւ լիցի ինձ ցանկալ, որ թէ իմ հովուական պարտաւոթիւնն կարող եղէց վճարել՝ այն շատ է ինձ ի յանգորրութիւն մտաց։ Առ ձեզ գրեցելոցն իմոց ներկայ խորհրդատրութեանցն պարագայից չգրեցաք ինչ առ Գրիգոր արքեպիսկոպոս սրբազան եղբայրն, և չունիմք գրել մինչև երկրորդեսցին առ մեզ առ ի ձէնջ հաւանականն ընդունելութիւն կամ բացասական տհաճութիւն»։

Միւս նպատակի համար Ներսէսի աշխատութիւններն յայտնի են այն բանակցութիւններից, որ ունեցաւ նա մի կողմից Աբբաս-Միրզայի հետ նամակներով և Սար-

*տիրոս եպիսկոպոսի պատգամաւորութեամբ, միւս կողմից Երմոլովի միջոցով Ռուսաց կառավարութեան հետ: Այնուհետև այդ բանակցութիւնները 1822 թուից մինչև 1825 թիւը տևելով չտուին ոչ մի արդիւնք, Ներսէսը յուսաթափ լինելով՝ դիմել է Ռուսաց կառավարութեանը Կովկասի կուսակալի միջոցով մի առանձին խնդրագրով: Յայտնի չէ մեզ այդ խնդրագրի բովանդակութիւնը, բայց դժուար չէ կարծել, որ պիտի խընդրած լինի փութացնել պատերազմը պարսիկների հետ, որ արդէն անխուսափելի էր համարւում, որպէս զի Երևանն և Էջմիածինն օր յառաջ ազատուեն նեղսակիր վիճակից: Հարկաւ նորա խնդրագրում պիտի լինէր և աջակցելու խոստումն: Այդպէս գոնէ աղօտ կերպով հասկացնել է տալիս նոյն Յովհաննէս եպիսկոպոսի 1826 թ. օգոստոսի 12-ին Մոսկուայից գրած նամակի հետևեալ բովանդակութիւնը. «Թուղթ առ Ներսէս Արհին, որոյ ի 12 յուլիսի... գրեցելոյն դարձ. վասն գալստեան աստ Գրիգոր Սրբազանին. և թէ՝ խորհուրդ արարեալ վասն խնդրագրոյն ձեր մատուցելոյ առ կուսակալն տեղւոյդ, վճռեցաք այսպէս, զի սպասեսջիք և տաջիք զայն ի լռութեան, մինչև յայտնեսցին խորհուրդք պարսկային ընդ տէրութեան ռուսաց»: («Մատ. ի 1826—ց 1829»):*

[12]) 1830 *թուին էլ գրում էր Թիֆլիզ դպիր Մսուր (Մսեր) Զմիւռնացուն. «..... Մի անփոյթ լիցիս գիտել և ծանօթանալ զմեծագոյն մատենէն յայնմանէ (զորմէ ճառեաց Նիկողայոս բարունի) թէ զի՞նչ արդեօք. ճառք նախնեաց, եթէ պատմութիւն ազգիս, և կամ այլ ինչ, որոյ վասն հարկեմ սիրով ծանօթ առնել այնմ և զիս փութով»:*

[13]) *Շուշում* 1828 *թուին հաստատուած բազելեան*

բողոքական քարոզիչներն արդէն յաջողել էին տեղ տեղ գտնել հետևողներ հայերից, և նոյն իսկ երկու սարկաւագ էլ Սեանի խոստակրօն անապատաւորներից. վասն որոյ հայ եկեղեցականները չէին կարող չդիմադրել նորանց գործունէութեան ամեն մի միջոցով, որ համարւում էր նպատակայարմար և կարելի։ Ինչպէս երևում է, դորանք Մուշում հաստատուելուց հազիւ մի տարի անցած կամեցել են Աւետարանը թարգմանել զանազան գաւառների հայ բարբառներով և տարածել ժողովրդի մէջ. ուստի դիմած են եղել Էջմիածին այդ մասին թոյլտուութիւն ստանալու։ Մայր Աթոռի «Բարձրագոյն խորհրդարանի ս. ժողովն» այդպիսի լուրջ խնդրի վճիռը թողնում է Քիշնև հեռացրած, բայց դարձեալ հոգևորական գործերի ծայրագոյն կառավարիչ ճանաչուող Ներսէս Աշտարակցուն, որ 1829 թ. հոկտեմբերի 7-ին նամակով գրում է. «Յաղագս յառաջարկութեանց Օգոստոս Պետրիկ պաստորի աւետարանական անուանեալ քրիստոնէից՝ այն է լուտերականաց, կալվինականաց և այլոց այնպիսեաց ռեֆորմատ եւ կոչեցելոց՝ ի մասին թարգմանութեանց նոր կտակարանաց ի լեզու աշխարհաբառ ըստ բնակչաց իւրաքանչիւր գաւառաց հայոց, ըստ ինքեան իսկ յայտնի է, թէ ինքնակալական զօրութիւնք հազիւ ուրեմն կարողանան արգելուլ յիւրեանց տէրութեան միայն. իսկ մեք որ չունիմք զայնպիսի ահաւոր զօրութիւն, թէև չկամիլ եւս ունիցիմք, որո՞վ զօրութեամբ մերով կարող իցեմք արգելուլ նոցա զայն դիտաւորութիւն նոցին, գուցէ և վատ անուն հոգևորականաց հայոց համբաւել ունիցիմք ի զուր. ուրեմն թէ նոքա զիւրեանց աշխատութիւնսն և զծախսն կամին այնու նպատակաւ իւրեանց ի գործ դնել, իմաստնագոյն եւս համարեալ լինիցի մեզ

պատասխանելն, թէ պատրիարգական կառավարութիւնն ոչինչ իրօք վնասակար համարի զայնս, հաւաստի գոլով թէ և նախնիք հայոց թարգմանեալ ունին զայնս յայլ և այլ լեզուաց ի բուն լեզու հայոց, զոր ունիմք այժմ»:

Վերոգրեալ խօսքերից երեւում է, թէ Ներսէսը կարծել է, որ եթէ հոգեւոր իշխանութիւնն էլ մերժի, քարոզիչներն իրանք դարձեալ կտպագրեն և կտարածեն այն ազատութեան հիման վերայ, որ ամեն ճանաչուած կրօն վայելում է Ռուսաստանում. այդ պատճառով էլ խորհուրդ է տալիս հաւանութիւն տալ: Սակայն չնայած նորա գրածին՝ այդ հաւանութիւնը կամ թոյլտուութիւնը մեզ անյայտ պատճառով յետաձգւում է, մինչև որ 1830 թուին քարոզիչներից մէկը, Զարեմբան գալիս է Էջմիածին և այս անգամ յաջողում է ստանալ Բարձրագոյն խորհրդարանից գրաւոր համաձայնութիւն: Բայց որովհետև խորհրդարանի անդամներից երկուսն Երևան են լինում և թուղթը նորանց էլ պիտի տարուէր ստորագրելու, ահա այդ միջոցին Շահխաթունեանցն և երկու ընկերները շտապում են պարզել յիշեալ անդամներին այն վտանգն, որ սպասելի էր քարոզիչներին տուած իրաւունքներից. և այդպիսով գործը խափանւում է: Ուշադրութեան արժանի են յետագայ երկու նամակներն, որ գրուած են այդ խնդրի առիթով: Նամակներից տեսնում ենք, թէ որչափ և Զարեմբան աշխատել է գաղտնի պահել իւր գալստեան պատճառն և ձեռք բերած թոյլտուութիւնն, այսու ամենայնիւ նորա մօտ թարգմանի պաշտօն վարող միրզա Վառուղը երթևեկելով Յովհաննէս վարդապետի և ընկերների մօտ ամեն ինչ նորանց յայտնել է ծածկաբար: Իսկ ահա մինչև Զարեմբայի տարած թուղթն Երևա-

նում ստորագրելը՝ խորհրդարանի անդամներն ստանում են հետևեալը, գրած յունիսի 2-ին։

«Սրբազան անդամոց Նարձրագոյն կառավարութեան սրբոյ Կաթողիկէ Էջմիածնի

Ամենախոնարհ յայտարարութիւն.

Այն նէմցէ քահանայն, այսինքն լուտերական կամ կալվինական աղանդաւորն՝ որ այս քանի օրս մնաց ի սուրբ Աթոռս և հետզհետէ թէ ի՞նչ էր նորա խորհուրդն՝ յայտնի հասկացուեցաւ և գիտեն բազումք. և մանաւանդ մեք, որ նորա հետն շատ տեսութիւն արարաք, որովհետև յաճախ գնալ գալ ունեցաւ մեր մօտն. բայց զխարդ և է որչափ և հնար էր, հնարեաց և էառ զհրամանագիր տպելոյ զայն աղաւաղ և բազմասխալ աշխարհի լեզուաւ յիւրեանց շարադրեալ աւետարանն Քրիստոսի հանդերձ գրաբառիւն. բայց չէինք յուսար թէ սրբազան կառավարութիւնն հաճի ընդ այն և տայ հրաման, այլ զկնի գնալոյ ձեր աստի այդր յԱրեւան, գրեցաւ հրամանագիր և տուաւ նմա՝ չգիտեմք ո՞րպիսի պատճառաւ, ուստի ահա ազդ առնել և ծանուցանել ձերումդ Սրբազնութեան պարտաւորութիւն մեզ համարեալ (ըստ որում որդիք եկեղեցւոյ Հայաստանեայց) գրեմք, զի թէ հնար ինչ իցէ՝ առնուլ յետս զայն հրամանագիր՝ զոր երեր այդր նա ինքն նէմցէն առ ի ձեռագրել տալ և սրբութեան ձեր. քանզի թէ զինչ ունին այդու սերմանել յազգիս մերում, և թէ յի՞նչ նպատակ հայի դիտաւորութիւն և վերջին վախճան մտաց նոցա, յայտնի են ի բազում գրեանց և յայտնի եղեն նաև ի բանից իւրեանց ըստ իմիք. զի յեօթանց խորհրդոց սուրբ եկեղեցւոյ զերկուս միայն ընդունին՝ որք են մկրտութիւն և հաղորդութիւն. ի բաց հերքեն

զամենայն արտաքին արարողութիւնս եկեղեցւոյ և զնորուն հանդիսաւոր զարդս. խոտեն զբարեխօսութիւն սրբոյ Աստուածածին կուսին և զամենայն սրբոցն և զնոցին պատուական մասանց յարգութիւն, և զպատկերս՝ կուռս համարին . արհամարհեն զծոմապահութիւնս պատուիրեալս ի սրբոց վարդապետաց եկեղեցւոյ և զկուսութեան վիճակ և զայլ ամենայն կամաւոր ապաշխարութիւնս, զխաչակնքելն զդէմս՝ ընդ վայր իմն համարին. զխոստովանութիւն ի բաց մերժեն, որպէս իմացաք յայտնի բանիւ յիշատակեալ աղանդաւորին, զորս լաւ ես կարող էք իմանալ և տեղեկանալ գաղտնի խորհըրդոց նորա յընդ նմա եղեալ միրզա Ֆարրըղէն՝ եթէ կոչեալ լռելեայն հարց ու փորձ արասջիք. և քաջ իմանայք յայնժամ, թէ քանի՛ հնարս հնարին ի տարածանել զչար աղանդս իւրեանց. և թէ զքանի՛ս գայթակղեցուցեալ են մինչ ցարդ յանմեղ և ի միամիտ ժողովրդոց մերոց. և թէ ո՞րչափ մնասակար աղմուկք շփոթի և տարաձայնութիւնք ունին ծագել յապա ժամանակի՝ կարո՛ղ է հանճարեղ խոհեմութիւն Սրբազնութեանց ձեր կշռել և իմանալ: Զայսոսիկ մեզ պարտ վարկաք ծանուցանել Սրբազնութեանց ձերոց ի տեղեկութիւն. և սրբազնութիւն ձեր թէ զիա՛րդ տնօրինէ՝ ինքն գիտասցէ, անմեղադիրս զմեզ առնելով հայրական ներողամտութեամբ:

Սրբազնութեանց ձերում ամենախոնարհ ծառայք
Յովհաննէս աբեղայ Գէորգեան Շահխաթունեանց
շահրեարցի.
Աբրահամ դպիր Պաղտասարեան Կոստանդնուպօլսեցի.
Մսուր դպիր Գրիգորեան Զմիւռնացի:

Միւս նամակը Ռաշխաթունեանցը գրել է (օգոստ. 4) Սեանի վանահօրն, որով հաղորդում է միենոյնը, աւելացնելով և սարկաւագների մասին արուած կարգադրութիւնը..... «Յամսեանն յունիսի այսր ամի եկն աստ ընկեր նոցին Նէմցէ լուտերականացն բնակելոց 'ի Շուշի ամրոց և կացեալ աստէն զաւուրս իբրև տասն՝ խնդրէին զհրամանագիր ի Սինհոդոսական կառավարութենէ Աթոռոյս տալ տպել անդ ի Շուշի զ ի յիւրեանցն յարմարեալ աշխարհիկ լեզուաւ զաւետարանն սուրբ ի հայկական բարբառ, յորում միջոցի գտանէին երկոքին անդամք կառավարութեան Յովհաննէս սրբազան արքեպիսկոպոս և Յովսէփ վարդապետ անդ յԵրևան. զիարդ և էր գրեալ զհրամանագիրն յղեցին յԵրևան ձեռագրել և նոցին երկոցունց, և տալ անդէն նոյն լուտերականին. Այլ մեք 'ի նոյն աւուրսն եղելոյ աստ լուտերականին այնմիկ բաւականին հասու եղաք յընդ նմա եղեալ միրաղա (միրզա) Փարըղ հայազն առնէ վախճանի մտաց նորա. և թէ առ ի՛նչ է հոգ նորին ի խնդրել զհրամանագիր և ի տիպ արձանացուցանել զայն աւետարան աշխարհիկ լեզուաւ. և ի նոյն աւուր՝ յորում ել աստի նոյն լուտերական. և առաքեցաւ հրամանագիրն յԵրևան կատարել ըղձի լուտերականին, ո՛չինչ հանդուրժեալ մեր այնմ գաղտամիտ չարութեան նորին Նէմցէի և պարտաւորութիւն իսկ մեզ համարեալ ըստ որում որդիք եկեղեցւոյ և փութացեալ գրութեամբ ծանուցաք յԵրևան նոցին երկուցուն Սրբազան Հարցն ի զգուշութիւն, որոյ օրինակն ընդ սոյն գրութեան ունիք ընկալնուլ. և այն ինչ ձեռագրեալ նոցա զայն հրամանագիր փութան յանձնել նոյն լուտերականին, հասնի գիր մեր անդր առ նոսա՝ որով տեղեկացեալ կասկածաւոր գաղտնի չա-

րութեանց նորին՝ յետս առնուլ զհրամանագիրն ի Թղթատարէն՝ որ տակաւին չէր հասուցեալ առ նա. և պատառեն. ապա զգուշացեալ յետ այնր տան հրամանագիր նորոգ կարգեալ կողմանցն նուիրակ Զաքարիա վարդապետի Բէհպուտեան գնալ անդր և ըստ ամենայնի հասու լինել ամենայն գործառնութեանց նոցին և սերմանեալ չարութեանցն 'ի ժողովուրդսն յայնոսիկ, և ծանուցանել այսր հաստատուն վկայութեամբ վարդապետաց և իշխանաց կողմանցն: Այսմ գործոյ մեր ճըշմարիտ ապացոյց գտաւ յաւուրս յայսոսիկ գրութիւն Պաղդասար արքեպիսկոպոսին Գանձասարու աստ առ սրբազնագոյն Օծութիւն սորին՝ որ վասն երկուց աշակերտացն նոցին Բարսղի և Մովսիսի սարկաւագաց վտարանջելոցն, որ եկեալ ի Ս. մենաստանէդ ի ժողովուրդս քարոզեն զաղանդ Լուտերի. որոյ վասն գրեաց և Սորին սրբազնագոյն Օծութիւնն ի Տփխիս առ կուպէրնաթօրն տալ ածել զերկոսին սարկաւագսն զայնոսիկ կապանօք աստ ի սուրբ Աթոռս. և ապա հո՛գ կալցեն զբունեալ վիշապացն այնոցիկ անդէն ի Շուշի աղանդաւորացն Լուտերի, թէ զիարդ ունին վտարել անտի»:

14) Շատ հետաքրքրական են Շահխաթունեանցի այս խօսքերը Թաղիադեանցի բնաւորութեան և Էջմիածնում ունեցած գործունէութեան նկատմամբ. մանաւանդ որ ժամանակակից գրողի բարեխղճութիւնն անբասիր է: Կարևոր ենք համարում իբրև լրացուցիչ նիւթեր Մ. Թաղիադեանցի կենսագրութեան համար դնել այստեղ նորա երկու նամակները, որ ուղղած են Ներսէս Աշտարակցուն Կալկաթայից 1826 թուին: Մէկով նա խնդրում է, որ Ներսէսն իրան կանչի իւր մօտ և վարդապետ ձեռնադրի. հաւատացնելով թէ ինքն արդէն բազմափորձ կեանքի և լուսաւորեալ անգղիացիների բա-

ընկամութեան շնորհիւ ուղղել է իրան և այլ ևս Ներսէսի անուանած «բարձրապարանոցը» չէ. միւսով՝ որ Ներսէսն հրամայի նուիրակ Պօղոս եպիսկոպոսին իրան ձեռնադրել վարդապետ, որից յետոյ կամ Ներսէսի մօտ գայ ուսուցչութիւն անելու, կամ մնայ Հնդկաստանում նուիրակի պաշտօնով, խոստանալով արդիւնաւոր անել այդ պաշտօնը, մինչև իսկ իւր բարեկամ անգլիացիների ձեռնտուութեամբ: Այս նամակի վերջում խնդրում է ուղարկել և երկու ուշիմ մանուկ, որ ինքը տայ ուսանելու «եպիսկոպոսական համալսարանում» (Կօլէջ):

Առաջին նամակ.

«Նարձր Սրբազան Ներսէս արքեպիսկոպոս,
Ողորմածագոյն Տէր իմ, ողորմածագոյն Տէր իմ,

Ոչ զարմանամ, եթէ ի ընկալնուլ սրբազնութեանդ զիմ այս խոնարհ գրութիւնս, զարմանայցես, քանզի ընդ այսչափ երկար ժամանակ մեռեալ, այժմ ըստ Պ՝ա-ղարու յարուցեալ ի կեանս ընդ կենդանիս բանագնաց լինի, և արդարև, քանզի անհնարին տառապանք իմ, զոր կրեցի յարատարբեր օտարութեանս իմում ընդ ծով և ցամաք, ոչ անգամ մի՛ և եթ յուսադիր ինձ լինէին, գոնէ առ ծնողս իմ և եթ գրել գիր մինչ ցայսօր, բայց այժմ զարթուցեալ խնամոց արարչին ի վերայ իմ, ի մեռելութենէ տարաբաղդութեան ի կեանս ցանկալիս մշտնջենաւորեաց ի ձեռն Սիջնալ Հերր սրբազան եպիսկոպոսին և այլք, որպէս երկարօրէն ծանօթութիւնք անցից ներփակելոց ի սմա ծանուցանել գիտին: Ս՝ան որոյ և ահա գտեալ իմ զգանձարանս շնորհաց, որում ցանկայի, գրեմ առ ձերդ Սրբազնութիւն ուրախ լինիլ ըստ հօրն, որ ասաց «որդիս իմ մեռեալ էր և եկաց»: Արդ յուսամ չորս ամեայ բարկութիւն Սրբազնութեանդ, զոր

վասն իմոյ տղայութեանս ասացեր առ ներկայութեամբ Սրբազան Անտոնի եպիսկոպոսի հօր մողնեցւոյ ի Գանձակ թէ՝ «չորս տարի քէն եմ», լցեալ համարեսցի առ այժմ ի լրանալ ամացն, որով և ես արժանի եղէց այնոցիկ հայրենի գթութեանց ձերոց, զոր ամենայն միաբանակից եղբարք իմ և հարք վայելեցին, և մնաց միայն իմ բաժին, որպէս բերան Սրբազնութեանդ խօսեցաւ և զայս ի Բուշի քաղաք առ ներկայութեամբ մեծարու Աղա Զոհրապին. և յորժամ այս կատարեսցի, ապա և ես ինքն յոյս կալայց ի վերայ գուշակութեան Սրբազնութեանդ վասն իմ, որ առաջի նոյն մեծարու աղայ Զոհրապին թէ՝ «միայն սա (այսինքն մեսրովբ.) ունի իմ տեղս բռնել». Ես և զոր ինչ խօսեցաւ ձեր սրբութիւն ընդ Կաթուղիկոսին Եփրեմայ, անդ ի Զէյվա, ի վրանին, թէ «միայն մին ի միջի սոցա է պիտանի». բայց փոքր մի բարձրապարանոց»: Արդ այն նշան ամբարտաւանութեան յաւէտ ի տգիտութենէ քան թէ ի գիտութենէ յառաջ եկին, զոր գլխովին տաշեաց ի բաց ուրագ ձախող փորձանացս, և յարակցութիւն իմ ընդ երևելի ազգիս Անգղիացւոց, և բանակցութիւն. իսպառ զայն խաւար սրտի հալածեաց: Վասն որոյ և որ երբեմն մի լեզուով, այժմ երիւք և չորիւք կարէ ծառայել ի գրուածս, բայց ի խօսս բազմօք ևս, ուրեմն կատարեսցին աղաչեմ գուշակութիւնք ձեր և ես արժանի եղէց ի ձեռն Սրբազնութեանդ ծնանիլ վարդապետ, առ որ իբրև կոյս խօսեցեալ ընդ այսչափ ձախող փոփոխութիւնս աշխարհի, անփոփոխ կացի: Արդ եթէ զխորին ջերմեռանդութիւն իմ առ ոտս ձեր. և զհամբաւ բարեաց ձերոց, ինև հնչեալ ոչ միայն ի մէջ մերազնեայ յարգելեաց այլ և ազգացս Անգղիացւոց, ես ինձէն պատմեցից, գուցէ կեղծաւորութեան առիթ տաց,

զոր քաւ լինէն, վասն որոյ մնաց մինչև ժամանակն ինքնին յայտնեսցէ: Ոչ առ պարծանս անձին, բայց առ հաւաստի տեղեկութիւն տալոյ ձերին բարձր Սրբազնութեան, համարձակիմ գրել, զի թէ աշխատութիւն ինչ չլիցի, հարցանել ընդ ամենայն քաղաքս և գեօղս զվարուց իմոց, ընդ որ ես ճանապարհորդեցայ, նա մանաւանդ աստ ի Հնդիկս կացի ի Կալքայ տարի մի. և ահա ի Կալկաթա աւել քան երկու, ի մէջ Հայոց և անգղիացւոց, որք ունին պատմել զամենայն զոր տեսին:—զիարդ և իցէ, ահա այս էր լրումն ապաշխարանաց, և յուսամ այս լիցի կատարումն ձերումդ գուշակութեանց: Բարեսէր Անգղիացիք ցանկան թղթակցութիւն ունիլ ընդ ձեզ. մանաւանդ երանելի Միջընալ Հերր հանգուցեալն ի տէր, արդ եթէ ի դիմաց կաթուղիկոսին գրեսցի թուղթ առ յաջորդ եպիսկոպոսն որ ունի գալ ի յԱնգղիոյ, անուն տեղւոյն բաց թողլով, ես համարեմ բարւոք լինի յոյժ: Մանաւանդ եթէ պատկեր իւր, և ձեր Սրբազնութեան ևս, զոր ցանկալին է սոցա, առաքել իւր ընծայ.—ոչ ծանր համարիմ գրել, զի եթէ կամիցիք ընդունել զիս որդի, ուրեմն գթացէք գոնէ շնորհակալութիւն իմն գրել առ այսպիսի գերազանց բարեկամս և բարերարս իմ, և ազգի մերում, և եթէ այս լիցի, ուրեմն վերադառնալ իմ առ ոտս ձեր, լիցի ըստ Յակոբայ Նահապետի «եօթն բանակաւ»: Թողում ասել և վասն առաւել բարեյաջողութեանց հանդերձեալ նուիրակացդ մերոց. և հաստատութեան նորոգ դպրոցաց յաշխարհիդ Հայոց սոցա ձեռնտուութեամբ: Համարձակիմ յանձն առնել ի շնորհս գթութեան ձերոյ զՅովհաննէս եպիսկոպոսն իմ զսրբազան Պօղոս վարդապետ Կարապետցի զբազմերախտ վարդապետն իմ ի տէր: Վստահանամ աղաչել զձեր անյիշաչար գթութիւն և

վասն դաստիարակին իմոյ Զաքարիա վարդապետի Գուլասպեանց տփխիզլեցւոյ, որոց միանգամայն սրբոց ձեռաց համբոյր մատուցանեմ իմով երախտագիտութեամբ. տացէ ինձ տէր, երախտահատոյց լինիլ ոգւոց՝ որպէս ես ցանկամ: «Յանձն առնել, համարձակեցուցանել աղաչեմ ինձ, ի շնորհս գթութեան ձերոյ զմայր իմ և զեղբայր, որք յԵրևան, մինչև ես հասից առ ոտս ձեր, և ի շնորհս ձեր եղէց մխիթարիչ նախ հոգևոր ծնողացս. և երկրորդ մարմնաւորին: Որպէս յայտնի երևի ի պատմութենէ անտի, Աբրահամ վարդապետ Նուիրակն Երուսաղէմի, հայրօրէն խնամարկեաց զիս, և ի բազում ժամանակս ստիպէր գնալ յԵրուսաղէմ, մինչև ի վերջոյ առաջադրութիւնս այս ցուցի նմա հանդերձ եղանակօք յանձնարարութեանն, որ և արարն իսկ, և ինքն զկնի այսր ամենայնի, թէպէտ ցուցանէր, թէ սուրբ Էջմիածին և սուրբ Երուսաղէմ մի են յաչս իմ, բայց գրէ ինձ «Սէր իմ, Սէր իմ, Սէր իմ, Սէր իմ» երթամ յԵրուսաղէմ պատրաստել քեզ անդ «տեղի և այլն»: Վասն որոյ և ես գրեցի առ նա, ցուցանելով թէ ցանկամ կարգին ուր և իցէ. նա խոստանայ կատարել զամենայն—այսինքն առնուլ գիր և պատկեր ի պատրիարգէն և առաքել աստ, հանդերձ հնագոյն գրչեայ գրեամբք, զորս և խոստացեալ էր, վասն տպագրութեան: Բայց այն թէ և լիցի, համարին սոքա իբրև փոխանակ ընծայի եպիսկոպոսին իւրեանց որ առ պատրիարգին Երուսաղէմի: և այլն և այլն և այլն: Պատիւ անձին համարիմ բարձր Սրբազան տէր իմ մնալ բոլորովին ձեր և ի խորին սրտէ ջերմեռանդ առ Ձեզ խոնարհ ծառայ

ի Կալկաթայ, Մեսրովբ Դաւթեան
Bichops College
1826. Յունիս 18. բիշըպս կալէջ

Մատուցանեմ նա ևս զաղօթս իմ վասն նոցա ամենեցուն, որք գիտեն կեալ հանապազօր ըստ գրեցելումդ. սաղմ. ճժթ. 2 հմր. զի տացէ նոցա ըստ արժանի կոչմանցն՝ ճանաչել զփառս «Քրիստոսի»:

Երկրորդ նամակ.

«Բարձր Սրբազան Ներսէս արքեպիսկոպոս

Ողորմած Տէր իմ.

Պատահարօք յամեցան գրութիւնք իմ այսոքիկ, վասն այսորիկ արժան համարիմ միայարել և որ զկնի գիտելիք իցեն, հաւանութիւն Սրբազնութեան ձերոյ կամ անհաւանութիւն, ի ձեր իսկ կամս:

ա. Նախ առաջին թէ որպէս ելի ի վանիցն Հաղբատայ. և որպիսի վշտօք դիմեցի ի պսակ լեզուագիտութեանց ամենայնի, որոց յայս ուղիս եկեալ իցեն, է քաջայայտ, թէպէտ ծանրագոյն ևս եղեն ինձ վասն աղքատութեանս և անտերութեանս. բայց գոհանամ զտեառնէ, զի 'ի վիշտս յաւելան ինձ շնորհքն և առաքինութիւնք աճեցին ի տառապանս համբերատար երկայնմտութեանց իմոց. որոց զարդիւնսն աւասիկ.

բ. եթէ բարեհաճոյ երևեսցի սրբազնութեան ձերոյ, տեսանել զիս առ ոտս ձեր, և քաղել զպտուղ գեղեցիկ վշտակրութեանցս յօգուտ մանկանց հասարակութեան մերոյ, արժան համարեաց հրամայել Պօղոս եպիսկոպոսի, զի ձեռնադրեալ ինձ վարդապետ առաքեսցէ առ ‘Ձեզ, (որ թէպէտ քանիցս հրաւիրեալն է իւրովի, սակայն իմ չէ յանձն առեալ տակաւին:)

գ. եթէ ցանկալի երևեսցի ձեզ ամենապատիւ Հայր, զարդարել զգրատուն ձեր ազգի ազգի Եւրոպացի մատենիւք, կարող է ծառայ ձեր դիւրագին գնել, եթէ թողուք զիս յայս աստիճան. իսկ եթէ շնորհ արասջի՛ք

ընդ հրամանիդ ձեռնադրութեան յանձն առնել ինձ և զգործ նուիրակութեան աշխարհիս անշուշտ հաւատասջիք, զի յայնժամ յաջողեալ տեսանիցիք ի ձեռս իմ զմեծամեծ օգտութիւնս Աթոռոյդ սրբոյ: Քանզի մեծաւոր ատենակալք Անգղիոյ. ես և եկեղեցական արքեպիսկոպոսութիւնք ունին զիս ի մեծագոյն սէր և ի խնամս իւրեանց. իսկ ազգ մեր աստ, չկարեմ գիւրաւ բացատրել թէ որպիսի մարդասիրութիւն և յարգանս կալան. և ունիցին առ իս յայսմհետէ:

գ. եթէ ունիցիք երկբայութիւն ինչ, կարող էք գրել ընդ ամենայն քաղաքս Հնդկաց ի Կալկաթայ, ի Դաքայ, ի Մատրաս և ի Բոմբայի, ընդ որ իմ ճանապարհորդութիւն յաջողեաց, թէ արդեօք համեցի՞ն ունիլ զիս յիւրեանց ի նուիրակ, և թէ ո՛չ:

ե. Եթէ ազգիս ժամանակեան նուազութիւն, արգել լիցի նուիրակութեան, ծանիք զի իմ մեծագոյն արգիւնք լիցին ի յանգղիացի բարեկամաց անտի, զորոց զլեզուն և զբարս քաջ գիտեմ. նա զի և փառք լիցի այս ազգիս որ աստ, զի իւրեանց վարդապետ՝ կարէ միշտ սէր և յարակցութիւն պահել ընդ ազգիս ընդ այսմիկ, որ ցարդ ո՛չ ոք եղև:

զ. Բայց եթէ ի վերայ այսր ամենայնի, հաճութիւն բարձր Սրբազնութեանց ձերոց ոչ հասանիցի ի խնդիրս այս, հաւատա՛ բանիս, զի տխրութիւն ոչ ներգործեն ի սիրտ իմ. մի՛ զի իմ վաղու ես ջանացեալ է, որքան տանի կար հողեղէն բնութեանս. զանձն արժանի կացուցանել շնորհաց, ուստի եթէ շնորհքն ընտրեսցէ բնակեալ յիւր շնորհարան, և թէ ոչ, ինձ չեն մեղք, և եթէ ոչ մեղք, ապա և ոչ տխրութիւն:

է. Մնամ ձերում ընտրանաց, խորհել զայն, զոր ինչ համարիքդ ի բարիս Աթոռոյն և իմում առ ձեզ

ելից, եթէ կամիցիք, քանզի ոտք ոչ հասանեն խոհեմութեան գլխոյն, թողլով զպիտանագոյնսն ասից և լսից, երես առ երես տեսութեան, քանզի լաւ են դստերք բանից, քան ղուստրս գրչութեան, ըստ վաղեմի առակին:

Այլ ինձ կնքել բանիս համարձակեցո՛, ողորմած տէր, յայս գլուխ. թէ, (երեք տող անգղիերէն լեզուով, որի թարգմանութիւնը տալիս է ինքը)
(որ է) ո՛չ ինչ մոռացօնք հանել կարասցեն զյիշատակս բարեաց քոց, որ առ իս:

մնամ ամենայն ջերմեռանդութեամբ բարձր Սրբազնութեան ձերոյ խոնարհ ծառայ

Մեսրովբ Դաւթեան ի միաբանութենէ սրբոյ Էջմիածնի:

Bichops Callege
1826. դեկտեմ. 5:

Եթէ մարդասիրեսջիք ինձ, որպէս գրեալս իմ ի միւս գրութեան իմում անդ գրել թուղթ սիրոյ և բարեկամութեան առ անգղիացի արքեպիսկոպոս Կալկաթու զանուն տեղւոյն ի բաց թողլով, ես և կոնդակ նուիրակութեանն առ իս, ուրեմն արժան համարեսջիք առաքել աստ ընդ թղթոյն նաև զերկու ուշիմ և իմաստասէր մանկունս, որ տեղեակք իցեն Հայրենի լեզուիս և ես կարող եմ յայնժամ միմիայն խնդրանօք իմովք տալ զնոսա յուսումն Եւրոպացի լեզուաց, յեպիսկոպոսական համալսարանիս այսմիկ, զի գոնէ՝ քաջիմաստ անուն ազգիս՝ դոքօք անջնջելի մնասցէ. նա զի՝ և գրատունք մեր բարեբաստ լիցին յընդունել յինքեանս զծաղիկս ազգի ազգի թարգմանութեանց նոցուն, և այլն և այլն»:

Ինչպէս երևում է, Ներսէսը նորա բնաւորութիւնը լաւ ճանաչելով՝ խնդիրներն առանց ուշադրու-

թեան է թողել. ըստ որում Մեսրովբն ոչ Հնդկաստանի նուիրակից ձեռնադրուեց և ոչ Թիֆլիզ կանչուեց։ Այնուհետև՝ երբ Ռուսները տիրեցին Երևանին՝ Թաղիադեանցը նամակով շնորհաւորելով Երևանցիներին՝ խնդրում է դպրոց բանալ և իրան էլ հրաւիրել ուսուցիչ, միայն թէ Ներսէս արքեպիսկոպոսի կամքով: Այդ ևս չէ յաջողվում. և նա յայտնւում է իւր հայրենիքում միայն 1831 թուին, ուր՝ ինչպէս տեսանք Շահխաթունեանցի խօսքերից, մնում է անգործ մինչև որ հետևեալ տարուայ սկզբում Յովհաննէս Կաթողիկոսը նորան պաշտպանութիւն ցոյց տալով՝ կարգում է ուսուցիչ Էջմիածնում. բայց երեք ամսից յետոյ յայտնի պատճառներից ստիպուած՝ թողնում փախչում է։ Մի կոնդակի անթուական սևագրից երևում է, որ Կաթողիկոսը զայրացած նորա վարմունքի վերայ՝ գրել է իշխան Բեհբուտեանցին հետևեալը.... «Կարգեալն աստէն վարժապետ Մեսրովբ Թաղիադեանց ի մանկական տիոց անտի սնեալ և զարգացեալ ընդ հովանեաւ մեծի Աթոռոյս Արարատայ և ուսեալ բաւականաչափ զհայրենին շնորհ լեզուագիտութեան. և մնացեալ այսօրինակ ց1823 թիւ գտանելով ըստ դիպաց ինչ ի Հաղբատ՝ թէ որպիսի փախստեամբ՝ ինքնահալած լինի ի կողմանս Հնդկաց և դադարեալ անտէն զամս ինչ, վերադառնայ այսր յԱթոռս սուրբ ուսմամբ շնորհաց այլազգի լեզուաց՝ զոր ընկալեալ մեր հայրագութ խնամօք որպէս յառաջն, նմանապէս և յայնժամ, սիրեցաք իբրև որդի սիրելի, և ցուցեալ մեզ զջերմ սէր և իղձ իւր ի մասին վարժարանաց և տպագրատան գտանիլ անձամբ անձին ի նոսա և լինել հոգածու, ուստի և մեր հետևեալ՝ կարգեցաք զնա ինքն ուսուցիչ արհեստի ոմանց ժառանգաւոր դպրաց և սարկաւագաց Աթոռոյս՝ հաս-

տատելով յատուկ վարժարան և աստէն ի գեղջ՝ յորում ուսուցանէր և զմանկունս ժողովրդեան գեղջն. ըստ յառաջադրութեան Նորին ի մասին տպարանի բերել տուաք ի Տփխիսոյ զգրաթափ և զգրաշար Յովակիմ, որ կայ աստ և աշխատի գլխաւորել զգործն՝ որոյ վասն արարեալ եմք և առնելոց եմք զբազում ծախս. յատկացուցեալ էաք և վասն Նորին Մեսրոպայ զբաւական կեցութիւնս. և աշխատէր ի պաշտաման իւրում ցարդ, և յոյս մեր եւս օր քան զօր քաղցրանայր ի մեզ. և էաք ուրախ մեծապէս՝ ըստ որում գործն ունէր յառաջանալ ի պայծառութիւն Աթոռոյ և ազգի: Այլ սակայն նա ինքն Մեսրովբ ի 1 ամսոյ առանց ուրուք գիտելոյ ո՛չ սինոդականաց և ոչ մեր, ինքնահալած եղեալ աստի գայ այդր յԵրևան, և թէ որո՞վ պատճառաւ և ինչ սրտնեղութեամբ, անյայտ ամենեին ի մէնջ. եթէ ունէր այդպիսի ինչ միտս կարող էր ազդ առնել մեզ, և եթէ ունէր ինչ հարկաւորութիւն, կարող էր և զայն հասկացուցանել մեզ, առ որ չէր ինչ անհնար մեզ արդիւնացուցանել զբաւականութիւն: Ապաքէն յայս տմարդի գործ գորին կարին իմ՝ վշտացոյց զսիրտ մեր այսպիսի սրբութեան յաւուրքս, վասն որոյ յատկապէս խնդրեմք 'ի Պայծառափայլութենէ անգին բարեկամիդ Աթոռոյս և մեր, կոչել զնա առ ձեզ և սիրով յորդորել և հաւանեցուցանել անդրէն գալ այսր որչափ և կարողութիւն Ձեր զօրէ ի հաճել զնա. ապա թէ ո՛չ դարձեալ խնդրեմք ակամայ կամօք նորին առաքել այսր առ մեզ. զի բաց յայսոցիկ, ունիմք և զայլ հաշիւ ընդ նմա. և միանգամայն արգելուլ զպիլէթն գորին եկանելոյ աստ յերկրէս, մինչև ոչ ունիցի ի մէնջ զվկայական:

Առաքեցաք յայսս Ձերդ Պայծառափայլութեան

զհարիւրապետ Ադամն որ ունի և զայլ բանս ինչ ի մէնջ պատուիրեալս պատմել Ձեզ բերանով»:

Յարգելով կաթողիկոսի խնդիրը՝ նահանգապետը Թաղիադեանցին անցագիր չէ տալիս. ուստի և նա անճարացած՝ Երևանի հայ իշխաններին միջնորդել է տալիս կաթողիկոսին, որ սա յօժարի խնդրել նահանգապետից կարգել իրան քաղաքի արքունի դպրոցի հայ լեզուի ուսուցիչ: Այդ միջնորդութիւնը կատարւում է հետևեալ նամակով.

«Նորին Վեհաստիճան Սրբազնութեան
ի Հայ երևելեաց քաղաքին Երևանու

Ամենախոնարհ խնդիր

Ողորմած Տէր Մեր:

Մեր նուաստութիւնն լսելով որ պարոն Մեսրովպ Դաւթեան Թաղիադեանցն սուրբ Աթոռի վարժապետութիւնն թողեալ. երկիցս գրութեամբ խնդրեալ է ի Նորին Պայծառափայլութենէ նահանգական կառավարչին Երևանու գնալ ի Թաւրիզ: Այժմ տեսանելով որ չէ հնար. որ նա դառնայ և ծառայի Սուրբ Աթոռոյդ, և տեղս ևս բնաւ չէ հնար պահել, վասն որոյ խնդրեմք ամենախոնարհաբար, զի հաճեսցիք արձակ գրով խնդրել ի Նորին Պայծառափայլութենէ, որ կացուցանի զնա վարժապետ Թագաւորական Շկոլին Երևանու: Զի որովհետև յամենայն տեղիս մանկունք Հայոց որդիք են Սրբոյ Աթոռոյն, և զարգացեալքն նովաւ աստի ոչ սակաւ պարծանք լինին սրբոյ Աթոռոյն և ձեր վեհաստիճան Սրբազնութեան: յատկապէս աղաչեմք զանց չառնել, այպ թէ ոչ գնայ սա և մանկունք մեր մնան զուրկ յուսմանց մայրենի լեզուիս մե..

րոյ առանց որոյ անհնար է նոցա յառաջանալ յիմաստս այլ և այլ լեզուաց։

Մ՝նամք վեհաստիճան սրբազնութեան ձերոյ—
սհակ մելիք Աղամալով։

Արուէն պապաջանով։
բարսեղ ղօրղանով
Պօղօս բաբաջանով
աղաբար գեղայմիայնով
14 կլազ աստուածատուր տէր հօվակիմօվ
սիմոն շայխաթունով
յակօբ ավէտով
պետրոս Մ՝էլիք քեալ
օհանէսով
մկրտիչ խուդայբաշիօվ
Սողոմօն յարութիւնով»։

Այս խնդրագրին «Սինհոդոսը» պատասխանում է (մայիսի 25-ին). «Ըստ գրութեան ձեր անթիւ և առանց ամսոյ յանուն տեառն Յովհաննու Աստուածընտիր և Կայսերապսակ Կաթուղիկոսին ամենայն Հայոց, Սրբազան Սինհոդոսն Սրբոյ Աթոռոյս Էջմիածնի ըստ հրամանի Նորին Վեհափառութեան պատասխանէ ձեզ, թէ Մ՝եսրովբ Թաղիաթեանն ելեալ աստի ըստ անկարութեան իւրոյ տանել օդոյն տեղւոյս, է աձնիշխան յամենայն գործողութիւնս իւր. վասն որոյ և եթէ կամի նա մնալ յԵրևան և լինել ուսուցիչ ի վարժարանին արքունի, կարէ ինքնին լինել խնդրամատոյց Նորին պայծառափայլութեան ըստ հասարակաց կարգին։ Թէպէտ Նորին Վեհափառութիւն և ցանկայր կատարել զխնդիր ձեր ըստ մասին Մ՝եսրովբայ Թաղիաթեանց, բայց որովհետև սահմանեալ կան ինչ ինչ որոշակի

կանոնք վասն կարգելոյ զվարժապետս յուսումնարան արքունի, վասն որոյ և անպատեհ թուի Սրբազան Օծութեան Նորին բացարձակ գրութեամբ խնդրել ի Նորին Պայծառափայլութենէ զանշուշտ կարգումն Խաղխաթեանի ուսուցիչ արքունի վարժարանին Երևանու»։ Ցանկացած ուսուցչական պաշտօնը Խաղխաղեանցին չի տրւում. և նա նոյն 1832 թուի վերջում միւս անգամ երևում է Էջմիածնում, թէ ինչ պաշտօնով՝ չգիտենք, միայն թէ իւր ընտանիքով ապաստանած Մայր Աթոռի խնամքին. ուր, սակայն չստանալով լիուլի պիտոյքը՝ խնդրում է տալ իրան երեք կամ չորս օրավար հող, որպէս զի երկրագործութինով ձեռք բերի իրանց ապրուստի մի մասը.

«Սրբազան Սինհոդոսի Արարատեան Աթոռոյ սրբոյ Կաթուղիկէ Էջմիածնի,

Ի Մ. Գ. Խաղխաղեանց ամենախոնարհ խնդիր

Ողորմած Տեարք իմ,

Հովանաւորեալս տամբ իմով ընդ հայրենի խնամակալութեամբ ձերով, ենթադրիմ ազգի ազգի ծանրութեանց ի մասին կառավարութեան գերդաստանի և հիւրոցս միանգամայն։ Վասն որոյ թեթևել զիմ ծանրութիւն կամելով և զՁեր յինէն ժամանակ առ ժամանակ զըլխացաւութիւն, խնդրեմ ամենախոնարհաբար, զի իբրև նոր գաղթելոց, տաջիք ինձ զայն առանձնաշնորհութիւն, որով պնդիլ մարթասցուք ուր եմքս. այս է, զի շնորհեսջիք ինձ զտեղի, կամ արտ երեք կամ չորս օրավար, սերմանել զսերմն ի կերակուր ինձ և անասնոցս միան-

դամայն։ Որով քան զառաւելն պարտաւորեալ զիս ինքն հայրախնամ գթութեանց ձերոց՝ առնէք, որպէս միշտ, ջերմեռանդագոյն ի սպաս իմոց պաշտամանց։

Ողորմած Տեառք իմ
Ամենախոնարհ ծառայ Ձեր
Մ. Դ. Թաղիադեանց
Վ. Ա.»

Դեկտ. 1. 1832.
ի Վաղարշապատ,

Թէ այս վերադարձից յետոյ Մեսրոպը ո՞րքան ժամանակ է մնացել Էջմիածնում և ե՞րբ է հեռացել— չգիտենք. ունինք նորա մի նամակն ևս առ Ներսէս Կաթողիկոս, գրած Կալկաթայից 1846 թ. հոկտեմբերի 25-ին, որով օգնութիւն է խնդրում հայրապետից պատուաւոր խօսքերով.

«Առաքելապատիւ Տեառն Տեառն ... Ներսիսի
Կաթողիկոսի ամենայն Հայոց
Աղերս Մեսրոպայ Դաւթեան Թաղիադեանց

Ողորմած Տէր.

Գոհանամ զանլրաւ շնորհաց Մարդասիրին Աստուծոյ՝ որ այսպէս արժանացայ ուղերձել զայս աղերս առ ողորմած Տէրութիւն ձեր, անմահացեալ ի յոյսն՝ թէ առ Տէր ծառայամեծար, առ վարդապետ աշակերտասէր և առ հայր որդեգորով դիմիցեմ։ Անլրաւ զրուցաց պէտք էին՝ եթէ յօրէ անտի բաժանելոյ ողորմած Տէրութեան Ձերոյ ի վանիցն Հաղբատայ և իմ ըստ ոչ շատ լաւ յորդորանաց յայնմ ժամանակի հոգաբարձուաց՝ վտարանդի գնալոյս յաշխարհ ամենայն, դառնալոյ ի հայրենիս յանուն ձեր, և ծառայելոյ այնց՝ որք արդարև ոչ իմացան, մինչև ցայսօր՝ նստեալ

գրէի մի ըստ միոջէ: Անցեալն էանց. — Թող զկնիք վկայեսցեն. բայց արդ զուարճանամ Աստուծով, զի ճառագայթարձակ Արեւոյդ Հայաստանի՝ նորոյ Արեւակար գութեան ակն ունի Ազգ մեր: Եւ եթէ ընդարբոյս իմն յօժարութեամբ՝ մոլորակք, կամ մոլորեալք, և վարսամք բարենշանք՝ կամ ոչ, շուրջ զնովաւ պարաբերիլ փափագելով դիմեսցեն ոչինչ աւելի առնեն՝ քան զոր պարտն էր նոցա առնել վասն Ազգի և Հայրենեաց: Համարեցայց յորում կարգի և կամք իցեն մարդկան համարել զիս, տակաւին թողեալ զվկայութիւն աշխարհի՝ փափագիմ գէթ իբրև զմթնոլորտ իմն շուրջ փարել զլուսով աքանչելեաւ Ձերով, և այնպէս հրաշանալ ընդ մնացուած կենաց իմոց: Այս ամենայն չեն նորաստեղծ կեղծիք, զի և նախ քան զայս՝ ոչ ոք մղեաց զիս ի դարձն առ հայրենիս՝ եթէ ոչ Անուն ճշմարիտ Ազգասիրիդ: Զնոյն և զարդիս առնէի այո՛, եթէ նոյն լինէր վիճակ կացութեան իմոյ՝ որպէս յառաջն էր: Այլ աւա՜ղ. զի ընդ կենաց և ստացուածք մաշեցան: Ապաքէ՞ն եթէ ծերացեալն Տուբիթայ օգնեաց յիշատակ աւանդիցն՝ առ Հաքուելի Անկրատանս՝ ապա և ինձ առաւել ես. զի աւանդ իմ առ նմա կայ՝ որում Հոգին Սուրբ աւանդեաց զհազարապետութիւն խորոցն Աստուծոյ:—Սովին ես ո՛չ Քերթողանամ. այլ միայն յուշ առնեմ Ձեզ զբանն՝ զոր խոստացայք ինձ, յամի 1820, ի վեհարանի Արքեպիսկոպոսութեան Ձերոյ ի Տփղիս՝ յորժամ ընդ Արհւոյն Անտոնի Մողնեցւոյ արժանացայ համբուրել զգաշապար Առաքելապատիւ Տէրութեան Ձերոյ: Զայն՝ թէ «ամենայն աշակերտակիցք իմ վայելեցին զշնորհս քաջալերութեան Ձերոյ, և ես միայն զ ո ւ ր կ մնացի»: Ուրեմն ահա՛ օր. վասն որոյ որդիաբար աղաչեմ տարածեալ առ իս զթևս գթութեան՝ ժո-

զովնոջիք և զիս... ըստ միս եղբարց՝ գոնէ փշրանաց սեղանոյ հասարակաց.... հաղորդ առնել ընդ ծառայս Ձեր: Աչք մեր...... հայրենեաց հայեւոյն և տակաւին ճշտիւ ինչ ոչ աւետարանեցաւ մեզ, թէ զԱռաքելապատիւ Տէրութենէ Ձերմէ և (թէ) զյառաջադիմութենէ Հայրենեաց մերոց, որում փափագիմք յոյժ յոյժ: Ծառայ ձեր ունիմ զարդիս զիմ սեպհական գերդաստան, կամիմ ասել, կին և տուն, և զվերատեսչութիւն որպէս և զանդամակցութիւն Արարատեան ընկերութեան հաստատելոյ այսրէն յամի 1845, յամսեան յուլիսի, որպէս յառաջ քան զայս ընկերովին գրութիւն մեր ի շնորհաւորութիւն ամենասուրբ օծութեան Հոգւոյն Սրբոյ ի Ձեզ՝ արդէն իսկ ցուցեալ է. մնամ

Ձերդ Առաքելապատիւ Տէրութեան
ամենախոնարհ ծառայ և որդի
Մ. Դ. Թաղիադեանց»:

15) «Առ Պատուարժան ուրարակիր Մսուր» ըղրեալ է Շահխաթունեանցը (1832. մարտի 10).

.... «Ի խորհրդոյ մերմէ առանց ուրուք անուան յիշատակութեան, բայց յինէն՝ ծանուցի յառուր միում առն ազգասիրի և ուսումնասիրի գերազնիւ պարոն Թովմայի Ղորղանեանց, ցուցեալ և զայն անկատար առանց ձեռնտուութեան հայրենասէր և ազգասէր իշխանաց, առ որ բերեալ ջերմաջերմ սիրով՝ խոստացաւ, զի զկնի վերադարձի Նորին Պայծառափայլութեան զեներալ Վասիլ Յովսեփիչ Բէհպուտովայ ի քաղաքէ աստի այսր յԵրեւան յիւրն իշխանութիւն խորհրդակցեսցի նախ ընդ այլոց ես երեւելեաց, և անդամակցացն իւրոց այդր եղելոց և ապա հոգաբարձուացն ուսումնարանիդ՝

և այն կարի խորհրդապահութեամբ չհանելոյ ի լոյս մինչև ցկատարեալ հաստատութիւն խորհրդեանն, զորոյ զլխարդ յառաջանալոյն զկնի՝ ըստ ժամանակին . . .»։

16) Ամենայն Հայոց Կաթողիկոսութիւնը են. եր. 474։

17) 1830 թուին (յունվարի 31) Ներսէսը Քիշնևից գրում էր «վեհազնեայ Աղայ» Խաչատուր Յովակիմեանին. «Մատուցանեմ վեհազնութեան ձերում զօրինակս գրութեանց ոմանց առ իս և առ ոմանս ի մերայնոց, որոց առաջնոյն համարիմ թէ կանխաւ յառաջ ևս մատուցեալ իցեմ զօրինակն առաջին հատուածոցն յաղագս Սերոբէ վարդապետի։ Զաքարիա վարդապետն Ընէհրուդեան ասացեալ յաղագս մայրենի ազգատոհմութեանցն.. և Գիւլասպեանց... յաղագս հայրենի ազգական կոչմանցն՝ է միևնոյն. և է նա վարդապետն այն, որ յերկիցս յաղագս խռովարարութեանցն արտաքսեցեալ է ի սահմանացն Վրաստանայ ի Նորին Բարձր Գերազանցութենէ Երմօլովէն, և երկիցս կամ երիցս ևս արտաքսեցեալ է ի Սրբոյ Պատրիարգական Աթոռոյ Կաթուղիկէ Էջմիածնի յաղագս այլ փոսապարտութեանց իւրոց և խռովարարութեանց»։...... Նորին Պայծառափայլութիւնն այնպիսի յատուկ հոգունակութեամբ իւրացուցեալ է ինքեան յամենայն միաբանութեանց Պատրիարգական Աթոռոյն զՍերոբէն և զԶաքարիայն,.... թէ վասն զի ատելի (են) երկոքին Սրբազան Պատրիարգին և ինձ և ամենայն միաբանութեանց Արարատեան Աթոռոյ. գրաբանութիւնք չարախօսութեանց նոցա զԱթոռայնոցն կամ մանաւանդ զինէն քաղցրանան ականջաց Նորին Պայծառափայլութեան այնչափ, մինչև և ոտնկօք մարդասիրեալ ցանկայ նոցին չարաբանութեամբ հեղձուցանել զբա-

*րին առեցողացն զնոսին վասն անզգամութեանց Նոցին. թէպէտև ոչ ընաւ յաջողեսցի նմա ըստ խորումն ըղձի»......*

[18]) *Ամենայն Հայոց Կաթողիկոսութիւնը. երես* 467։

[19]) *Անդ. երես* 468։

[20]) ........*«Ուստի թէև յանցանս ինչ յանցուցեալ էի, առ այն պարտ էր գիտութեամբ ձեր և այլոց պատժապարտել կամ նախատել զիս. թո՛ղ թէ այն ինչ գոլով յանցանք իմ, և այնպէս վաղվաղակի՞ փութալ ի վրէժ ընդ մէջ այնչափ խուռն բազմութեան հոգևորականաց և աշխարհականաց. գիցուք ինձ չկայր խնայումն վասն անարգութեանս, ի պատիւ սրբոյ Տաճարին և Հայրութեանդ թո՛ղ փոքր մի ներողութեան արժանի համարէր զիս, և ոչ խայտառ առ ոտն հարկանէր անարգանօք զայսչափ բազմօրեայ ծառայութիւն իմ։ Ինչ և իցէ թողցուք զայն՝ ի հարկէ տէր տէրանց էր, այսօր արար զոր ինչ կամեցաւ, և իրաւամբ արար. բայց սիրտ և աչք տերանց յատրադրելոց իւրոց միանգամ չպարտի ծանրանալ և խոտորիլ, որ կամ յոյժ դժուարաւ, և կամ ոչ ևս լինի միւսանգամ ուղղել և նորոգել. վասն որոյ եթէ այսպէս առ փոքրն և առ չնչինն, գուցէ ի մեծամեծսն սայթաքիցիմ. Աստուած մի՛ արասցէ՝ զինչ ինչ արդեօք ոչ հանդերձեալ մնայ ինձ յայնժամ, այն յայտնի լաւապէս, քան զարեգականն լոյս յայտնագոյն և պայծառ։ Վասն որոյ աղաչեմ յատկապէս ի բազմագութ Հայրութենէդ՝ թէ կամիս այնչափ հայրական բարերարութիւն ձեր արգիւնաւորել ի վերայ իմ, հրաման խնդրեա՛ ի Նորին բարձր Արքազնութենէ՝ հրաժարիլ ինձ ի գործոյս, զոր միանգամ ցարդ՝ բաւական վարկուցեալ. թէպէտև չեմ ինչ աւելի հարկաւոր այնքան։ Ոչ ասեմ՝ թէ և յետ հրաժարելոյն միաբան եղէց աստանօր, այլ ի Սևան,*

*կամ ուր և պատշաճ համարեսցի ձեռք ողորմած հայրութիւն բնակեցայց ուրանօր, անցուցանելով զաւուրս խղճութեան իմոյ.....»:*

21) *«Այն ինչ գոլով յանցանք իմ» նշանակում է և «յանցանքս երևալուն պէս». բայց այստեղ այդ խօսքերը հասկանում ենք—«յանցանքս այն լինի», այսինքն՝ այդքան փոքր:*

22) *Ամենայն Հայոց Կաթողիկոսութիւնը և այլն. մասն բ. եր.* 33—36:

23) *Մեզանում յայտնի է միայն այդ սինօդի գոյութիւնն, որ Դանիէլից հաստատութիւն առնելով՝ շարունակուեց մինչև Պոլոժենիայի օրինադրած սինօդի կազմակերպուելն. այլ թէ այդ հին սինօդն ո՞րպիսի եղանակով և ո՞րչափ ձեռնհաս վճիռներ էր սահմանում ներկայացուած գործերին—ոչինչ յայտնի չէ. ուստի աւելորդ չենք համարում դնել այստեղ երեսնական թուականների վերաբերեալ երկու վճիռ. մէկը՝ Սաղեանցի մի քահանայի լկտի վարմունքի մասին ընդդէմ իւր առաջնորդի և միւսը՝ մի պսակալուծութեան առիթով: Երկուսն էլ արժանի են առանձին ուշադրութեան: Առաջինը ցոյց է տալիս, որ այն ժամանակում դեռ սովորութիւն չկար վարձատրելու «լի չարաչար հայհոյութեամբ ի վերայ հոգևոր առաջնորդի իւրոյ ոտանաւոր» գրող քահանային: Երկրորդը պարզ ապացուցանում է, որ եկեղեցու այն ժամանակի դատաւոր կարգուած պաշտօնեաներն առաւել հմուտ և ողջմիտ են եղել ամուսնալուծութեան խնդրում, քան մեր ժամանակակից շատ ու շատ հայրեր, որոնք դեռ մինչև վերջին տարիներն էլ է՛ որ տգիտութիւնով, է՛ որ անբարեմտութիւնով պնդում էին, թէ Հայ եկեղեցու կանոններով պսակն անլուծանելի է:*

1. «Սրբազան Սինհոդոսի սրբոյ Կաթուղիկէ Էջմիածնի

Վճիռ

Արարեալ յամի Տեառն 1830, յամսեանն օգոստոսի 26, համար 11.

Սրբազան Սինօդն ներկայացուցեալ յատեան իւր գլխաւոր Վարդանեան արգելեալ քահանայն Մագիանու, զոր բերեալ էր առ ի քննել զյանցանս նորա և դատել ըստ օրինաց յաղագս յանդուգն հակառակութեամբ յօրինելոյ նորա ի վերայ հոգևոր առաջնորդի իւրոյ Մինասայ արքեպիսկոպոսի զոտանաւոր լի չարաչար հայհոյութեամբք՝ անարժան լսելեաց պիղծ և աղտեղի բանիւք յօդեալ, ընդդէմ ոչ միայն քահանայական կարգի և կոչման, այլ և լոկ աշխարհական քրիստոնէի անգամ, յետ արժանաւոր քննութեան եգիտ զնա իսկապէս չարաչար յանդգնութեամբ անհնազանդ արքեպիսկոպոսի իւրոյ, և անարգօղ և թշնամանօղ զնա բանիւ և գրով: և քանզի գրեալ է ի կանոնս Գրիգորի Լուսաւորչին, թէ քահանայք անհնազանդք եպիսկոպոսի իւրեանց՝ որոշեսցին. և ի կանոնս առաքելոցն Քրիստոսի, թէ եկեղեցական որք որ թշնամանէ զեպիսկոպոս անիրաւաբար՝ լուծցի: Ըստ այսց կանոնաց թէպէտ արժան էր նա մշտնջենաւոր լուծման ի քահանայական կարգէ, այլ զի ի վեր եղին և ինչ ինչ պատճառք, որ մասամբք ինչ արդարացուցանէին զնա, ոչ ի մասին նախագրեալ ոտանաւորին, զի յայնմ զլխովին է յանցաւոր, այլ յայլմէ կողմանէ. թէպէտ և այնպէս չէր արժան նմա ձեռնարկել յայնպիսի գրութիւն աղտեղի, այլ թէ ունէր իրաւունս բողոքել առ ատեան Սրբազան Սինօթին. և կամ առ Սրբազնագոյն Կաթողիկոսն. և ի վերայ այնորիկ ի վե-

բայ արարմանց իւրոց եցոյց զսաստիկ զղջումն գրով և բանիւ, խոստացեալ ես ինքնին՝ որ ինչ ապաշխարութիւն դիցի ի վերայ նորա յօժարութեամբ յանձն առնուլ և կատարել. նա ես խնդրեալ գնաց առ Մ՝ինաս արքեպիսկոպոսն ի յՕշական գիւղ, և ըստ կատարեալ զղջմանն էառ ի նմանէ զթողութիւն, վասն որոյ վճռեաց Սիւնհոդոսս ոչ ես լուծանել զնա ի քահանայութենէ մշտնջենաբար, այլ կարգել ընդ ժամանակաւոր ապաշխարութեամբ. նախ՝ զի գնացեալ ի տեղի իւր ի Սաղեան, և կամ ուր և հրամայեսցէ նմա առաջնորդն Շիրվանայ վիճակին Սուքիաս վարդապետն կալ մնալ ցորչափ ընդ ապաշխարութեամբ է, ապաշխարեսցէ արտաքոյ եկեղեցւոյ զամիս երկու պահօք և աղօթիւք, սաղմոսիւք և արտասուօք: Երկրորդ յետ լըման երկուց ամսոցն հրամանաւ յիշեալ առաջնորդին մտեալ յեկեղեցին, ի մէջ եկեղեցւոյ կատարեսցէ զկարգ նոյն ապաշխարութեան նոյնպէս զամիս երկու ասելով միանգամայն և զժամերգութիւնն եկեղեցական առանց հաղորդելոյ յեօթն խորհուրդս եկեղեցւոյ. իսկ թէ դիպեսցի նմա ծանր հիւանդութիւն յընթացս չորեքամսեայ ապաշխարութեանն՝ տացի նմա հաղորդութիւն, զի մի զրկեսցի ի յետին թօշակէն եթէ մահ պատահեսցի: Իսկ երրորդ յետ լըման ժամանակի ապաշխարութեանն ի մէջ եկեղեցւոյ ըստ նշանակեալ կերպի՝ հրամանաւ դարձեալ վերոյ անուանեալ առաջնորդ Սուքիաս վարդապետին արձակեալ յապաշխարանացն՝ սկսանիցի պաշտել զպաշտօն քահանայագործութեանն կատարելով զեօթն խորհուրդս եկեղեցւոյ. սակայն և յայնմիկ դնի նմա պարտաւորութիւն զամ մի ողջոյն զամենայն երկուշաբաթի աւուրս պահօք անցուցանել: Իսկ քանզի ինքնին խոստովանեցաւ թէ ինքն ի պահու

աբբեցութեան ձեռն էարկ յայն աղտեղի գրուած ստանաւորին, ամէն իրի սիւնհոդոսս արդարութիւն համարեցաւ արգելուլ զնա յըմպելոյ զգինի կամ զօղի զամենայն աւուրս կենաց իւրոց, բաց յաւուրցն յորս պատարագիչ լինի և հաղորդի մարմնոյ և արեան Տեառն»:

2. «Ի Սրբազան Սիւնհոդոսէ Արարատեան Աթոռոյ Սրբոյ Կաթուղիկէ Էջմիածնի:

Վճիռ

վասն պոռնկեալ Եղիսաբէթ կնոջն Գասպարեան յարութիւնի, և վասն պոռնկակցի նորա անզգամ Գէորգայ տէր Ստեփանեան Կարնեցւոյ, և վատաբաղդ առն նոյն պագշոտեալ կնոջ յիշեալ յարութիւնի Գասպարեան բնակչաց ի Գիւմրի:

Յետ հասանելոյ առ Սրբազան Սիւնհոդոսս գանկատագրոյ Յարութիւնի Գասպարեան վասն յայտնի պոռնկութեան կնոջ նորա ընդ լիրբ Գէորգայ տէր Ստեփանեան կարնեցւոյ՝ եհաս ի 18 ամսոյս վկայագիր խաչիւ և Աւետարանաւ երդմնեալ ականատես վկայիցն կարնեցի Յակոբայ Կարապետեան, Ղազարու վրդոյեան և Պէտոյի Թօրոսեան վասն հրապարակեալ պոռնկութեան նոյն կնոջն ընդ անզգամեալ Գէորգայ հանդերձ յայտարարական գրով յաջորդական պատուելի դէպուտատաց և առաջաւոր իշխանաց հայոց ի Գիւմրի: Այր վասն և Սրբազան Սիւնհոդոսս վերաքննեալ զայնս առանց իւիք աչառելոյ՝ բարձրագոյն հրամանաւ Վեհափառ Օծութեան տեառն Յովհաննու ընդհանրական Կաթուղիկոսի ամենայն Հայոց՝ դնէ ի վերայ երից նոցա համաձայն օրինաց սուրբ գրոց և կանոնաց Հարցն սրբոց զայս

Վճիռ։

Զի պոռնկեալ կինն այն Եղիսաբէթ՝ որ պղծեաց զկապ ամուսնութեան իւրոյ և զանկողին առն իւրում, արձակեալ եղիցի միանգամայն ի կնութենէ առն իւրոյ Յարութիւնի Գասպարեան, և համարեալ լիցի ընդ յայտնի պոռնիկս՝ և օրինազանցս, արտաքսեալ մինչ իսպառ ի հաղորդութենէ ամենայն ծիսից եկեղեցականաց և ի սուրբ խորհրդոց նորին, և մի՛ իշխեսցէ լինել առն այլում մինչ կենդանի է այրն նորա. մի՛ համարձակեսցի մտանել յեկեղեցի և խառնիլ ընդ ժողովրդականս, և բոլորովին անարժան համարեսցի ընդունիլ զողջոյն ի քահանայից կամ ի ժողովրդոց, այլ՝ եղիցի իբրև նեխեալ և հոտեալ անդամ հատեալ յեկեղեցւոյ սրբոյ համաձայն գրեցելումն ի ումէ կանոնի սրբոյն Ներսեսի Հայրապետին, և համաձայն գրեցելումն ի ոռձը դատաստանավճռի սրբոց հարցն։ Եւ ի վերայ ամենայնի այսոցիկ՝ եթէ պատահիցի նոյն անզգամին մահամերձ հիւանդութիւն, և հասցէ նա ի հետին շունչն հոգեւարութեան, գնասցէ առ քահանայն, և ընկալեալ զզղջումն նորա և զխոստովանութիւն, հաղորդեսցէ զնա սուրբ Մարմնոյ և Արեանն Տեառն յայնժամ՝ միայն։ Նոյնպէս և պոռնկակից նորա վատթարեալ պիղծ Գէորգն տէր Ստեփանեան՝ որ ոչ պահեաց զարժանաւորութիւն կոչման հօր իւրոյ, և ընդ ոտիւք էարկ զպատիւ օրինաց և կանոնաց եկեղեցւոյ հայաստանեայց, արտաքսեալ եղիցի մինչ իսպառ ի հաղորդութենէ եկեղեցական խորհրդոց և ամենայն հոգեւորական մասանց և շնորհաց. մի՛ վստահասցի այսուհետև մտանել յեկեղեցի և խառնիլ ընդ ժողովրդականս, և բոլորովին անարժան համարեսցի ընդունիլ զողջոյն ի քահանայից և ի ժողովրդոց։ Այլ եթէ պատահիցի նմա նոյնպէս մահամերձ

հիւանդութիւն, և հասցէ նա ի հետին շունչն հոգեվարութեան, գնասցէ առ քահանայն, և ընկալցի զզղջումն նորա և զխոստովանութիւն, հաղորդեսցէ զնա սուրբ Մարմնոյ և Արեան Տեառն: Իսկ Յարութիւն Պասպարեան այր պոռնկեալ կնոջն այնորիկ՝ ըստ որում բողոքոյն անման և անհաղորդ այնպիսի անառակ գործոց նորա՝ վեց ամսեայ ժամանակօք եղիցի ընդ եկեղեցական ապաշխարութեամբ, և պահեցողութեամբ և ողորմութեամբ և տրօք աղքատաց՝ ազատեալ լինիցի յապաշխարութենէ անտի իւրմէ. և ի լրման վեց ամսոյն՝ յայտնեսցի յառեան Սրբազան Սիւնհօդոսի, և վասն ամուսնանալոյ իւրոյ ընդ այլ կնոջ ընկալցի զբաւականութիւն համաձայն օրինաց և կանոնաց սրբոց Հայրապետացն:

Զսոյն վճռագիր ընթերցցին քահանայք հայոց ի գիւմրի, և ծանուսցեն և հրատարակեսցեն ամենայն հասարակութեան մեծի և փոքու, արանց և կանանց ի Շիրակ գաւառի, և պահպանեսցեն զամենայն ըստ վերոգրելոցն ի խրատ և ի զգուշութիւն ամենեցուն մանաւանդ թէ անզգամելոցն:

Համար 141
1833. ի սեպտեմբերի 20.
Ի Սուրբ Էջմիածին:

[24]) Պ. Ա. Դ. Երիցեանց այս թղթերի բնագիրը չունենալով՝ գրել է ռուսերէնից թարգմանածները (Ամենայն Հայոց Կաթող. եւ. մասն բ. եր. 161—165). բայց ինչպէս երևում է, կուսակալին մատուցած ռուսերէն թարգմանութիւնը շատ էլ ճշտութեամբ չէ կատարուել. այդ պատճառով բնագիրների և թարգմանութիւնների մէջ նկատւում են բաւական տարբերութիւն-

ներ, որոնցից յառաջ ենք բերում համեմատութեան համար հետևեալները.

1. Գրիգոր եպիսկոպոսի գրութեան

| Բնագիրը | Թարգմանութիւնը |
| --- | --- |
| «Ընկալեալ սպասէի բարեկարգութեամբ կառավարութեան պատկանելոցն Ս. Աթոռոյ, միաբանութեան և Հայրենի ազգի». | «Ընկալած սպասում էի Ս. Աթոռիս, սրբագումար միաբանութեան և Հայրենի ազգի բարեկարգ կառավարութեան»: |
| «Բայց այն ամենայն յուսով և լռութեամբ մնալն իմ գտաւ անպտուղ»: | «Սակայն այսքան ժամանակ իմ ամենայն յուսով լուռ մնալս ի դերև անցաւ»: |
| «Իսկ առաջարկութիւն սրբազան Սինօթի որ առ ձեզ, ոչ եղև գլխաւորեալ, որպէս տեսանի յանցեալն և արդէն իսկ. և ի բազմաց՝ ի Հեռաւորաց և ի մերձակայից նախատակած լինելն Աթոռայնոցս ձեզ յայտնի են»: | «Իսկ սրբ. Սինօդի առ ձեզ առաջարկութիւնն էլ չկատարուեցաւ և չէ կատարվում: Աթոռայիններիս Հեռաւորներից և մերձաւորներից շատերի նախատակած լինելը ձեզ քաջ յայտնի են»: |
| «Եթէ բարեհաճեսջիք Հաստատել»: | «Բարեհաճեցէք Հաստատել»: |
| «Կարծել զգրութիւնս այլոց ի յաջորդաց, յառաջնորդաց և ի նուիրակաց և յայլոց» (Որ ուրիշները չգրեն յաջորդներին, առաջնորդներին, նուիրակներին և այլոց): | «Կարծեցէք այլ և այլ գրութիւնները: Յաջորդներից, Առաջնորդներից, Նուիրակներից և ուրիշներից այն ստացուածները»: |

## 2. Միաբանութեան Թղթի

| | |
|---|---|
| 1. «Պատգամք Աստուածայինք առ որս իշխանք են և առաջնորդք ժողովրդեանն Աստուծոյ» | «Աստուծոյ խօսքերն... առ ամենայն իշխանաւորս և առաջնորդս ազգաց»: |
| 2. «Զոր ապրեցոյց արեամբ իւրով» | «Որին ազատեց իւր անունով»: |
| «Գործք աթոռայինք և կարգաւորութիւնք բազմապատիկ իրաց»: | «Էջմիածնի վանաց բազմատեսակ գործերը և կարգադրութիւնները»: |
| «Սինոթական կառավարութիւնն .... փոխանակ առաւել ևս ըստ օրինի կարգաւորեալ լինելոյ և հաստատեալ կանոնաւոր հանգամանօք որպէս պարտն է»: | «Սինոդական կառավարութիւնն փոխանակ հարկ եղած կազմակերպութիւնն և հաստատութիւնն ստանալու». |
| «Այժմ հազիւ թէ անուն Սինօթի երևի ի միջի, և ոչ Սինօթ իսկութեամբ»: | «Հիմա հազիւ թէ մնացած լինի Սինոդի անունը». |
| «Յօգտակարացն և ի կարևորաց կամ յազգաշահ և ի հասարակօգուտ գործոց անտի և ի կառավարութեանց ինչ մի բնաւ ոչ յառաջացեալ կամ ըստ օրինի զարգացեալ»: | «Հասարակաօգուտ գործերում ոչինչ յառաջադիմութիւն չկայ»: |
| «Ոչ միայն չյայտնեցիք զանձն ձեր գէթ միով իւիք ընդունակ ի տնօրէնութիւնս և ի կառավարութիւնս | «Ոչ միայն բնաւ ցոյց չտուիք թէ ձեր հովուապետական կառավարութեան մէջ բարեհաճու- |

| | |
|---|---|
| *հովուապետական պարտաւորութեանց և ի խնամս իւրոց հասարակաց, այլև՝ որ առաւել ծանրն է՝ և ոչ իսկ ցուցիք զձեզ սիրող և կամեցող ի սրտէ օգտաւէտ բարեկարգութեանց և հասարակաօգուտ գործոց արտադրութեան կամ յառաջատուութեան»:* | *թիւն ունիք դէպի հասարակաց բարին, այլ որ աւելի ծանր է, ոչ էլ հոգատարաք կամ ցանկացաք հասարակաօգուտ գործերում որ և է բարեկարգութիւն մտցնել կամ դէպի յառաջ մղել»:* |
| *«Որոց վասն և հասարակութիւն գրեթէ բոլորովին վշտացեալ գտանի»* | *«Որով գրեթէ ամբողջ միաբանութիւնը յետին թշուառութեան մէջ է գտնվում»:* |
| *«Ըստ համաձայնութեան մերոյ և ըղձի հասարակութեանն»* | *«Համաձայն միաբանութեան ցանկութեան»:* |

*Տարբերութիւններ պակաս չեն և կաթողիկոսի՝ կուսակալին գրած նամակում:*

25) *Ամենայն Հայոց Կաթողիկոսութիւնը եայլն մասն բ. եր.* 183—227:

26) *Թուղթը խոնաւութիւնից փտած լինելով՝ տեղ տեղ փշրուել է:*

27) *Թէպէտև պ. Մ. Ներսեանցն ասում է՝ թէ «ութեքին անբաւական միաբանները.... ուղարկեցին» այդ գրութիւնը, սակայն ուղարկողները չորս անձինք էին միայն: Ինչպէս վերևում տեսանք, Գրիգոր արքեպիսկոպոսը, Ստեփաննոս վարդապետ Արարատեանն և Յովհաննէս վարդապետ Շահխաթունեանցն արդէն*

վաղ գնացել կաթողիկոսից ներողութիւն էին խնդրել և մտել կրկին իրանց պաշտօնի մէջ։

Բացի գործից՝ ինքը բարոն Ռօզէնը յունիսի 17-ին նախարարին ուղղած գրութեան մէջ պարզապէս ասում է, թէ իրան դիմողներն եղել են չորս հոգի.—Սիմէօն և Նիկողայոս եպիսկոպոսներն և Ղրիմցի Յովհաննէս ու Շահալիեան Մարտիրոս վարդապետները։

28) Սերովբէ եպիսկոպոսի նամակների պատճէններ. Ս. Էջմիածնի գրատան ձեռագիր Թ....

29) Այս Բարսեղ արքեպիսկոպոսն է, որ յետոյ եղաւ Ս. Էջմիածնի կաթողիկոսական տեղապահ։

30) Ամուսնական խնդիրներ. եր. 142—45։

31) Ձեռագիր Լազարեան ճեմարանի։

32) Պ. Երիցեանցն ասում է, թէ Էջմիածնի գրատունը 1838 թուին բարոն Գանի թախանձանքի շնորհիւ քանի մի օրուայ մէջ կարգի դրուեց և ցուցակագրուեց Ղրիմցու և Շահխաթունեանցի աշխատութիւնով (Ամենայն Հայոց Կաթ. մասն բ. եր. 452)։ Մեր ունեցած տեղեկութեան համեմատ գրատան գրքերի ցուցակագրութիւնը յանձնուել է Շահխաթունեանցին սինոդի հրամանով 1837 թուին. ուրեմն Գանի Էջմիածին գնալուց յառաջ։

33) Ամենայն Հայոց Կաթ. մասն բ. եր. 124։

34) Անդ. եր. 441։

35) Արարատ, Վենետիկ, 1890, Յառաջաբան։

36) Յառաջ ենք բերում այստեղ նորա թողած մի նկարագիրը 1840 թուի մեծ երկրաշարժի մասին.

«Պատմութիւն անցից գետնաշարժին ի Հայաստան աշխարհ 'ի 1840 ամի։ Ի 20 յունիսի ամսոյ, որ էր հինգշաբթի, տարին նահանջ, տարեգիրն Թ ռ չ., լուսինն 4. ձայնն ուագ կողմն, ըստ ասխականին՝ ժամն

մետասանին չարեք պակաս, յաւարտ ընթրեաց միաբանութեանն, որ ի յետին սալայատակի Աթոռոյ. մինչդեռ նստեալ կայր միաբանութիւնն, յարեաւ գետնաշարժ մեղմ և ապա հետզհետէ սարսափելի սաստկութեամբ շարունակեցաւ իբրև բոպէս չորս. ի սաստկութենէ գետնաշարժին մեծ մասն միաբանութեան բոկոտն փախեաւ ի սալայատակէն առ ահին, որ զմահունս սպառնայր գործել: Խաչն մեծ կաթուղիկէի ուժգինս շարժեալ տարուբերէր ընդ արևելս և ընդ արևմուտս ահեղ ընթացիւք, որ գոգցես գրգայր ի վերայ Աթոռոյ տարածմամբ քառաթևեան նշանաց իւրոց. եկեղեցին բոլոր հանդերձ զանգակատամբքն դնայր և գայր. զանգակքն միջակ եղանակաւ ինքնահար լինէին, ձայն տալով մերձակայից զգուշանալ. սեղանն սրբոյն Յակոբայ կրեաց նոյնպէս զայլայլութիւն ի սաստկութենէ անսովոր շարժմանն, մինչ զի խաչք, սկիհք, մոմակալք և բոլոր բազմոցն որ ի նմա՝ յերկիր խոնարհեալ անկան, յայսմանէ մեք նախագուշակեցաք թէ՝ վանք ինչ կամ եկեղեցի յանուն սրբոյն Յակոբայ կործանիլ ունի կամ փլատակիլ և ի յաջորդ աւուր լուաք զտապալումն վանիցն սրբոյն Յակոբայ. սակայն գոհութիւն Ամենաբարձրելոյն, փառք վերնախնամ Տեսչութեանն պահպանողական Աջոյ, զի բովանդակ նիւթականք Աթոռոյս՝ եկեղեցին, վեհարանն և միաբանք բոլոր կան և մնան ի նոյն դրութեան անվնաս ըստ ամենայնի, հանդերձ շրջակայ վանօրէիւքն: Յայսմ ժամու ի վերջին լանջաց Նւազ Մասսայ լայնապատար բացմամբ և անդնդախոր հերձմամբ խրամատեալ՝ իբր յորձախոր անդնդոց ի վեր բղխէ զսասանեցուցիչ գարշահոտութիւն իմն կպրային և ծծմբային. կից ընդ այսմ՝ հատեալ մասն ինչ ի նոյն խեկ լանջացն ահեղագոչ իմն դղրդմամբ հասանէ նախ

ի վերայ մատուռի աւազանին սրբոյն Յակոբայ, զոր տապալեալ բոլորովին և միացեալ ընդ քարինս նորա, գլորի ի վերայ վանիցն իւրով կատաղի արագութեամբ գետնակոյր առեալ և զայն՝ գայ, ժամանէ ի վերայ գեղջն Արկուռւոյ, զոր սուզեալ յերկիր և ընկլուզեալ՝ անհետս առնէ գլխովին։ Քարանցն վերոյիշելոց հասանիլ սուրգեն մինչ ցառ ափն Երասխ գետոյ։

Աղբիւրն աւազանին մնայ ցայսօր յիւրումն դրութեան յառաջնում. յորդառատ բղխմամբ։ Ի վանս սրբոյն Յակոբայ մնացեալ են ընդ հողով մին վարդապետ հանդերձ եօթն աշխարհական և հոգևորական սպասաւորօք։ Ի գեղջն Արկուռի գետնակուլ լինել համարին անձանց իբրև երկուց հազարաց, յորոց մասն ի Հայոց և մասն ի մարաց, և ոգիք իբր տասն ի Հրէից, որոց տունք նոցա լինին գերեզմանք նոցա. Իսկ յապրուստ ազատելոցն յանակնունելի կործանմանէս, որ գտանէին յայնժամ յանդաստանս և յայգեստանս ի շրջակայ գիւղն և ի հեռաւոր քաղաքս, որբացելոցն ի ծնողաց, այրիացելոց յարանց և զրկելոցն ի կանանց անձանց հարիւր և եօթանց, և ի պէտս կրկին տնաւորութեան նոցա՝ շարժեալ ի գութ նորին Կայսերական Մեծութեան՝ առատաձեռնէ Ամենաողորմածաբար զերկոտասան հազար մանէթս մասնակցութեամբ նախարարաց։

Այնպէս և ի շրջակայս Շարուրայ գիւղօրէից տունք Հայոց և տաճկաց խախտեցան ի հիմանց. ի Ջինն Նախիջևան՝ եկեղեցին Հայոց, մզկիթք տաճկաց և տունք նոցին ուրեք խախտեցան և ուրեք հիմնայատակեցան։ Սուրբ Գեղարդայ վանքն, Սիւնեաց աշխարհի Տաթէի վանքն, Նախավկայի վանքն, յերկիրն պարսից յԱրտազ գաւառ Թադէոս առաքելոյ վանքն, ի պարսից սահմանս Մակու անուանեալ գիւղաքաղաքն և

գիւղօրայք նորին՝ հաղորդեցան նոյնպէս վերոասեալ փլասուց. Պայազիտ քաղաքի բդեշխական պալատն և բերդն և քանի տունք Հայոց և տաճկաց ոչ սակաւ փլասեցան, ի վերոյիշեալ բոլոր գաւառս և գիւղօրայս ի մերայնոց և ի տաճկաց մեռան ոչ սակաւ:

Իսկ արդ ի 20-էն յունիսի մինչ ցվերջ սեպտեմբերի երկրաշարժս լինէր և երևէր յաճախակի և սաստկագոյն, իսկ անտի մինչև ցայսօր երբեմնակի լինի և պատահի մեղմ և սակաւ, առ այս ես գոհութիւն կրկին ամենագթածին Աստուծոյ:

Այնպէս լեալ է շարժ և ի 1827 ամի յամսեանն հոկտեմբերի, յետ աւուրց առմանն ամրոցին Երևանայ, նոյնպէս տարին Նահանջ, որպէս յանցեալ ամի, բայց ըստ ամենայնի առանց փլասաբերութեան:

Յիշատակարան այսմաւուրի միոյ՝ եղելոյ ի սուրբ Աստուածածին եկեղեցւոջ որ ի Վաղարշապատ, դրեալ ռճիը Թուականի Հայոց.—ի չորրորդում աւուր յունիսի, օրն չորեքշաբթի, եղեալ է սոյնպէս գետնաշարժ մեղմ հանդերձ երևելի փլասաբերութեամբք և բազում աւերածովք եկեղեցեաց, վանօրէից, քաղաքաց և գիւղօրէից, առաւել ես ի վանս սրբոյն Գեղարդայ, և յայսմ շնորհօք վերնախնամ այցելութեանն անփլաս են մնացեալ ըստ ամենայնի և յայնժամ սուրբ Աթոռն Էջմիածնի, հանդերձ երիւք ինքեան մերձակայ եղեալ կուսանաց վանօրէիւքն ի հայրապետութեան Եղիազարու կաթուղիկոսի, և ի թագաւորութեան պարսից Շահ-Սուլէյմանի որդւոյ փոքր Շահպազի, և յիշխանութեան Արարատեան նահանգի Զալխանի և այսու ժամանակաւ շարժեաց զօրքն պարսից խառնիճաղանճ բազմութեամբ եկեալ նստեալ յերկրին պարսից, կամէին յառնել ի վերայ վրաց. և յիշխանութեան արքայորդւոյն վրաց

Շահնազար և Գիօրգի Խանից, այլև յիշխանութեան օսմանեան Թագաւորութեան սուլթան Սուլէյմանի, որ կայր ի մէջ Պաֆաղին հարուստ ժամանակաւ՝ հրամանաւ եղբօրն իւրոյ սուլթան Մահմէտին։ Այն սա գազանաբարոյ սուլթան Մահմէտն բազում աւերս արարեալ առ արևմտեան քրիստոնէից, առէ, հպատակեցոյց ինքեան զոչ սակաւ քաղաքս, զգաւառս և զկղզիս և փոխեալ ի վիշապ կլանել կամէր զամենեսին»։

37) Ձեռ. Լազ. ճեմարանի։

38) Ձեռ. մատենադարանի Ս. Էջմիածնի Թ. 747։

39) Ձեռ. մատենադարանի Ս. Էջմիածնի Թ. . . .

40) Ձեռ. Լազ. ճեմարանի։

41) Զետեղելով այս նամակն այստեղ իբրև քիչ ու շատ հետաքրքրական՝ չենք կարող չարտայայտել մեր ուրախութիւնն, որ քաղաքական Թուականների կրօնական խիստ ատելութիւնն, որ ազգային դաւանութեան հային կարծել էր տալիս, թէ իւր համարիւն կաթոլիկ եղբայրները թշնամի կարող են լինել և վնասակար ազգային հնութիւններին, իսկ կաթոլիկ հային՝ գործել բաժան ուղղութիւնով և ծածուկ իւր ազգակիցներից,—ա՛յնքան արդէն թուլացել է, որ այլևս անզօր է ո՛ր և է ազդեցութիւն ունենալու ընդհանրական բնաւորութիւն կրող խնդիրների վերայ։



